ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

6

ՀՈՒՆԻՍ

ԵՐԵՎԱՆ 1960

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1960 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ—*Որակյալ ապրանքներ ժողովրդին* . . . . . 3

ՀՈԴՎԱԾՆԵՐ

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ—*Մարքսիզմը և պրոգրեսի գաղափարը* . . . . 9

Պ. ԻՍԱԵՎԱ—*Պրոլետարական ինտերնացիոնալիզմը և սովետական պետության ազգային քաղաքականությունը* . . . . . 21

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ—*Էջեր ՍՄԿՊ միասնության համար Հայաստանի կոմպարտիայի պայքարի պատմությունից* . . . . . 31

ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ—*Տեխնիկական պրոգրեսը և պարտիական կազմակերպությունը։* Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ—*Ապրել և աշխատել կոմունիստաբար։* Մ. ՊՈՂՈՍՅԱՆ—*Պրոպագանդիստ Պ. Մկրտչյանի փորձից։* Թ. ՍԱՐԳՍՅԱՆ—*Քաղուսուցման կենտրոնական դեմքը* . . 44

ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ—*Նվիրական կյանքի մի քանի էջեր* . . . . 62

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ—*Փոթորկի միջով* . . . . . . 66

Ռ. ԱԹԱՅԱՆ—*Անմոռաց մարտիկը* . . . . . . 71

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Ժ. ՍԱՆՈՅԱՆ—*Ներքին Դվինի կոլտնտեսության 1959 թ. բալանսը* . 75

Դ. ՍԱՀԱԿՅԱՆ—*Գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացումը* . 84

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ս. ՀՈՎՆԱՆՅԱՆ—*Փայլուն հանրագումարներ* . . . . . 89

ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ—*Ստեղծագործ մտքի մարդիկ։* Խ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ—*Ռացիոնալիզատորների ավանդը։* Հ. ՀԱԿՈԲՅԱՆ—*Արժեքավոր նախաձեռնություն։* Վ. ՍԵՎՅԱՆ, Ս. ՄԻՐԶՈՅԱՆ—*Հարուստ հեկտարի համար։* Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ—*Միշտ մարտական պոստում* . . 93

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ—*Կարդացեք այս գիրքը* . . . . . . 104

*Նամակ խմբագրությանը* . . . . . . . . . 110

## СОДЕРЖАНИЕ

*Передовая* — Добротные товары народу . . . 3

*Статьи*

*Г. Габриелян* — Марксизм и идея прогресса . . 9

*П. Исаева* — Пролетарский интернационализм и национальная политика Советского государства . . 21

*Ов. Багдасарян* — Страницы из истории борьбы Компартии Армении за единство КПСС . . . . 31

*Партийная жизнь*

*М. Амбарцумян* — Технический прогресс и партийная организация. *А. Вартанян* — Жить и работать по коммунистически. *М. Погосян* — Из опыта пропагандиста П. Мкртчяна. *О. Сарксян* — Центральное лицо политучебы . . . . . . . 44

*К сороколетию Советской Армении*

*В. Петросян* — Страницы из самоотверженной жизни . 62

*С. Мкртчян* — Сквозь бури . . . . . 66

*Р. Атаян* — Незабываемый борец . . . . 71

*Вопросы экономики сельского хозяйства*

*Ж. Саноян* — Баланс колхоза Н. Двина за 1959 г. . 75

*Д. Саакян* — Комплексная механизация сельского хозяйства . . . . . . . 84

*В странах социалистического лагеря*

*С. Овнанян* — Блестящие итоги . . . . . 89

*Письма и корреспонденции*

*В. Сарксян* — Люди творческой мысли, *Х. Татевосян* — Вклад рационализаторов, *А. Акопян* — Ценная инициатива, *В. Севян, М. Мирзоян* — За богатый гектар, *А. Мартиросян* — Всегда на боевом посту . 92

*Критика и библиография*

*В. Казанджян* — Читайте эту книгу . . . 104

Письмо в редакцию . . . . . . 110





# ՈՐԱԿՅԱԼ ԱՊՐԱՆՔՆԵՐ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Մեր երկիրն ապրում է պատմական զարգացման նոր ժամանակաշրջան՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը: Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և ՍՍՌՄ տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման հետ միասին, այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրն է սովետական ժողովրդի նյութական ու հոգևոր մշտապես աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը: Այդ խնդիրը հանդիսացել ու հանդիսանում է մեր պարտիայի ու կառավարության տնտեսական քաղաքականության բուն նպատակը:

Հաստատելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, մեր պարտիայի XXI համագումարը խնդիր է դրել յոթնամյակի տարիներին ապահովել աշխատավորների կենսամակարդակի անընդհատ բարձրացումը:

Ինչպես հայտնի է, Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը վերջին մի քանի տարիների ընթացքում կենսագործեցին մեծ թվով միջոցառումներ, որոնց շնորհիվ զգալիորեն բարձրացան բնակչության եկամուտները, նրանց նյութական ու կուլտուրական մակարդակը: ՍՍՌՄ Գերագույն Սովետի մայիսյան սեսիայի որոշումը՝ բանվոր-ծառայողներից գանձվող հարկերի վերացման մասին, մի նոր, խոշոր քայլ է սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման ճանապարհին: Գնալով ավելի ու ավելի են աճում բնակչության դրամական եկամուտները, հետևաբար և պահանջմունքները՝ նոր, բարձրորակ ապրանքների նկատմամբ:

Ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության բնագավառում մեր ռեսպուբլիկայի նվաճումները հսկայական են: Սակայն, ինչպես նշեց ՀԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումը, ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունները բնակչության գնողունակության, նրա պահանջարկի բարձրացման տեմպերի համեմատությամբ դեռևս դանդաղ են վերակառուցվում:

Ժողովրդական սպառման ապրանքների որակի ու ասորտիմենտի բարելավման հարցը, որը քննարկվեց ՀԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումում, խոշոր ժողովրդա-տնտեսական և քաղաքական նշանակություն ունի:

Արտադրանքի որակի բարձրացումը հնարավորություն է տալիս երկարացնելու ապրանքի օգտագործման ժամկետը, իսկ այդ նշանակում է՝ հումքի, նյութերի, աշխատանքի խնայողություն, ինչպես նաև արտադրական կարողությունների ռացիոնալ օգտագործում: Այս կամ այն ձեռնարկության արտադրանքի որակն այն կարևոր ցուցանիշներից մեկն է, որը բնութագրում է նրա տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործման աստիճանը, աշխատանքի

կազմակերպման, կադրերի տեխնիկական ու քաղաքական, նրանց սոցիալիստական գիտակցականության մակարդակը։

Վատորակ, ոչ կոմպլեկտավորված, կամ ստանդարտին ու տեխնիկական պայմաններին չհամապատասխանող արտադրանքի թողարկումը մեծ վնաս է պատճառում ժողովրդական տնտեսությանը։ Խոտանը հասարակական չարիք է, նյութական արժեքների կորուստ։ Արտադրանքի որակի բարձրացման, ասորտիմենտի ընդլայնման ու բարելավման համար մղվող պայքարը՝ միաժամանակ պայքար է սովետական ժողովրդի գնողունակության, նրա կենսամակարդակի հետագա բարձրացման համար։

Արտադրության անընդհատությունն ու զարգացման բարձր տեմպերն ապահովելու համար անհրաժեշտ է, որպեսզի հասարակական արդյունքն իրացվի սպառողների կողմից և տեղի ունենա արտադրության պրոցեսում ծախսված միջոցների՝ հումքի, նյութերի վերականգնում և դրա հետ միասին ստեղծվեն նոր արժեքներ անձնական ու հասարակական սպառման, ինչպես նաև կուտակման համար։ Իսկ որպեսզի արդյունքն իրացվի, այն պետք է համապատասխանի սպառողների պահանջմունքներին։

Շնորհիվ տնտեսության սոցիալիստական սիստեմի ու սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության, ՍՍՌՄ-ում աշխատավորների գնողունակության սիստեմատիկ աճի հետ միասին, անընդհատ բարձրանում են արտադրանքի քանակի, ասորտիմենտի ու որակի նկատմամբ բնակչության պահանջմունքները։ Այստեղից հետևում է, որ արդյունաբերական այն ձեռնարկությունները կարող են իրենց ապրանքային արտադրանքը ժամանակին իրացնել և ապահովվել հիմնական ու շրջանառու միջոցներով, որոնց արտադրանքը համապատասխանում է սպառողների պահանջմունքներին։ Միայն այդ պայմաններում է ընդարձակվում ներքին շուկան, արագանում շրջանառության պրոցեսը, կրճատվում վերարտադրության ժամանակը և բարձրանում են սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տեմպերը։

Մեր ռեսպուբլիկայի շատ ձեռնարկությունների ղեկավարներ, ինժեներներ ու բանվորներ իրենց գործարանի, ֆաբրիկայի մարկան բարձր պահելու համար ձգտում են ոչ միայն ավելացնել արտադրանքի քանակը, կատարել պլաններն ըստ ասորտիմենտի, այլև հասնել այն բանին, որպեսզի արտադրված ապրանքները լինեն բարձրորակ, ունենան գեղեցիկ ու դուրեկան տեսք, բազմակողմանիորեն բավարարեն սպառողների պահանջարկը։ Ռեսպուբլիկայի շատ ձեռնարկությունների արտադրանքն իր որակով մեծ համբավ է վայելում նաև նրա սահմաններից դուրս։

Սակայն, չնայած դրան, մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ արտադրում և առևտրական ցանցին են հանձնում ժողովրդական սպառման խիստ ցածրորակ ապրանքներ։ Այսպես, օրինակ, ռեսպուբլիկայի մսի կոմբինատներում անբավարար պայքար է տարվում մսի ու մսամթերքների որակի բարձրացման ուղղությամբ։ Անցյալ տարի և այս տարվա առաջին եռամսյակում ապրանքների որակի ռեսպուբլիկական տեսչության կողմից ստուգված 10.836 տոննա մսից 1487 տոննան համարվել է ցածրորակ։

Հայկական գինիներն ու կոնյակները, իրավամբ մեծ համբավ են վայելում ինչպես ռեսպուբլիկայում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ Սակայն, գինու արդյունաբերության ձեռնարկություններից շատերը արտադրության տեխնոլոգիայի խախտման հետևանքով սկսել են բաց թողնել ցածր-



որակ գինիներ։ Հաճախ չի կատարվում խաղողի նախնական տեսակավորումը, որը խիստ ազդում է արտադրվող գինիների որակի, գույնի ու համի վրա։ Միայն 1959 թվականին որակի ռեսպուբլիկական տեսչության կողմից ռեսպուբլիկայի ժողտնտխորհի գինու արդյունաբերության ձեռնարկություններում ստուգված 146.620 հազար դեկալիտր գինուց խոտանվել է 32.064 դեկալիտր, կամ ավելի քան 21 տոկոս։ Այս փաստը խոսում է այն մասին, որ գինու և կոնյակի արտադրության որակի բարձրացման համար անհրաժեշտ պայքար չի տարվում։

Աշխատավորության աճող պահանջմունքներին չի բավարարում նաև մրգի ու բանջարեղենի որոշ պահածոների որակը։

Աշխատավորներն իրավամբ բողոքում են Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայի արտադրանքի ցածր որակի, վատ ասորտիմենտի համար։ Այդ ֆաբրիկան շատ հաճախ է խախտում պետական ստանդարտներն ու տեխնիկական պայմանները և թողարկում ցածրորակ հրուշակեղեն, որով խոշոր վնաս է հասցնում ժողովրդական տնտեսությանը։

ՀԿԿ Կենտկոմի պլենումը հանգամանորեն քննարկելով ժողովրդական լայն սպառման ապրանքների որակի բարձրացման հարցը, նշեց, որ վատորակ ապրանքների թողարկման դեպքեր են լինում հատկապես մետաքսի, տեքստիլ և կոմվոլնի կոմբինատներում, կոշկի և պատրաստի հագուստի ֆաբրիկաներում, ինչպես և մի քանի այլ ձեռնարկություններում։

Ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքներ արտադրող շատ ձեռնարկություններ հաճախ խախտում են ասորտիմենտի պլանները, սորտայնությունը, որի համար վճարում են մեծ գումարների հասնող տույժեր և տուգանքներ։ Այսպես, օրինակ, 1959 թվականին և այս տարվա առաջին եռամսյակում ռեսպուբլիկայի կարի և տրիկոտաժի ֆաբրիկաները առևտրական կազմակերպություններին վճարել են 1746,5 հազար ռուբլու տուգանք, այդ թվում նուրբ բրդյա կտորների և մահուդի ֆաբրիկան՝ 229 հազար ռուբլի և այլն։ Նույն ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի կոշկի ֆաբրիկաները վճարել են 812 հազար ռուբլի տուգանք։

Ժողովրդական սպառման որոշ ապրանքների վատ որակի գլխավոր պատճառն այն է, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական առանձին ձեռնարկությունների ղեկավարներ անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում արտադրանքի որակի վրա։ Արդյունաբերական շատ ձեռնարկություններում արտադրանքի թողարկումը կատարվում է ոչ ռիթմիկ, գրոհայնության պայմաններում։ Իհարկե, այս դեպքում թուլանում է արտադրանքի որակի նկատմամբ ուշադրությունը։ Թույլ է ձեռնարկությունների կողմից միմյանց նկատմամբ ցուցաբերվող վերահսկողությունը՝ հատկապես հումքի մատակարարման հարցում։ Վերջապես, շատ ձեռնարկությունների ղեկավարներ վատ են հասկանում պետության և հասարակության նկատմամբ իրենց ունեցած պարտավորությունը։ Նրանք մոռանում են, որ վատորակ ապրանքների թողարկման դեպքում խոտանարարների նկատմամբ պետք է կիրառել ոչ միայն նյութական, այլև բարոյական, դատական պատասխանատվության միջոցներ։

Արտադրանքի որակի բարձրացման գործում մեծ դեր ունեն սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծված վերահսկողության հանձնաժողովները։ Սակայն նրանց մի մասը դեռևս այդ հարցով պատշաճորեն չի

զբաղվում և ժամանակին ջրի երես չի հանում խոտանարարներին, որոնք վնաս են հասցնում ժողովրդական տնտեսությանը:

ՀԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումը բոլոր պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց անդուլ պայքար մղել լայն սպառման ապրանքների որակի համար, այդ նպատակով մոբիլիզացնելով կոմերիտմիության և պրոֆմիության կազմակերպությունները: Ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ձեռնարկությունների կոլեկտիվները պետք է ակտիվ պայքար տանեն իրենց գործարանի, ֆաբրիկայի, արտելի հեղինակությունը բարձրացնելու համար, բարձր պահեն ձեռնարկության մարկան:

Ժողովրդական սպառման ապրանքների ասորտիմենտի և որակի ապահովումը պետք է լինի մեր ձեռնարկությունների աշխատանքի հիմնական ցուցանիշներից մեկը:

«Արտադրության ավելացման հետ միասին,—պարտիայի XXI համագումարին տված զեկուցման մեջ ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,—թեթև ու սննդի արդյունաբերության մեջ այժմ առաջին պլանի վրա է դրված արտադրանքի ասորտիմենտը և որակը զգալիորեն բարելավելու խնդիրը: Ժողովրդական սպառման ապրանքները պետք է լինեն լավորակ, գեղեցիկ, շքեղ ծրարված ու փաթեթված»:

Թողարկվող սպառման ապրանքների որակի և ասորտիմենտի հետագա բարելավման ապահովումը մեծ չափով կախված է սովետական առևտրի կազմակերպությունների հետևողական աշխատանքից: Ուժեղացնելով իրենց տնտեսական ներգործությունը արտադրության վրա, նրանք չպետք է թույլ տան, որպեսզի առևտրական ցանց մուտք գործեն վատորակ, պետական ստանդարտներին ու տեխնիկական պայմաններին չհամապատասխանող ապրանքներ: Իսկ դա, իր հերթին, չի կարող չնպաստել սոցիալիստական էկոնոմիկայի զարգացմանը, ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը:

Սովետական ժողովրդի գնողունակության զգալի բարձրացումը և տնտեսական հաշվարկը պարտավորեցնում են առևտրական կազմակերպություններին ու արդյունաբերական ձեռնարկություններին՝ հաշվի նստելու սպառողների պահանջմունքների հետ: Առևտրական կազմակերպությունները, որոնք նույնպես քննադատվեցին պլենումում, բազմակողմանիորեն ուսումնասիրելով բնակչության գնողունակությունն ու պահանջարկը, պետք է ակտիվորեն ներգործեն արտադրական ձեռնարկությունների վրա, բարձրացնեն իրենց պահանջկոտությունն ստացվող ապրանքների ասորտիմենտի ու որակի նկատմամբ:

Ապրանքների որակի և ասորտիմենտի բարելավման նպատակով արտադրության վրա ներգործելու համար սովետական առևտրի կազմակերպություններն ու ձեռնարկությունները պարտավոր են անշեղորեն կիրառել իրենց իրավունքները: Անհրաժեշտ է վերջ դնել այն պրակտիկային, երբ արդյունաբերական շատ ձեռնարկություններ երբեմն գիտակցաբար չեն հրաժարվում պայմանագրային պարտավորությունների չկատարման համար նախատեսված տուգանքների վճարումից, որպեսզի դրանով իսկ հնարավորություն ունենան իրացնելու իրենց վատորակ արտադրանքը: Զգալով «ռուբլու հարվածը», արդյունաբերական ձեռնարկությունները ստիպված կլինեն վերակառուցել աշխատանքները և թողարկել բարձրորակ ապրանքներ:

Ժողովրդական սպառման ապրանքների որակի ու ասորտիմենտի համար անհրաժեշտ պայքար չկազմակերպելու և առանց բնակչության պահանջարկը բազմակողմանիորեն ուսումնասիրելու՝ ապրանքների մեխանիկական բաշխման հետևանքով ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպություններում կուտակվել են մեծ քանակությամբ գերնորմատիվային ապրանքներ:



Ժողովրդական սպառման ապրանքների բաշխումը պետք է կատարել բնակչության պահանջարկի խոր և բազմակողմանի ուսումնասիրության հիման վրա: Սովետական առևտրի ցանցի աշխատողները ընկ. Միկոյանի դիպուկ խոսքերով ասած՝ պետք է «քարե սիրտ» ունենան այն մատակարարների նկատմամբ, որոնք խախտում են պատվերներն ու կնքված պայմանագրերը, արտադրում ու առևտրական ցանցին են հանձնում վատորակ ապրանքներ:

Անհրաժեշտ է, որպեսզի առևտրական բազաներում, ցանցում հաճախակի հրավիրվեն խորհրդակցություններ ու դրանց մասնակից դարձնելով ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ձեռնարկությունների ներկայացուցիչներին, քննության առնվեն ապրանքների որակի, ասորտիմենտի հետ կապված հարցերը, փոփոխություններ մտցվեն ձեռնարկությունների արտադրական պլաններում այն հաշվով, որպեսզի արտադրությունից հանվեն այն ապրանքները, որոնք չեն բավարարում բնակչության պահանջմունքները, կազմակերպվի նոր ապրանքների արտադրություն:

Ժողովրդական սպառման ապրանքների որակի համար տարվող պայքարը մեծ չափով կախված է նաև առևտրական բազաների, պահեստների նյութատեխնիկական հագեցվածության աստիճանից, այդ ապրանքների պահպանումից: Քիչ չեն դեպքերը, երբ բարձրորակ ապրանքները սովետական առևտրի օղակներում ժամանակին չիրացնելու և խնամքով չպահպանելու հետևանքով, կարճ ժամանակամիջոցում կորցնում են իրենց տեսքը:

Ապրանքների որակի իջեցման պատճառներից մեկն էլ այն է, որ առևտրի ստորին ցանցի աշխատողներից շատերը չգիտեն ապրանքների պահպանման հետ կապված էլեմենտար կանոնները, ապրանքագիտության հասարակ հարցերը: Ահա թե ինչու պլենումը նշեց, որ ինչպես արտադրող, նույնպես և վաճառող կազմակերպությունների ու ձեռնարկությունների կադրերի գիտելիքների բարձրացման հոգսը պետք է լինի մեր ուշադրության կենտրոնում:

Ժողովրդական սպառման ապրանքների որակի համար պայքարի ուժեղացման նպատակով անհրաժեշտ է էլ ավելի բարձրացնել ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրության Ապրանքների որակի ռեսպուբլիկական տեսչության պատասխանատվությունը: Առևտրի կազմակերպությունները պետք է անքերի կատարեն այդ տեսչության հրամանները, շրջանցեն նրա կողմից արգելված ապրանքները: Դա էլ ավելի կբարձրացնի արդյունաբերական ձեռնարկությունների պատասխանատվությունն ապրանքների որակի և ասորտիմենտի բարելավման գործում:

Ռեկլամի լավ կազմակերպումը ապրանքների իրացման կարևոր պայմանն է: Սակայն ռեսպուբլիկայում քիչ չեն այն խանութները, որտեղ վատ են ձևավորված ցուցափեղկերը, ապրանքների ցուցադրումները: Գեղարվեստական հաջող ռեկլամի կազմակերպումը մինիմալ ծախսերի սահմաններում՝ կխթանի ո՛չ միայն առևտրի զարգացմանը, այլև կբարձրացնի բնակչության սպասարկման կուլտուրան:

Ժողովրդական սպառման ապրանքների որակի ու ասորտիմենտի բարելավման հարցը պետք է դրվի արտադրական ու առևտրական ձեռնարկու-

թյունների, պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

ՀԿՊ Կենտկոմի պլենումը վերհանելով սպառման ապրանքների որակի բարձրացման արգելակող պատճառները, նշեց, որ ժողտնտխորհի, մինիստրությունների, ձեռնարկությունների և քաղաքային ու շրջանային պարտիական կոմիտեների, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային Սովետների, արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ լայն սպառման ապրանքների արտադրության պլանների անպայման կատարումը, դրանց ասորտիմենտի ընդլայնումը, ինքնարժեքի իջեցումը և որակի բարձրացումը: Անհրաժեշտ է մշակել և անշեղորեն կիրառել այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեն թողարկվող կոշիկների, տեքստիլ, տրիկոտաժ և կարի ֆաբրիկաների արտադրանքի, կահույքի, սննդամթերքների և կուլտուր-կենցաղային կարիքները բավարարող ապրանքների բարձր որակը և ասորտիմենտի բազմազանությունը:

Պլենումը պարտավորեցրեց ժողտնտխորհին, Գյուղատնտեսության մինիստրությանը, գյուղական պարտշրջկոմներին և աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործկոմներին, ինչպես և սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ ձեռք առնել բոլոր անհրաժեշտ միջոցները, որպեսզի արդյունաբերության վերամշակման հանձնվող հումքը՝ բամբակը, խաղողը, բուրդը, ծխախոտը, միսը, կաթը, մրգերն ու բանջարեղենը համապատասխանեն սահմանված պետական ստանդարտին:

Որակի բարձրացման հարցը համարելով համապետական կարևորագույն միջոցառում, պլենումը պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, ինչպես նաև տնտեսության ղեկավարների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որպեսզի ամեն կերպ ուժեղացվի արտադրանքի որակի նկատմամբ եղած ինքնահսկումը, լայն կերպով ծավալվի աշխատանքի կոմունիստական բրիգադաների և նորարարների շարժումը:

Բազմակողմանիորեն հաշվի առնելով մասսայական սպառողների պահանջմունքները ապրանքների և կենսամթերքների նկատմամբ, ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրությունը, Հայկոոպը, ինչպես և աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային Սովետները կոչված են ամեն կերպ նպաստելու, որպեսզի արդյունաբերությունը կարճ ժամանակամիջոցում լուծի թողարկվող արտադրանքի որակի բարձրացման հարցը: Այս նպատակով անհրաժեշտ է ավելի սիստեմատիկ դարձնել ժողովրդական սպառման ապրանքների ցուցահանդեսների կազմակերպումը և լավագույն ապրանքների գործածման լայն պրոպագանդան:

Պատրաստվելով արժանավայել դիմավորելու ռեսպուբլիկայում Սովետական իշխանության հաստատման քառասնամյակը, պարտիական կազմակերպությունները, ժողտնտխորհը, մինիստրությունները և ձեռնարկությունները, պրոֆմիությունները, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային Սովետները պետք է գործադրեն բոլոր ջանքերը՝ անշեղորեն կենսագործելու ՀԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը՝ ժողովրդական լայն սպառման առարկաների որակի բարձրացման մասին: Կասկածից վեր է, որ ռեսպուբլիկայի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ծառայողները, գյուղատնտեսության բոլոր աշխատողները պատվով կկատարեն հարազատ պարտիայի առաջադրած այս կարևորագույն խնդիրը ևս:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԱՐՔՍԻԶՄԸ ԵՎ ՊՐՈԳՐԵՍԻ ԳԱՂԱՓԱՐԸ

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

*Պրոգրեսի գաղափարն այն գաղափարներից է, որը շարունակ զբաղեցրել է մարդկանց, մեծապես ազդել նրանց գործունեության վրա, անչափ կարևոր դեր խաղալով հասարակության ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր կուլտուրայի զարգացման գործում: Պրոգրես ասելով միշտ էլ հասկացվել է առաջընթաց շարժում, զարգացման համեմատաբար ցածր աստիճանից անցում դեպի բարձրը, գոյություն ունեցող դրության փոփոխում՝ այն ավելի բարելավելու նպատակով: Առհասարակ, իր առաջացման օրից ի վեր, մարդը միշտ էլ ձգտել է հեշտացնել իր ապրուստի միջոցների հայթայթումը, բարվոքել իր կյանքը, հարստացնել գիտելիքների իր պաշարը, բնության ուժերն իրեն ենթարկել՝ իր կարիքներին ծառայեցնելու համար, ուստի նա աշխատել է գնալ պրոգրեսի ճանապարհով: Այդ ձգտումը սոսկ սուբյեկտիվ մի ցանկություն, կամ պարզապես կամայականություն չի եղել, այլ սեփական գործողությունների օբյեկտիվ հետևանքի գիտակցում:*

*Բանն այն է, որ անջատվելով կենդանական աշխարհից, մարդը աշխատանքի պրոցեսում շարունակ կատարելագործել է արտադրության միջոցները՝ փայտյա մահակը փոխարինել է քարե գործիքներով, վերջինները՝ երկաթից ձուլվածներով, ստեղծել է մեքենաներ, որոնք հեշտացնելով աշխատանքը՝ բարվոքել են նրա վիճակը. մի խոսքով զարգացրել է արտադրողական ուժերը, դրանով հիմք ստեղծելով փոխելու նաև հասարակության ողջ կառուցվածքը:*

*Ամեն մի նոր հասարակություն իր մեջ պարունակել ու պարունակում է մի այլ հասարակության կամ դրա ավելի բարձր աստիճանին անցնելու ռևոլյուցիոն ուժեր: Մարդը եղել և հանդիսանում է այդ ուժերից առաջինը, ուստի նաև հասարակական բոլոր հեղաշրջումների հեղինակը: Պատմական անհերքելի իրողություն է, օրինակ, որ արտադրության պրոցեսում ձեռքով և, առհասարակ, մարդկային ուժով գործածության մեջ դրվող գործիքները կատարելագործվելով հետզհետե փոխարինվել են մեքենաներով, ֆեոդալական հասարակության ընդերքում ծնվող մի նոր դասակարգի՝ բուրժուազիայի ջանքերով ստեղծվել է մեքենայացված խոշոր արդյունաբերություն, որը մարդկության պատմության մեջ մեծագույն մի ռևոլյուցիա է հանդիսացել: Պրոգրեսի գաղափարն այս փաստերի դիտողության, դրանց ընդհանրացման ու տեսական իմաստավորման արդյունք է:*

*Բացի այդ, զբաղվելով արտադրությամբ՝ մարդը մշտական հարաբերու-*

թյան մեջ է բնության հետ, քանի որ աշխատանքը ոչ այլ ինչ է, բայց եթե «մարդու և բնության միջև տեղի ունեցող մի պրոցես, որի ընթացքում մարդն իր սեփական գործունեությամբ միջնորդավորում, կարգավորում ու վերահսկում է իր և բնության միջև նյութափոխանակությունը»։ Ահա այս հարաբերության ընթացքում մարդը դիտում ու բացահայտում է նաև բնության մեջ կատարվող փոփոխությունները՝ բուսական ու կենդանական աշխարհում նոր տեսակների առաջացումը, կամ հների կատարելագործումը, որպես բնական մի երևույթ, այլ կերպ ասած, հանգում է պրոգրեսի գաղափարին։

Այսպիսով, պրոգրեսի գաղափարը մտացածին չէ, այլ իրական աշխարհում օրինաչափորեն տեղի ունեցող փոփոխությունների վերարտադրությունը մարդկանց գիտակցության մեջ։ Այն տեսակետը, ըստ որի պրոգրեսի գաղափարը օբյեկտիվ հիմքից զուրկ տրամաբանական մի կատեգորիա է, ճիշտ չէ, հակագիտական է։ Բանն այն է, որ ամեն մի, այդ թվում նաև պրոգրեսի գաղափարը, մարդու մեջ առաջանում է միայն այն դեպքում, երբ դրա իրականացման համար կան անհրաժեշտ օբյեկտիվ նախադրյալներ կամ ստեղծվում են, ինչպես ասում է Մարքսը։ Պրոգրեսի գաղափարն իր արմատներով և իր բնույթով կապված է իրականության հետ, բայց տարբեր դասակարգերի, անգամ դրանց զարգացման տարբեր շրջանների ներկայացուցիչների կողմից տարբեր կերպ է ըմբռնվում և իրականացվում կյանքում։

Պրոգրեսի գաղափարի կրողներն ու դրա համար պայքարողները միշտ էլ հասարակության առաջավոր դասակարգերն են եղել։ Իրենց դարն ապրած սոցիալական ուժերը հանդես են եկել ոչ թե պրոգրեսի, այլ ռեգրեսի՝ հետադիմության դրոշակով։ Եվ կյանքում պրոգրեսը միշտ էլ հակադրվել ու հակադրվում է ռեգրեսին։ Դրանք երկու ո՛չ միայն տարբեր, այլև մեկը մյուսին արմատապես բացառող բնական ու հասարակական երևույթների մասին եղած գաղափարներ են։

Պրոգրեսը միշտ էլ նորի առաջացում է, հնի անհետացում, իսկ ռեգրեսը, ընդհակառակը, նորի առաջացման խափանում, դրա հաղթանակի վիժեցում։ Երբ, օրինակ, կապիտալիստական հարաբերությունները ծնվելով ֆեոդալիզմի ընդերքում՝ հետզհետե ամրացան, ծավալվեցին և ֆեոդալական արտադրաեղանակը վերջնականապես փոխարինվեց բուրժուական արտադրաեղանակով, դա եղավ պրոգրեսի հաղթանակը, իսկ միջնադարյան ինկվիզիցիայի կողմից նշանավոր մատերիալիստ գիտնական Ջորդանո Բրունոյի այրումը խարույկի վրա՝ ռեակցիայի պայքարի մի ձև էր պրոգրեսի դեմ։

Առհասարակ իր վերելքի շրջանում բուրժուազիան հանդես եկավ որպես պրոգրեսի ջատագով։ Հակադրվելով ֆեոդալական ռեակցիային՝ նորելուկ բուրժուազիայի գաղափարախոսներից Վոլտերը հավատացնում էր, որ պատմությունը դա բանականության աստիճանական հաղթանակն է կույր հավատի նկատմամբ, լուսավորության հաղթանակը միջնադարականության վրա։

Կոնդորսեն գտնում էր, որ իրական պրոգրեսը դա եկեղեցու տիրապետությունից բանականության տիրապետության անցնելն է, միապետության փոխարեն ռեսպուբլիկայի հաստատումը, դասային անհավասարության վերացումը և քաղաքական լիակատար հավասարության իրականացումը համապատասխան օրենսդրական ակտերի միջոցով։ Իր ժամանակին այս գաղափարները պրոգրեսիվ էին, քանի որ մի մեծ նպատակ էին հետապնդում՝



ճորտատիրության վերացումը, որը հասարակության զարգացման ամենախոշոր արգելակող ուժն էր։

Այսպիսով, ֆեոդալիզմից կապիտալիզմին անցնելու, առաջինի նկատմամբ երկրորդի տարած հաղթանակների և դրանց խորացման ու ամրացման շրջանում բուրժուազիան պրոգրեսի գաղափարի ո՛չ միայն քարոզիչն էր, այլև իրականացնողը։ Գիտնականներ Նյուտոնը, Լավուազեն, Կանտը, Լոմոնոսովը, Լոբաչևսկին և մյուսները մեկը մյուսի ետևից կատարած իրենց խոշոր հայտնագործություններով բնության գաղտնիքները քողազերծ էին անում, բացահայտելով նրա փոփոխման ու զարգացման օրենքները, այդպիսով մարդուն ոչ միայն բնության ուժերի գերությունից էին ազատում, այլև կարգում դրանց տեր ու տնօրեն։ Բնագիտության մեջ այս գիծը շարունակվում է, որքան որ դա կապված է արտադրության կարիքները բավարարելու հետ։

Չնայած իդեալիզմի տիրապետմանը բուրժուական աշխարհում և կապիտալիստական ոչ միայն հարաբերությունների, այլև մտքի ընդհանուր նեխմանն ու քայքայմանը, այնուամենայնիվ, բնական առանձին գիտությունների բնագավառում առաջընթաց շարժումը կանգ չի առել։ Քիչ չեն բուրժուական այն գիտնականները, որոնք այսօր էլ մեծ ներդրումներ են կատարում բնության ուժերը, այդ թվում նաև ատոմային էներգիան մարդուն ծառայեցնելու գործում։ Այդ երևույթը բացատրվում է նախ՝ նրանով, որ բուրժուական քաղաքակրթության ընդհանուր անկումը առանձին բնագավառներում տեղի ունեցող աշխուժությունը երբեք չի բացառում։ Լենինն ասում է, որ իմպերիալիզմը, որպես կազմալուծվող կապիտալիզմ, չի բացառում այն, որ առանձին երկրներում, կամ տնտեսության առանձին ճյուղերում այն կարող է շարունակել զարգանալ, որն իր հերթին պայմանավորում է նաև բնական առանձին գիտությունների զարգացումը։ Երկրորդ, բնագիտությունը, որպես հասարակական գիտակցության մի ձև, ունի իր հարաբերական ինքնուրույնությունը։ Սոցիալիստական աշխարհում տեղի ունեցող բնագիտական մտքի բուռն վերելքը չի կարող չանդրադառնալ նաև բուրժուական աշխարհի բնագիտական մտքի վրա։

Սակայն բուրժուական դասակարգի ու նրա մտքի համար ամենաբնորոշն այսօր պրոգրեսի դեմ ծավալած պայքարն է։ Դեռ մեր դարի սկզբներին ժամանակակից իմպերիալիզմի գաղափարախոսներից Շպենգլերը փորձեց ապացուցել, որ իբր պատմական պրոգրես առհասարակ գոյություն չունի. ամեն մի փոփոխություն ֆատալիստական է, ուստի մարդը երբեք չի կարող ազդել իրերի պատմական ընթացքի վրա, նա սոսկ հանդիսատես է և ոչ թե իր սեփական պատմության կերտողը։ Համաշխարհային առաջին պատերազմից անմիջապես հետո հրապարակած իր «Եվրոպայի մայրամուտը» երկհատորանոց աշխատության մեջ նույնացնելով մարդկային ողջ կուլտուրան արևմտաեվրոպական բուրժուական քաղաքակրթության հետ, Շպենգլերն այն հայտարարեց կործանման դատապարտված, չտեսնելով որևէ ուժ, որը կարող է նորից հասարակությունը կենդանացնել, ապահովել նրա պրոգրեսը։ Այս հոռետեսությունն այսօր բուրժուական մտքի ամենահատկանշական գիծն է։

Բեկկերը, Թոյնբին ու մեռնող կապիտալիզմի այլ ներկայացուցիչներ հավատացնում են, թե իբր մարդկության վերասերում է տեղի ունենում. առաջ գնալու փոխարեն նա վերադարձ է կատարում դեպի իր ելման կետը, այսինքն՝ նորից վայրենանում է։ Անշուշտ, եթե նկատի ունենանք ժամանակակից

գաղութարարների գործունեությունն իրենց նվաճած երկրներում, կարելի է ասել, որ իսկապես դա «քաղաքակրթված» բարբարոսություն է։ Փաստ է, որ հումանիզմի հետ ոչ մի առնչություն չունեն, օրինակ, ալժիրցիների մասսայական կոտորածները՝ ֆրանսիական իմպերիալիստների կողմից, միմիայն այն բանի համար, որ ալժիրցիները ցանկանում են ազատ լինել։ Բուրժուազիան մեռնող դասակարգ է. մինչև պատմության ասպարեզից նրա վերջնական անհետացումը նա դեռ շատ ու շատ չարիքներ կգործի, բայց հասարակության առաջընթացը կասեցնել անկարող է։

Պատմական պրոցեսի բնույթն ու ընթացքը որոշելիս բուրժուազիայի այսօրվա գաղափարախոսները երկու հիմնական սխալ են կատարում. նախ՝ ողջ մարդկության պատմությունն ու կուլտուրան նույնացնում են բուրժուազիայի պատմության և ռեակցիոն կուլտուրայի հետ և դրա հիման վրա վերջինի կործանումը դիտում են որպես ողջ քաղաքակրթության կործանում և, երկրորդ՝ գերագնահատում են բուրժուազիայի ուժը, բացարձականացնում նրան, հայտարարելով այն պատմության միակ շարժիչ ուժը, որի պատմական ասպարեզից հեռանալը որպես թե պատմական պրոգրեսի վերջ է նշանակում։ Բայց այդ կարգի հարցադրումը կատարյալ անհեթեթություն է։

Այն կուլտուրան, որ այսօր գոյություն ունի, ողջ մարդկության ստեղծագործության արդյունք է. նրա մեջ մաս ունեն բոլոր դասակարգերը՝ սկսած ստրուկներից և ստրկատերերից, մինչև մեր օրերի կապիտալիստներն ու բանվորները։ Ընդ որում այդ պրոգրեսի մեջ շահագործող դասակարգերի լուման անհամեմատ փոքր է, որովհետև պատմությունը միշտ էլ կերտել և կերտում են ժողովրդական մասսաները՝ արտադրող դասակարգերը։

Այս պատճառով էլ բուրժուական կարգերի ճգնաժամը, դրանց կործանումը և բուրժուազիայի վերացումը երբեք պատմական պրոգրեսի վերջը լինել չեն կարող։ Ընդհակառակը, բուրժուական տիրապետության վերացումը մեր օրերում իրական, անխափան պրոգրեսի հիմնական նախապայմանն է։ Այդ է ապացուցում պատմական փորձը՝ սոցիալիզմի հաղթանակը Ասիայի և Եվրոպայի տասներկու երկրներում։ «Սովետական իշխանության բոլոր տարիներին մեր երկրում արդյունաբերության աճման տարեկան միջին տեմպերը երեք—հինգ անգամ գերազանցել են զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերության աճման տեմպերից». առհասարակ «բարձր տեմպերը սոցիալիզմի ընդհանուր օրինաչափությունն են, որ այժմ հաստատված է սոցիալիստական լագերի բոլոր երկրների փորձով», ասում է ընկ. Խրուշչովը։

Բուրժուական տեսական միտքը, անգամ իր բուռն վերելքի շրջանում, չհասավ պրոգրեսի գաղափարի ու դրա հետևողական իրացման հանգամանքների գիտական ըմբռնմանը։ Այդ բանին արգելք հանդիսացան նախ բուրժուազիայի դասակարգային ձգտումները, որոնք չէին համընկնում իրականության օբյեկտիվ ընթացքի հետ, և, երկրորդ, իդեալիզմն ու մետաֆիզիկան, որոնք հիշյալ մտքի հիմքն են կազմում։ Որպես շահագործող դասակարգ, բուրժուազիան միշտ էլ երազել է իր տիրապետության հավերժացման մասին։ Անգամ այն շրջանում, երբ նա կռվում էր ֆեոդալիզմի դեմ, խոշոր դրական դեր էր կատարում, նա այդ բանն անում էր, հույս ունենալով, որ կկարողանա անմահացնել իր թագավորությունը։ Բուրժուազիայի այդ ձգտումը տեսականորեն հիմնավորելու համար նրա գաղափարախոսները փորձեցին մարդկության ողջ պատմությունը ներկայացնել որպես բուրժուական հասարակու-



թյան պատմություն, իսկ ֆեոդալիզմը՝ որպես ընդհանուր պատմական ընթացքից կատարված մի շեղում, որը պետք է վճռականորեն ուղղվեր ֆեոդալիզմի վերացումով։

Առաջադրելով կապիտալիզմը հավերժացնելու սկզբունք, բնական է, որ բուրժուական մտածողներն անկարող էին պրոգրեսի գաղափարի գիտական մշակմանը հասնել։ Իրերի օբյեկտիվ ընթացքն ասում էր այն մասին, որ կապիտալիզմը պատմականորեն առաջացած հասարակական արտադրական ֆորմացիաներից մեկն է, որն անխուսափելիորեն պիտի փոխարինվի սոցիալիզմով, իսկ բուրժուազիան դրա հետ հաշտվել չէր կարող։ Այդ պատճառով էլ նրա գաղափարախոսները սկսեցին իրականությունը խեղաթյուրել՝ ապացուցելու, որպես թե կապիտալիզմից բարձր այլ հասարակարգ գոյություն ունենալ չի կարող, որ կապիտալիզմի կործանումը որպես թե մարդկային հասարակության կործանումն է։ Այլ կերպ ասած, փաստերի գիտական վերլուծումը փոխարինվեց դասակարգի սուբյեկտիվ ցանկության թմբկահարումով։ Իրականացավ Մարքսի ասածը, այսինքն՝ բուրժուազիան իշխող դասակարգ դառնալով, հարցերի գիտական ճանաչողությունը փոխարինեց «ոստիկանական նկատառումներով», հրաժարվելով պրոգրեսի գաղափարից։

Բուրժուական սոցիոլոգ, անգլիացի Մ. Ջինսբերգը հայտարարում է. «Ես չեմ հավատում, թե պրոգրեսի ինչ-որ ընդհանուր օրենքներ կան»։ Նման օրենքներ գոյություն չունեն. հետևաբար, պրոգրեսի՝ որպես օբյեկտիվ աշխարհի ընդհանուր բնականոն զարգացման մասին խոսք լինել չի կարող։ Նման ընդհանուր օրինաչափություն «հավասարակշռությունն» է, ասում է նա։ Եվ դա հասկանալի է։ Իրական պրոգրեսը անհրաժեշտորեն ենթադրում է կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինել։ Ջինսբերգը դրան դեմ է։ Իսկ «հավասարակշռության» դեպքում հինը՝ կապիտալիզմը, պահպանվում է հակադիր ուժերը բուրժուազիային ենթարկելու միջոցով։

Հասարակական ուժերը հավասարակշռել նշանակում է թույլ չտալ, որ պրոլետարիատն իր իդեական կոփվածությամբ, ուժերի կազմակերպվածությամբ, հասարակական-քաղաքական կյանքում ունեցած իր դերով և այլ հատկանիշներով գերազանցի բուրժուազիային, այլ կերպ ասած, որ նա երբեք չկարողանա իրականացնել իր դիկտատուրան, այլ մշտական կախման մեջ մնա շահագործողներից։ Պրոգրեսի գաղափարն այս գաղափարով փոխարինելը բուրժուազիայի նպատակն է, որը նա հետապնդում է տեսության մեջ՝ մատերիալիզմին իդեալիզմ, դիալեկտիկային մետաֆիզիկա հակադրելով։

«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» իր նշանավոր աշխատության մեջ Լենինն ապացուցեց, որ հատկապես ժամանակակից բուրժուական մտքի հիմնական գիծը իդեալիզմին ու մետաֆիզիկ մտածելակերպին հավատարիմ մնալն է։ Բնագիտության մեջ կատարված մեծագույն հայտնությունների աստվածաբանությանը ծառայեցնելու, մատերիայի ու դրա օրինաչափությունների օբյեկտիվ ռեալականությունը ժխտելու, այլ կերպ ասած, գիտության մեջ պրոգրեսի գաղափարը մերժելու նրա ձգտման թեորիական հիմքը իդեալիզմն ու մետաֆիզիկան է։ Այս չի նշանակում, իհարկե, որ իդեալիստները երբեք պրոգրեսի գաղափարի կողմնակիցներ ու քարոզիչներ չեն եղել։ Կոնդորսեն ու Վոլտերը, որոնց մասին խոսք եղավ վերևում, որպես պրոգրեսի գաղափարի ջատագովներ, իդեալիստներ էին. բայց, խոսելով պրոգրեսի ու նրա իրականացման համար մարդու մղած պայքարի մասին, նրանք վեր էին հանում

այդ պայքարի միայն գաղափարական մոտիվները, անտեսելով այդ մոտիվները պայմանավորող տնտեսական հիմքը՝ արտադրաեղանակը։ Այս պատճառով էլ պրոգրեսի մինչմարքսյան գաղափարներն ու թեորիաները հետևողական գիտական լինել չէին կարող։ Դրականը դրանց մեջ հարցադրումն էր, զուտ կրոնական-աստվածաբանական ուսմունքներին հակադրվելը և ընդունումն այն բանի, որ գոյություն ունեցողը հավերժ անփոփոխ մնալ չի կարող, նա ենթակա է կատարելագործման։ Բայց նպատակին հասնելու, պրոգրեսի գաղափարը գիտական հիմունքների վրա դնելու համար անհրաժեշտ էր վերջնականորեն հրաժարվել ինչպես իդեալիզմից, այնպես նաև մետաֆիզիկայից, որոնք այսօր հակադրվում են մատերիալիստական դիալեկտիկային՝ պրոգրեսի այդ միակ գիտական ուսմունքին։

Ժամանակակից ռևիզիոնիզմը, հանձին Մարկովիչի, հավատացնում է, որպես թե «Ներկայումս դիալեկտիկայի և մետաֆիզիկայի, որպես փիլիսոփայական երկու հիմնական մեթոդների տարբերումն արդեն քիչ իմաստ ունի։ Մեր դարում էվոլյուցիոնիստական գաղափարներն արդեն այնքան են ներթափանցել ինչպես գիտության, այնպես նաև հասարակ մարդկանց մտածողության մեջ, որ այլևս ոչ ոք չի վիճարկում, թե ամեն ինչ փոխվում է», ասում է նա։ Անշուշտ, զարգացման գաղափարը մեր օրերում համընդհանուր է դառել. այդ պատճառով էլ պնդել, թե, օրինակ, բուսական կամ կենդանական աշխարհում փոփոխություններ տեղի չեն ունենում, նոր տեսակներ չեն առաջանում, այսինքն՝ պրոգրես չկա, այլևս անհնար է։ Բայց թե դրանից հետևում է, որ մետաֆիզիկայի և դիալեկտիկայի հակադրությունը ոչ թե վերացել է, այլ ավելի ակնբախ և սուր բնույթ է ստացել։ Եթե մի ժամանակ, գիտությունների անբավարար զարգացման պայմաններում, մետաֆիզիկան դեռ կարող էր պահպանել իր դիրքերը, ապա այսօր նա այդ հնարավորությունից զրկվել է, քանի որ գիտական ամեն մի նոր հայտնագործություն դրա հերքումն է։ Հակառակը պնդելով, Մարկովիչը նույնացնում է դիալեկտիկան վուլգար էվոլյուցիոնիզմի հետ, որը փաստորեն նույն մետաֆիզիկան է։

Մետաֆիզիկ մտածողության բնորոշ գիծն այն է, որ նա իրերն ու դրանց մասին եղած հասկացողությունները վերցնում է իրենց մեկուսացված, մեկընդմիշտ տրված վիճակում, առանց ներքին կապի կամ փոխադարձ փոխանցման։ Մետաֆիզիկը չի ժխտում, որ աշխարհում փոփոխություններ են տեղի ունենում, մինչև իսկ զարգացում, բայց այդ ամենը նա հանգեցնում է զուտ քանակական կուտակումների, առանց նոր որակի առաջացումն ընդունելու։ Նրա տեսակետով բնությունը ներքին հակասություններից զերծ է, և զարգացման աղբյուրը ոչ թե **ներքին** հակասություններն են, այլ **արտաքին** հակադիր ուժերի ընդհարումը։ Ըստ էության սա նույն վուլգար էվոլյուցիոնիզմն է։

Բուրժուական աշխարհում լայն տարածված վուլգար էվոլյուցիոնիզմի կողմնակիցներն էլ զարգացումը դիտում են սոսկ որպես քանակական փոփոխություն, պատճառաբանելով, որպես թե ամեն մի որակական անցում կամ թռիչք զարգացման շղթայի ընդհատումը կլինի, ուստի և զարգացման խափանումը։ Ի՞նչ կապ կա այս մտածելակերպի ու դիալեկտիկայի միջև։ Ո՛չ մի։ Որովհետև դա դիալեկտիկայի հակադրությունն է, նրա ժխտումը։

Ըստ դիալեկտիկայի իրերն ու նրանց մասին եղած հասկացությունները բացարձակ մեկուսացման, հավերժ անփոփոխ վիճակում լինել չեն կարող, քանի որ շարժումը մատերիայի ատրիբուտն է, հիմնական հատկանիշը. ընդ-



հակառակը, նրանք գտնվում են հարատև փոփոխման ու զարգացման մեջ, որի ընթացքում մեկը վեր է ածվում մյուսի, մեկի քանակական աճը հանգեցնում է նրա բացասմանը մեկ այլ որակով, հակասությունների սրման ու հաղթահարման օրենքի հիման վրա։ Դիալեկտիկան ապացուցում է, որ առանց թռիչքի, առանց հին շղթայի ընդհատման ու նորի առաջացման, իրական զարգացում կամ պրոգրես գոյություն չունի։ Այսպես, օրինակ, եթե մենք գտնում ենք, որ օրգանական աշխարհի զարգացումը հանգում է նրա արդեն գոյություն ունեցող ձևերի միայն մեխանիկական վերարտադրությանը, դրանով ընդունում ենք, որ անվերջ պրոցես չկա, որովհետև չի կարելի բնության բազմազանությունը սահմանափակել մեզ հայտնի ձևերով ու միաժամանակ խոսել նրա առաջընթացի անվերջության մասին։

Նույնը կարելի է ասել նաև մարդկային հասարակության զարգացման մասին։ Եթե հասարակական պրոգրեսը դասակարգային միևնույն հարաբերությունների անվերջ վերարտադրությունն է, ապա կապիտալիզմը երբեք սոցիալիզմի վերածվել չի կարող, ուստի իրական պրոգրեսի առկայության մասին խոսելն անգամ անմտություն է։ Բայց կյանքում երբեք հինը հավերժ կրկնվել չի կարող։ Քանակական կուտակումները անխուսափելի են դարձնում հին որակի բացասումը, ուստի և նոր որակի հաղթանակը հնի նկատմամբ, հին շղթայի ընդհատումը նորն սկսելու համար։ Այդ է ապացուցում հասարակական բոլոր ֆորմացիաների պատմությունը։

Այսպիսով, պրոգրեսի գաղափարը գիտական է ու մեր պրակտիկ գործունեության համար որոշակի արժեք ունի, երբ նա իր բնույթով մարքսիստական է։

Իրերի պատմական ընթացքն ապացուցեց, որ միայն դիալեկտիկական մատերիալիզմով ղեկավարվելու դեպքում է հնարավոր պրոգրեսի գաղափարը գիտական հիմունքների վրա դնել, այն դիտելով որպես նորի առաջացման մի գաղափար, բացահայտել դրա նյութական հիմքերը, այն օբյեկտիվ ուժերը, որոնք պրոգրեսը հնարավոր են դարձնում և ցույց տալ այն դասակարգը, որը հիշյալ գաղափարի կրողն է ու պատմական պրոգրեսին տոն տվողը։

Ստեղծելով իրենց թեորիան, Կոնդորսեն և մյուսները այն հայտարարեցին հավասարապես բոլոր դասակարգերի համար միատեսակ ընդունելի մի ուսմունք։ Սա բուրժուազիայի գաղափարներին համամարդկային բնույթ տալու մի ձգտում էր, որից չեն հրաժարվել նաև նրա այսօրվա ներկայացուցիչները։ Հակադրվելով այս «օբյեկտիվիզմին» կամ «անպարտիականությանը», Մարքսը, Էնգելսն ու Լենինը ապացուցեցին, որ պրոգրեսի գիտական գաղափարը խորապես դասակարգային է, պրոլետարական, որովհետև մեր օրերում միայն այդ դասակարգն է ընդունակ հետևողական լինել ռեակցիայի դեմ մղած պայքարում։ Բայց դրա հետ միասին այդ գաղափարը նաև համամարդկային է, քանի որ ողջ աշխատավոր մարդկության շահերը համընկնում են պրոլետարիատի շահերի հետ և, պայքարելով պրոգրեսի գաղափարի իրականացման համար, պրոլետարիատը գործի է վերածում այն, ինչին ձգտում են աշխատավոր մարդիկ ամենուրեք։

Ըստ մարքսիստների պրոգրեսի ժամանակ հինը միանգամից չի անհետանում, և ոչ էլ նորն է հանկարծակի հայտնվում։ Դրա համար անհրաժեշտ է, որ զարգացման ընթացքում հինը սպառի իրեն, իսկ նորն էլ հնի ընդերքում հասունանա և ինքնուրույն կյանքի համար դառնա ընդունակ։ Այդ շրջանը ինչ-

պես հնի, այնպես էլ նորի քանակական փոփոխությունների շրջանն է։ Հնի, ասենք, օրինակ, կապիտալիզմի քանակական փոփոխությունն արտահայտվում է նրա կենսունակ ուժերի լիակատար դրսևորման և սպառման մեջ, որի հետևանքով նա դադարում է հասարակության առաջմղիչ ուժ լինելուց։ Նորի, ասենք, օրինակ, կապիտալիզմի ընդերքում սոցիալիստական ռևոլյուցիայի ուժերի քանակական փոփոխումը հանդես է գալիս այդ ուժերի ծավալման, մեծացման և, առհասարակ, հասունացման մեջ, հին կարգերին վերջ տալու և նորն ստեղծելու համար։ Այսպիսով, քանակական փոփոխությունը երկկողմանի, ուստի հակասություններով լի մի պրոցես է, որը ավարտվում է թռիչքով հնից դեպի նորը։

Ոչ մի պրոգրես առանց քանակական անհրաժեշտ փոփոխությունների տեղի ունենալ չի կարող, որովհետև ոչ մի նոր բան հանպատրաստից գոյություն չունի։ Բայց միաժամանակ իրական պրոգրեսը քանակական փոփոխություններին հանգեցնելն անհնար է, որովհետև դա դեռևս նորի առաջացում չէ, որը հիմնականն է ամեն մի պրոգրեսի մեջ։ Ուստի, պրոգրեսը քանակական ու որակական փոփոխությունների դիալեկտիկական միասնության արդյունք է։

Մարքսը «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» իր աշխատության նշանավոր առաջաբանում տալիս է պրոգրեսի ամբողջական պատկերը։ Նա գտնում է, որ ձեռնամուխ լինելով հասարակության ուսումնասիրությանը, մենք պետք է սկսենք նրա կեցությունից, որը և պայմանավորում է ամեն մի այլ փոփոխություն մարդկության կյանքում։ Հասարակական կեցության բնույթը որոշվում է արտադրաեղանակով, որը արտադրահարաբերությունների և արտադրողական ուժերի միասնություն է։ Այդ միասնության մեջ վճռողը վերջիններն են, որոնց զարգացման աստիճանի համապատասխան առաջանում են նաև արտադրական հարաբերությունները։ Այդ հարաբերությունների ամբողջությունը տալիս է տնտեսական բազիս, որը և պայմանավորում է հասարակության քաղաքական և իդեոլոգիական ձևերի բնույթն ու փոփոխումները։ Երբ արտադրողական ուժերի զարգացումը դեմ է առնում արտադրական հարաբերությունների կոնսերվատիվ ձևերին, նրանց միջև ընդհարումներ են տեղի ունենում, որոնց ընթացքով ու բնույթով որոշվում է ինչպես հին, այնպես էլ նոր տնտեսական սիստեմների բախտը. հինը կործանվում է, նրա տեղը նորն է առաջանում, և ըստ այնմ էլ փոփոխվում են նրա վերնաշենքային ձևերը։ Ահա այդ կոնֆլիկտները կամ ռևոլյուցիաները պրոգրեսի համար վճռական նշանակություն ունեն։

Ռևոլյուցիան կամ թռիչքը շարժման մի ձև է, ուստի դա օբյեկտիվ ռեալականություն է, որքան որ շարժումը որպես մատերիայի ատրիբուտ, օբյեկտիվ է։ Թռիչքը նյութական, ինչպես նաև հոգեկան աշխարհի օրինաչափ պրոցես է։ Առհասարակ մատերիան փոփոխվում է օրինաչափորեն, անցում կատարելով ստորին վիճակից դեպի բարձրը, պարզից դեպի բարդը, ուստի նրա շարժման ձևերը պատահական լինել չեն կարող։ Բոլոր թռիչքներն էլ հանդիսանում են քանակական կուտակումների անխուսափելի հետևանք և աստիճանական փոփոխումների ընդհատումներ են նույնիսկ այն ժամանակ, երբ դրանք պայթյունի բնույթ չունեն։ Օրինակ, անցումը սոցիալիզմից դեպի կոմունիզմ թռիչք է, բայց ոչ պայթյուն։ Նույնը կարելի է ասել նաև կենդանու կամ բույսի մի տեսակից մեկ ուրիշ տեսակի անցնելու մասին։ Ուրեմն, թռիչքները



տարբեր տեսակի են լինում, բայց բոլոր դեպքերում էլ հինը փոխարինվում է նորով։ Թռիչքը հնի բացարձակ ու մերկ ժխտումը չէ, այլ դրա դիալեկտիկական հաղթահարումը, երբ առաջացած նորն իր մեջ պահպանում է հնից այն ամենը, ինչ որ դրական է։ Օրինակ, սոցիալիզմը՝ լինելով կապիտալիզմի բացասումը, միաժամանակ նրանից ժառանգեց նախորդ հասարակությունների համեմատությամբ բարձր մակարդակի հասած արտադրողական ուժերը, գիտությունները և այլն, որոնք նրա հետագա զարգացման [illegible]ր ատաղձ հանդիսացան։ Թռիչքը շարժման ընդհանուր պրոցեսի առաջ[illegible]ացած արգելքների վերացումն է, միջոց այն անվերջ դարձնելու համար. դա մի կողմից հնի ավարտն է, մյուս կողմից՝ նորի հիմնումը, նոր պրոցեսի սկզբնավորումը։ Իր բնույթով թռիչքը միշտ էլ պատմականորեն կոնկրետ է, թռիչք առհասարակ գոյություն չունի, բայց նրա հիշատակված հատկանիշները հանդես են գալիս բոլոր դեպքերում՝ ինչպես կապիտալիստական, այնպես էլ սոցիալիստական-կոմունիստական հասարակությունների մեջ։

Հաճախ հարց են տալիս՝ եթե հասարակության պրոգրեսը արտահայտվել է այն բանում, որ մարդկությունը տնտեսական մի ֆորմացիայից անցում է կատարել մեկ այլ ֆորմացիայի՝ նախնադարյան հասարակությունից ստրկության, ստրկությունից՝ ֆեոդալիզմին, ֆեոդալիզմից՝ կապիտալիզմին, իսկ այս վերջինից էլ սոցիալիզմին, արդյոք սոցիալիզմ-կոմունիզմն էլ մեկ այլ ֆորմացիայով փոխարինվել չի՞ կարող. եթե ոչ, ապա այդ դեպքում դա չի՞ հակասի արդյոք դիալեկտիկական զարգացման սկզբունքին։ Ո՛չ։ Կոմունիզմն իր հակադրությանը վերածվել չի կարող և դա բնավ էլ չի հակասում դիալեկտիկայի սկզբունքին։

Մարդկային հասարակության առաջին տնտեսաձևը՝ նախնադարյան կոմունիզմը, հիմնված էր արտադրողական ուժերի անչափ ցածր մակարդակի վրա, որտեղ չկար մասնավոր սեփականություն, հավելյալ պրոդուկտի կամ արժեքի արտադրությունը։ Արտադրության միջոցները պատկանում էին բոլորին։ Զարգացումը հանգեցրեց այն բանին, որ մի մարդը հնարավորություն ունեցավ արտադրել ավելի, քան դա անհրաժեշտ էր նրա անձնական կարիքները հոգալու համար։ Այս հանգամանքը պատճառ դարձավ այն բանի, որ հանրային սեփականությունը փոխարինվեց մասնավոր սեփականատիրությամբ, առաջացան դասակարգեր, մարդկությունը բաժանվեց շահագործվողների և շահագործողների, հետզհետե արտադրողները սեփականազրկվեցին հօգուտ չարտադրողների, որն իր գագաթնակետին հասավ կապիտալիզմի օրոք։ Քանի սեփականատիրության այս ձևերի փոփոխումը դեռ չէր հանգեցրել արդի խոշոր արդյունաբերության առաջացմանը, մասնավոր սեփականությունը կատարում էր դրական դեր։ Ստրկատիրության առաջացումը, սրա փոխարինումը ֆեոդալիզմով և բուրժուական կարգերի հաստատումը արտադրողական ուժերի և, ընդհանրապես, հասարակության բուռն վերելքը եղավ ու միաժամանակ մասնավոր սեփականության զարգացման բոլոր պոտենցիալ հնարավորությունների սպառումը, որն արտահայտվեց մարդկության բացարձակ մեծամասնության սեփականազրկման մեջ։ Այս հանգամանքը հասարակական սուր կոնֆլիկտների առաջացման պատճառ հանդիսացավ։ Այդ բախումների հետևանքով կապիտալիստական հասարակության հետագա պրոգրեսը դարձել է անհնար։

Սոցիալիզմ-կոմունիզմն այս հակասությունների լուծումն է, դասակար-







գային սեփականատիրության, ուստի և մարդու մարդու միջոցով շահագոր-
ծելու բոլոր հնարավորությունների ոչնչացումը. այսինքն՝ արտադրության
հանրային բնույթի և սպառման մասնատիրական ձևի միջև եղած հակասու-
թյան վերացման միջոցով բոլոր արտադրողների սեփականատիրական իրա-
վունքի հաստատումը։

Կոմունիստներին մեղադրում են այն բանում, թե իբր նրանք ցանկանում
են վերջ տալ սեփականատիրությանը, խլելով մարդկանցից նրանց ունեցված-
քը։ Դա չարամիտ հերյուրանք է կոմունիստների հասցեին։ «Քաղաքացիական
կռիվները Ֆրանսիայում» (1871 թ.) աշխատության մեջ Մարքսն ասում է, որ
Փարիզյան Կոմունայի նպատակն էր «...ոչնչացնել դասակարգային սեփա-
կանությունը, որը շատերի աշխատանքը վեր է ածում հարստության քչերի
համար։ Նա ցանկանում էր էքսպրոպրիատորներին էքսպրոպրիացիայի ենթար-
կել։ Նա ցանկանում էր անհատական սեփականությունը դարձնել ճշմարտու-
թյուն, արտադրության միջոցները, հողն ու կապիտալը, որոնք ներկայումս
ամենից առաջ աշխատանքի ստրկացման ու շահագործման գործիքներն են,
վերածելով ազատ զուգորդված աշխատանքի պարզ գործիքների» (ընդգծումը
մերն է Հ. Գ.)։

Կոմունիստներն այսօր ուրիշ իդեալ չունեն, քան այն, ինչ որ ցանկանում
էին փարիզյան կոմունարները. նրանք իրականացնում են այն, ինչ որ չկարո-
ղացան անել կոմունարները, այսինքն՝ «անհատական սեփականատիրությունը
դարձնել ճշմարտություն», վերջ տալով «դասակարգային սեփականատիրու-
թյանը»։ Կոմունիզմը կլինի այդ սկզբունքի լիակատար հաղթանակը, ուստի
դասակարգային հասարակության հետ կապված բոլոր տեսակի երևույթների
իսպառ վերացումը։

Դասակարգային սեփականատիրությունն այսօր դարձել է հասարակու-
թյան համար մեծագույն չարիք։ Սոցիալիզմի կառուցման փորձը անհերքե-
լիորեն ապացուցել է, որ արտադրության բոլոր միջոցներն արտադրողների
տրամադրության տակ դնելու դեպքում միայն հնարավոր է ապահովել հա-
սարակության մշտական առաջընթացը։ Ուստի, կոմունիզմից շրջադարձ դեպի
մասնավոր սեփականատիրական որևէ հասարակարգ, բացառված է։ Իր բոլոր
տեսակի կորագծերով հանդերձ մարդկության պատմությունը գնացել է դեպի
վեր, իսկ դասակարգային սեփականատիրության վերականգնումը կլինի շըր-
ջադարձ դեպի ետ, ստեղծված բարձր քաղաքակրթության կործանման գնով։
Հնարավո՞ր է արդյոք նման մի շրջադարձ։ Անշուշտ, ոչ։

Դասակարգային սեփականատիրությանը վերադառնալու հնարավորու-
թյունը վերացվում է նաև այն պատճառով, որ կոմունիզմի համեմատությամբ
դա արտադրության ավելի ցածր աստիճան է։ Այդ պատճառով էլ, որպեսզի
դասակարգային սեփականատիրությունը նորից վերականգնվի, պետք է որ
կոմունիզմի շրջանի արտադրողական ուժերը նորից ետ գնան, որ ասենք,
օրինակ, ատոմային էներգիայի լայն օգտագործումը նորից փոխարինվի գո-
լորշու էներգիայի օգտագործմամբ, որ արտադրության լիակատար ավտոմա-
տացմանը, տելեմեքենայացմանը կամ էլեկտրիֆիկացիային վերջ տրվի։ Իսկ
դա անհնար է. երբեք մարդն իր նվաճած ուժերի օգտագործումից չի հրա-
ժարվի։

Բայց կհարցնեն՝ իսկ չի՞ կարող արդյոք կոմունիզմը ոչ թե դասակարգա-



յին, այլ մեկ ուրիշ կարգի սեփականատիրական հարաբերությունների վրա
հիմնված հասարակությամբ փոխարինվել։ Այդ հնարավորությունը ևս բացառ-
ված է, որովհետև պատմության մեջ եղել են և կան միայն երկու կարգի՝
հանրային և դասակարգային սեփականատիրության ձևեր։ Իրերի պատմական
ընթացքը տանում է դեպի դասակարգային սեփականության վերացումը։ Աշ-
խարհի 1/4 մասում այդ բանն արդեն իրականություն է դարձել, դրա փոխա-
րեն հաստատելով հանրային սեփականատիրություն, որը սոցիալիզմի-կոմու-
նիզմի հիմքն է։ Ուստի, կոմունիզմի զարգացումը երբեք իր հակադրությանը
վերածվել չի կարող, ընդհակառակը, դա իր հիմքի ու վերջինով պայմանա-
վորված երևույթների անվերջ զարգացում է։

Ինչպե՞ս կարող է զարգացումը անվերջ լինել, երբ կոմունիզմն իր հակա-
դրությանը չի վերածվելու, կարող է նկատել ամեն ոք։ Բայց մի՞թե զարգա-
ցումը բոլոր դեպքերում և բոլոր պայմաններում էլ նշանակում է եղածի լիա-
կատար ու բացարձակ ժխտում։ Ըստ մարքսիզմ-լենինիզմի նորի առաջացու-
մը երբեք հնի բացարձակ ժխտումը լինել չի կարող, որովհետև նորն առաջա-
նում է հնի ընդերքում և բարձրանում է հնի ուսերի վրա, ինչպես այդ պատ-
կերավոր կերպով ասում է Մարքսը։ Հետևաբար, հնի բացարձակ ժխտման
մասին խոսք լինել չի կարող, դա մետաֆիզիկական հարցադրում է։ Զարգա-
ցումը հնի փոխարինումն է նորով, պահպանելով հնից այն ամենը, ինչ որ
դրական է և արժեքավոր։ Բայց հնի փոխարինումն էլ նորով տարբեր բնա-
գավառներում և զարգացող երևույթների տարբեր շրջաններում տարբեր ձևե-
րով է տեղի ունենում։ Օրինակ, մարդու առաջացումը կապկանման կենդանուց
եղավ հնի՝ այդ կենդանու բացասումը նորով՝ մարդով։ Մոտ մեկ միլիոն տարի
է, ինչ մարդը գոյություն ունի, զարգանում է, վայրենությունից հասել է այ-
օրվա քաղաքակրթությանը, այսինքն՝ շարունակ հինը բացասվել է նորով,
բայց և ոչ մի նշան չկա ասելու, թե մարդը կարող է երբևէ նորից կապկի վեր-
ածվել։ Եվ դա հասկանալի է. զարգացման հետևանքով բարձր օրգանիզմը եր-
բեք ցածրի վերածվել չի կարող, որովհետև զարգացումը վերընթաց և ոչ թե
վարընթաց շարժում է։

Զարգացման հետևանքով բույսերը ոչ բույսերի, կենդանիները ոչ կենդա-
նիների չեն վերածվում, այլ անվերջ կատարելագործվում են թե՛ ձևով, թե՛
բովանդակությամբ, առաջանում են նոր բույսեր ու նոր կենդանիներ։ Ուրեմն,
բոլոր դեպքերում չէ, որ զարգացող երևույթը կամ առարկան իր բացարձակ
հակադրությանն է վերածվում։ Նույնը կարելի է ասել նաև կոմունիզմի զար-
գացման մասին, որը վերընթաց շարժում լինելով չի կարող ոչ կոմունիզմին
հանգել։

«Փիլիսոփայական տետրակներ»-ում Լենինը մարդկային մտքի զարգա-
ցումը չի դիտում որպես մի պրոցես, որը երբևէ հանգեցնելու է այդ մտքի բա-
ցասմանը, ընդհակառակը, դրա մեջ նա տեսնում է սպիրալաձման մի շար-
ժում, որի ընթացքում եղածի սկզբունքային ժխտման փոխարեն տեղի է ունե-
նում սպիրալների անվերջ շատացում։ Բանն այն է, որ զարգացումը եղածի
սկզբունքային ժխտման է վերածվում, երբ փոփոխվող բովանդակության համ-
ընթաց ձևը չի փոխվում, որի հետևանքով ձևի և բովանդակության միջև ան-
տագոնիստական բնույթի հակասություն է առաջանում, պահանջելով հին ձևը
պայթեցնել, որպեսզի նոր բովանդակությունը կարողանա առաջ գնալ։ Այդպես
է եղել ստրկատիրությունից ֆեոդալիզմին, ֆեոդալիզմից կապիտալիզմին և

այս վերջինից էլ սոցիալիզմին անցնելիս։ Բայց երբ զարգացումն ընթանում է այնպես, որ բովանդակության ամեն մի կատարելագործման հետ միասին համապատասխանորեն փոխվում է նաև ձևը, վերացնելով բովանդակության առաջընթացն արգելակող բոլոր տեսակի պատնեշները, այդ դեպքում հին ձևի պայթեցումը դառնում է անիմաստ և զարգացումը վեր է ածվում գոյություն ունեցող առաջավոր ուժերի անվերջ կատարելագործման, նոր բովանդակության համապատասխան նոր ձևերի առաջացման ճանապարհով։ Օրգանական աշխարհի զարգացումն այսօր այդ բնույթն ունի։ Կոմունիզմի զարգացումն էլ այդ կերպ կընթանա, դա ևս բազմաթիվ ձևեր կընդունի։ Կարծել, թե կոմունիզմը կլինի միապաղաղ, միշտ միևնույն ձևի մեջ պարփակված, սխալ է։

Ամեն տեսակի արհեստական կապանքներից ազատագրված արտադրողական ուժերն իրենց պրոգրեսի ընթացքում անհրաժեշտորեն մարդկային հարաբերությունների բազմաթիվ ձևերի առաջացման ու փոխադարձ փոխանցման հիմք կհանդիսանան։ Սակայն այդ պրոցեսի ընթացքում հին ձևերի փոխարինումը նորերով չի լինելու կոմունիստական հարաբերությունների փոխարինումը ոչ կոմունիստականով։ Դեռ «Փիլիսոփայության աղքատության» մեջ Մարքսն ասել է. «Երբ դասակարգերն ու դասակարգային անտագոնիզմը այլևս չի լինելու, սոցիալական էվոլյուցիաները դադարելու են քաղաքական ռևոլյուցիաներ լինելուց», այսինքն՝ ստեղծված կոմունիստական կարգերը պահպանվելու են՝ ենթարկվելով անվերջ կատարելագործման, ստեղծելով ոչնչով չաղճատված դիալեկտիկական մի պրոցես։

Ասածներից հետևում է, որ օբյեկտիվ իրականության զարգացման համար մեկընդմիշտ սահմանված ձևեր գոյություն չունեն. ամեն մի երևույթ իր հասունացման տարբեր շրջաններում զարգացման տարբեր ձևեր է ունենում։ Ուստի, եթե իր պրոգրեսի ընթացքում կապիտալիզմը անպայման պիտի փոխարինվեր և փոխարինվելու է սոցիալիզմով-կոմունիզմով, դրանից բոլորովին չի հետևում, որ կոմունիզմն էլ իր հակադրությանը պիտի վերածվի։

Կոմունիզմը մարդկային հասարակության ամենաբարձր ձևն է, որտեղ արտադրողական ուժերը և արտադրահարաբերություններն այնպես են համընկնելու, որ մեկի փոփոխությունը համապատասխանորեն անդրադառնալու է նաև մյուսի վրա, որ արտադրողական ուժերի յուրաքանչյուր աճն առաջացնելու է արտադրահարաբերությունների նոր կատարելագործում, արտադրաուժերի վերելքի համար նոր հորիզոններ ստեղծելով։ Այդ երևույթը սոցիալիստական լագերի երկրներում արդեն տեղի ունի, իսկ կոմունիզմի ժամանակ ավելի է կատարելագործվելու, դրանով արդեն ժխտելով կոմունիզմի բացասման հնարավորությունը և միաժամանակ հասարակական պրոգրեսը դարձնելով անվերջ ինչպես ժամանակի, այնպես էլ տարածության մեջ։

Սա է ահա պրոգրեսի գաղափարի մարքսիստական ըմբռնումը։

---

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Պ. ԻՍԱԵՎԱ*

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի էությունը վառ արտահայտված է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք» անմահ լոզունգում։ Ավելի քան հարյուր տարի միջազգային պրոլետարիատը պայքարում է այդ լոզունգով, հասնելով նորանոր հաջողությունների։ Ընդ որում, որքան ընդարձակվում է դասակարգային պայքարի ճակատը, և աճում են ռևոլյուցիոն բանվորական ու կոմունիստական շարժման հաջողությունները, այնքան ավելի է ուժեղանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դերը։

Վ. Ի. Լենինը՝ կոմունիզմի հանճարեղ տեսաբանը և համաշխարհային պրոլետարիատի առաջնորդը, Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության ստեղծողը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի տեսական հիմնավորման և կենսագործման ուղղությամբ հսկայական աշխատանք է կատարել։ Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ դասակարգային հակասությունները ծայրահեղորեն սրվեցին, և պրոլետարական ռևոլյուցիան անմիջական պրակտիկայի հարց դարձավ, նա ստեղծագործաբար զարգացրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը և այն կիրառեց ազգային հարցի լուծման բնագավառում և աշխարհի առաջին սոցիալիստական պետության միջազգային հարաբերություններում։

Վ. Ի. Լենինը նշել է, թե քանի որ կապիտալի տիրապետությունը միջազգային է, ապա պայքարը նրա դեմ կարող է հաջող լինել միայն բոլոր երկրների բանվորների միասնական ճակատ կազմակերպելու դեպքում. բուրժուազիայի միջազգային միությանը կարող է դիմակայել միայն բանվորների և բոլոր աշխատավորների միջազգային միությունը, նրանց միջազգային եղբայրությունը։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմքն են կազմում ամբողջ աշխարհի պրոլետարների տնտեսական ու քաղաքական ընդհանուր շահերը, որոնք պայմանավորված են բուրժուական հասարակության մեջ նրանց միանման դրությամբ։ «Ահա թե ինչու կապիտալիստների դասակարգի դեմ մղած պայքարում ռուսական բանվորի ընկերն է թե՛ գերմանացի բանվորը, թե՛ լեհ բանվորը, թե՛ ֆրանսիացի բանվորը, ճիշտ այնպես, ինչպես նրա թշնամին են թե՛ ռուսական, թե՛ լեհական, թե՛ ֆրանսիական կապիտալիստները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 2, էջ 125)։ Հենց բանվոր դասակարգի ընդհանուր շահերն ու նպատակներն էլ որոշում են աշխատավորների դասակարգային հա-

*մերաշխության ամրապնդման կենսական անհրաժեշտությունը ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մասշտաբով:*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմը ուղղակի հակադրությունն է բուրժուական նացիոնալիզմի, որը շահագործող դասակարգերի ռեակցիոն իդեոլոգիան է: Բուրժուական նացիոնալիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ընդգծել է Վ. Ի. Լենինը, հանդիսանում են երկու անհաշտ-թշնամական սկզբունքներ, արտահայտում են երկու աշխարհայացք ազգային հարցում:*

*Անհաշտ պայքար մղելով բուրժուական նացիոնալիզմի բոլոր արտահայտությունների դեմ՝ Վ. Ի. Լենինը պրոլետարական կազմակերպությունների (քաղաքական, պրոֆեսիոնալ, լուսավորական և այլն) գործունեության և կառուցվածքի հարցերում պաշտպանում էր ինտերնացիոնալիզմի սկզբունքը: Նա մշակեց Կոմունիստական պարտիայի ազգային հարցի գիտականորեն հիմնավորված տեսությունն ու ծրագիրը, որի հիմնական պահանջն է ազգերի ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև պետական անջատում: Այդ պահանջը քննարկելով բանվորների դասակարգային պայքարի տեսակետից, համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիան մոտեցնելու տեսակետից, Վ. Ի. Լենինը նշում է, որ անհրաժեշտ է ազգերի քաղաքական ինքնորոշման իրավունքի հարցը ճշտորեն սահմանազատել այս կամ այն առանձին ազգի անջատման նպատակահարմարության հարցից:*

*Կոմունիստական պարտիայի ազգային ծրագրի կարևորագույն պահանջն է ազգային իրավահավասարության պահանջը, որը նախատեսում է ազգերից որևէ մեկի ամեն տեսակի արտոնությունների կամ սահմանափակումների վերացում, ազգային որևէ բացառիկության վերացում և բոլոր ժողովուրդների լիակատար իրավահավասարության հաստատում՝ նրանց քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքում: Պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը, ասում էր Վ. Ի. Լենինը, ոչ մի բան այնպես չի դանդաղեցնում, ինչպես ազգային անարդարությունը:*

*Լենինյան ազգային ծրագիրը նպատակ է ունեցել Ռուսաստանի ճնշող ազգի պրոլետարիատի և ճնշված ժողովուրդների միասնական ռևոլյուցիոն ճակատ ստեղծել նրանց ընդհանուր թշնամիների՝ ցարիզմի, կալվածատերերի և կապիտալիստների տապալման համար մղվող պայքարում:*

*Այս ծրագրի հիման վրա ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատներն ինտերնացիոնալիզմի ոգով էին դաստիարակում բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին: Ընդ որում այդ դաստիարակությունը ճնշող և ճնշված ազգերի աշխատավորների մեջ միանման լինել չէր կարող: Այդ տեսակետից մեծ նշանակություն ուներ և այժմ էլ ունի Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ ճնշող ազգերի մարքսիստներն ամենից առաջ պետք է պահանջեն ճնշված ժողովուրդների անջատման ազատություն, իսկ ճնշված ազգերի մարքսիստները՝ միավորման ազատություն. «... այլ ուղի դեպի ինտերնացիոնալիզմը և ազգերի միաձուլումը, տվյալ դրությունից դեպի այդ նպատակն այլ ուղի չկա և չի կարող լինել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 468):*

*Բանվոր դասակարգի ինտերնացիոնալ միավորման համար մղվող պայքարում հսկայական նշանակություն ունեցավ այն, որ Լենինը գաղափարապես ջախջախեց «ազգային-կուլտուրական ավտոնոմիայի» ռեակցիոն, օպորտունիստական ծրագիրը, որ առաջ էին քաշել «ավստրոմարքսիստները» և որը Ռուսաստանում փոխ էին առել բունդականները, լիկվիդատորները, կովկաս-*



*յան մենշևիկները: Այդ ծրագիրը, որի էությունը* «դպրոցական գործն ըստ ազգությունների բաժանելն է», *նշանակում էր նացիոնալիզմի ամենանրբին, ուստի և ամենավնասակար տեսակ, բանվորների ենթարկում բուրժուական կուլտուրային, բուրժուական նացիոնալիզմի և կղերականության իդեոլոգիային:*

*Մերկացնելով «ազգային կուլտուրա» լոզունգի բուրժուա-նացիոնալիստական բովանդակությունը՝ Վ. Ի. Լենինը նշում էր, որ կապիտալիստական հասարակության մեջ չկա և չի կարող լինել ապադասակարգային, ազգային կուլտուրա, որ ամեն մի ազգային կուլտուրայի մեջ տիրապետող բուրժուական-կալվածատիրական կուլտուրայի կողքին գոյություն ունեն դեմոկրատական և սոցիալիստական կուլտուրայի տարրեր: «Կա երկու ազգ ժամանակակից յուրաքանչյուր ազգի մեջ...,—գրել է նա:—Կա երկու ազգային կուլտուրա յուրաքանչյուր ազգային կուլտուրայի մեջ: Կա Պուրիշկևիչների, Գուչկովների և Ստրուվեների վելիկոռուսական կուլտուրա,—բայց և կա վելիկոռուսական կուլտուրա, որը բնորոշվում է Չերնիշևսկու և Պլեխանովի անուններով» (Երկեր, հատ. 20, էջ 20): Դրա համար էլ պրոլետարիատի և աշխատավոր մասսաների լոզունգը ոչ թե ազգային կուլտուրան է, այլ՝ «դեմոկրատիզմի և համաշխարհային բանվորական շարժման ինտերնացիոնալ կուլտուրան» (Երկեր, հատ. 20, էջ 6), որը պարունակում է ամեն մի ազգային կուլտուրայի բացառապես հետևողական-դեմոկրատական և սոցիալիստական բովանդակություն, որն ուղղված է յուրաքանչյուր ազգի բուրժուական կուլտուրայի, բուրժուական նացիոնալիզմի դեմ:*

*Վ. Ի. Լենինի պայքարը պրոլետարական ինտերնացիոնալիզմի համար առանձնապես մեծ թափով ծավալվեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ միջազգային պրոլետարիատը պառակտվել էր II Ինտերնացիոնալի լիդերների դավաճանության պատճառով, որոնք սոցիալ-շովինիզմի դիրքերն անցնելով, հայրենիքի պաշտպանության լոզունգով սկսեցին պատերազմող երկրների բանվորներին լարել իրար դեմ: Միայն բոլշևիկյան պարտիան, որին գլխավորում էր Վ. Ի. Լենինը, հավատարիմ մնաց սոցիալիզմի ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի գործին, բոլոր երկրների բանվորների եղբայրական դաշինքի գործին:*

*Պատերազմի տարիներին Լենինը հիմնավորեց այն կարևորագույն դրույթը, որ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ խնդիրները չեն հակասում նրա իսկական ազգային շահերին, այլ ինտերնացիոնալ պարտքը լիովին համընկնում է նրա իսկական հայրենասիրության հետ:*

*Մերկացնելով իմպերիալիստական պատերազմում բուրժուական հայրենիքը պաշտպանելու սոցիալ-շովինիստական լոզունգը և բացահայտելով ռևոլյուցիոն բանվոր դասակարգի հայրենասիրության էությունը՝ Վ. Ի. Լենինը իր «Վելիկոռուսների ազգային հպարտության մասին» նշանավոր հոդվածում գրել է, որ ռուս գիտակից պրոլետարները հպարտանում են նրանով, որ իրենց ազգը աշխարհին տվել է Ռադիշչև, դեկաբրիստներ, 70-ական թվականների ռևոլյուցիոներ-ռազնոչինեցներ, որ վելիկոռուսական բանվոր դասակարգը ստեղծել է մասսաների հզոր ռևոլյուցիոն պարտիա: Ռուս գիտակից պրոլետարները սիրում են իրենց լեզուն, իրենց Հայրենիքը և ջանք են թափում, որ նրա աշխատավոր մասսաներին ազատեն ցարիզմից, կալվածատերերից ու բուրժուազիայից: Ուստի և «վելիկոռուսները չեն կարող «Հայրենիքը պաշտ-*

պանել» այլ կերպ, քան ցարիզմին պարտություն ցանկանալով ամեն մի պատերազմում...», պարտություն, որը կարագացներ նրա տապալումը։ Եվ ապա՝ «վելիկոռուսների ազգային հպարտության շահը (ծառայամտորեն չհասկացված) զուգադիպում է վելիկոռուս (և բոլոր այլ) պրոլետարների սոցիալիստական շահին» (Երկեր, հատ. 21, էջ 122)։

Վ. Ի. Լենինի գլխավորությամբ բոլշևիկների հետևողական պայքարը սոցիալ-շովինիզմի դեմ, պրոլետարական ինտերնացիոնալիզմի համար՝ նպաստեց համաշխարհային շարժման մեջ եղած ձախ, ինտերնացիոնալիստական տարրերի առանձնացմանն ու համախմբմանը, որոնցից հետագայում առաջացան կոմունիստական պարտիաները և ստեղծվեց III Կոմունիստական Ինտերնացիոնալը։

1917 թվականին Հոկտեմբերի հաղթանակով պրոլետարական ինտերնացիոնալիզմը դարձավ Սովետական պետության քաղաքականության գլխավոր սկզբունքներից մեկը։ Մեր պետությունն իրենից կախված ամեն տեսակ աջակցություն ցույց էր տալիս արտասահմանյան երկրների աշխատավորներին և ինքն էլ հենվում էր նրանց աջակցության վրա։

Միջազգային պրոլետարիատի դասակարգային համերաշխությունը ռուս բանվորների հետ ցայտուն կերպով արտահայտվեց 1918—1920 թվականների օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակ՝ Սովետական ռեսպուբլիկան պաշտպանելու գործում։ Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը հասկանում էր, որ Սովետական պետության կործանումը կամ թուլացումը կխափաներ միջազգային ամբողջ ռևոլյուցիոն շարժման զարգացումը։

Առաջին համաշխարհային պատերազմում, Գերմանիայի պարտությունից հետո, Անտանտան ցանկանում էր իր զորքերով խեղդել Սովետական Ռուսաստանը. «Եթե նա,—ասում էր Լենինը,—կարողանար այդ զորքերի թեկուզ հենց մեկ տասներորդ մասը շարժել» մեր երկրի դեմ, մենք չէինք կարող դիմանալ։ Բայց ավերված, թույլ ու հետամնաց Սովետական Ռուսաստանը հաղթեց մասնավորապես նրա համար, որ պատերազմում բոլոր երկրների իմպերիալիստների դեմ նրա դաշնակիցներն էին հենց այդ երկրների բանվորներն ու աշխատավորները։

Անգլիայի, Ֆրանսիայի և մյուս երկրների բանվորները հրաժարվում էին ռազմական հանդերձանք բարձել ինտերվենտների ու սպիտակգվարդիականների համար, «Ձեռքներդ հեռո՛ւ Սովետական Ռուսաստանից» լոզունգով գործադուլներ, բողոքի ցույցեր կազմակերպելով ինտերվենցիայի դեմ։

Միջազգային պրոլետարիատը ոչ միայն բարոյական ու քաղաքական աջակցություն էր ցույց տալիս Սովետական պետությանը, այլև՝ անմիջական ռազմական օգնություն։ Կարմիր Բանակի շարքերում կռվում էին ինտերնացիոնալ զորամասեր, որոնք կազմված էին չինական, հունգարական, լեհական, հարավսլավական, չեխոսլովակյան, ռումինական, բուլղարական բանվորներից ու գյուղացիներից և այլ երկրների աշխատավորներից, որոնք այն ժամանակ գտնվում էին Սովետական Ռուսաստանում։

Ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքն իր ցայտուն մարմնացումը գտավ բազմազգ սովետական պետության ստեղծման և ամրապնդման գործում, որը հիմնված է ազատ ու իրավահավասար ժողովուրդների փոխադարձ վստահության, հարգանքի և սերտ համագործակցության վրա։



Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտումից հետո սովետական ռեսպուբլիկաների ընդհանուր կենսական շահերը պահանջեցին միավորվել մեկ միասնական միութենական պետության մեջ։ Այդպիսի միավորումը թելադրված էր ինչպես ներքին, այնպես էլ արտաքին օբյեկտիվ գործոններով՝ ժողովրդական տնտեսության վերականգնման ու սոցիալիստական շինարարության գործոններ, ռազմական ու դիվանագիտական միավորում կապիտալիստական շրջապատի դեմ։ Միավորման անհրաժեշտությունը որոշում էր նաև Սովետական իշխանության բնույթը, որն ինտերնացիոնալ է իր դասակարգային էությամբ։

ՍՍՌ Միության կազմակերպիչն ու ոգեշնչողը եղավ Կոմունիստական պարտիան՝ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ։ Սովետական ռեսպուբլիկաների միավորման ճիշտ հիմունքներ մշակելու գործում մեծագույն երախտիքը պատկանում է Լենինին։

Վ. Ի. Լենինը խիստ քննադատեց սովետական ռեսպուբլիկաների ավտոնոմիզացիան, այսինքն՝ նրանց ավտոնոմիայի իրավունքներով ՌՍՖՍՌ-ի կազմի մեջ մտցնելու նախագիծը (որ պատրաստել էր ՌԿ(բ)Պ Կենտկոմի հանձնաժողովը Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ), առաջադրեց ՌՍՖՍՌ-ն և մյուս բոլոր սովետական ռեսպուբլիկաները լիակատար հավասարության և կամավորության իրավունքներով մեկ միասնական միութենական պետության մեջ միավորելու պլանը։ «Ազգությունների «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը» աշխատության մեջ Վ. Ի. Լենինը դատապարտել է ազգային քաղաքականության հարցերում Ի. Վ. Ստալինի շտապողականությունն ու վարչարարությամբ տարվելը, մեծապետական շովինիզմի դեմ պայքարի թերագնահատումը նրա կողմից և նշել է, թե անհրաժեշտ է, որ կոմունիստներն ուշադիր և հոգատար լինեն զանազան ազգերի առանձնահատկությունների, շահերի ու կարիքների հանդեպ, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման, զիջողամիտ լինեն դեպի այն ժողովուրդները, որոնց անցյալում ճնշել է ցարիզմը։

Ելնելով Վ. Ի. Լենինի ցուցումներից՝ պարտիան չսահմանափակվեց Ռուսաստանի ժողովուրդների իրավական հավասարություն սահմանելով։ Ծանրության կենտրոնը փոխադրեց այդ ժողովուրդների փաստական, այսինքն՝ տնտեսական ու կուլտուրական անհավասարությունը վերացնելու վրա։

Մեր երկրի բազմաթիվ ազգությունների փաստական անհավասարության վերացման ուղիներն ու մեթոդները սահմանվեցին պարտիայի X և XII համագումարների կողմից։ Այդ դժվարագույն, պատմության մեջ իր նմանը չունեցող խնդրի լուծման համար հարկավոր էր «ոչ-վելիկոռուս ժողովուրդների աշխատավոր մասսաներին օգնել՝ հասնելու առաջ անցած կենտրոնական Ռուսաստանին» («ՍՄԿՊ-ն բանաձևերում...», մաս I, էջ 713)։

Հավատարիմ լինելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքին՝ ռուսական բանվոր դասակարգը երկրի բոլոր ժողովուրդներին բազմակողմանի եղբայրական օգնություն ցույց տվեց՝ իրենց ազգային-սովետական պետականությունը ստեղծելու, կենտրոնական շրջաններից մեծ թվով ֆաբրիկաներ, գործարաններ, արդյունաբերական սարքավորում վերաբազավորելու, արդյունաբերական նոր օջախներ ստեղծելու, պարտիական, սովետական, տնտեսական ու կուլտուրական ազգային կադրեր աճեցնելու միջոցով։ Ռուսաստանյան ֆեդերացիայի՝ Անդրկովկասյան սովետական ռեսպուբլիկաներին ցույց տված հսկայական օգնությունն անգնահատելի է։

Նախկին տիրապետող ազգի բանվոր դասակարգի անշահախնդիր բազմակողմանի օգնությունն ազգային ծայրամասերի աշխատավորներին եղավ ժողովուրդների փաստական անհավասարության վերացման գլխավոր պայմանը, բազմազգ պետության մեջ պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման պարտադիր պայմանը: Երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական ռևոլյուցիայի բովում ավելի ամրացան մեր երկրի ժողովուրդների եղբայրական կապերը: Հայտնի է, որ Միջին Ասիայի, Սիբիրի, Պովոլժիեի, Կովկասի շատ ժողովուրդներ սոցիալիզմին անցան առանց կապիտալիզմ ապրելու, համախմբվեցին ուղղակի որպես սոցիալիստական ազգեր:

Սոցիալիզմի հաղթանակով ծաղկեց իրավահավասար սոցիալիստական ազգերի բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը: Այդ բարեկամությունը, որ հիմնված է տնտեսական ու քաղաքական նպատակների, իդեոլոգիայի ընդհանրության վրա, դարձավ սովետական հասարակության զարգացման շարժիչ ուժերից մեկը, բազմազգ պետության ամրապնդման ու հզորության աղբյուրներից մեկը:

Սոցիալիզմի հաղթանակի հիման վրա երկրում վերջնականապես ամրապնդվեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ սովետական հայրենասիրությունը, նոր, բարձր տիպի հայրենասիրությունը, որի մեջ իրենց Հայրենիքի նկատմամբ ունեցած աշխատավորների սերը միախառնվում է նրանց նվիրվածությանը հասարակական ու քաղաքական կարգերին, Կոմունիստական պարտիայի գործին:

Սովետական սոցիալիստական հայրենասիրությունը օրգանապես զուգակցվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետ՝ պրոլետարիատի ու բոլոր աշխատավորների ազգային ու ինտերնացիոնալ շահերի անքաժանելի միասնության հիման վրա: Ելնելով այդ շահերից՝ սովետական մարդիկ միշտ էլ խորապես գիտակցել ու գիտակցում են, որ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումը բոլոր երկրների աշխատավորների ընդհանուր գործն է, որ դա հայրենասիրական մեծ խնդրի և միաժամանակ իր ինտերնացիոնալ պարտքի իրականացումն է:

Սովետական ժողովուրդը հայրենասիրության և նրա հետ սերտորեն կապված ինտերնացիոնալիզմի ցայտուն օրինակ ցույց տվեց Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ, երբ նա ո՛չ միայն իր Հայրենիքն ազատեց գերմանա-ֆաշիստական զավթիչներից, այլև Եվրոպայի ու Ասիայի շատ ժողովուրդների փրկեց ֆաշիստական ստրկացումից:

Սոցիալիստական հայրենասիրության զուգակցումը ինտերնացիոնալիզմի հետ կազմում է ժողովուրդների եղբայրական բարեկամության ամրապնդման հիմքը ամեն մի սոցիալիստական երկրի ներսում, սոցիալիստական պետությունների, կոմունիստական ու բանվորական պարտիաների փոխհարաբերությունների հիմքը, մեր փոխհարաբերությունների հիմքը բոլոր երկրների աշխատավորների հետ:

ՍՄԿՊ-ն վճռականապես արմատախիլ է անում շովինիստական ու նացիոնալիստական արտահայտությունները: Այդպես վերացվեցին լենինյան ազգային քաղաքականության և ռևոլյուցիոն օրինականության կոպիտ աղավաղումները, որոնք անհատի պաշտամունքի ազդեցության տակ թույլ էին տրվել Հայրենական Մեծ պատերազմի տարիներին: Վերականգնվեց բալկար-



ների, չեչենների, ինգուշների, կարաչայների ու կալմիկների ազգային ավտոնոմիան, որով պայմաններ ստեղծվեցին սոցիալիստական ազգերի բարեկամական միասնության մեջ նրանց համակողմանի զարգացման համար:

Լենինյան ազգային քաղաքականության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գործնական իրականացման ճանապարհին մի նոր խոշոր քայլ հանդիսացավ այն, որ ՍՄԿՊ XX համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումների համաձայն միջոցներ ձեռնարկվեցին ընդարձակելու միութենական ռեսպուբլիկաների իրավունքները ժողովրդական տնտեսությունը ղեկավարելու գործում, կուլտուրական շինարարության, օրենսդրության, դատավարության բնագավառներում: Այս տեսակետից առանձնապես մեծ նշանակություն ունեցան արդյունաբերության ու շինարարության ղեկավարման վերակառուցումը, տնտեսության ղեկավարման նոր ձևերին անցնելը ժողտնտխորհների միջոցով, որոնք կազմակերպվեցին երկրի տնտեսական վարչական շրջաններում: Եթե 1953 թվականին միութենական ռեսպուբլիկաների իրավասության տակ գտնվող արդյունաբերությունը տալիս էր երկրի ամբողջ արդյունաբերական արտադրանքի 31 տոկոսը, ապա այժմ տալիս է 94 տոկոսը: ՍՄԿՊ XX համագումարի առաջարկությամբ ստեղծվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի տնտեսական հանձնաժողով, որը կոչված է ապահովելու ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական շինարարության հարցերի ճիշտ լուծումը, հաշվի առնելով նրանց առանձնահատկությունները, ամբողջ համամիութենական պետության կարիքներն ու շահերը:

Իր ազգային քաղաքականության մեջ կոմունիստական պարտիան ելել և ելնում է լենինյան այն դրույթից, որ սոցիալիզմը ո՛չ միայն չի վերացնում ազգային տարբերություններն ու առանձնահատկությունները, այլ, ընդհակառակն, ապահովում է բոլոր ազգերի ու ժողովուրդների համակողմանի զարգացումը:

Սովետական իշխանության տարիներին մեր երկրում տեղի է ունեցել իսկական կուլտուրական ռևոլյուցիա, բոլոր միութենական ռեսպուբլիկաներում աճել են բանվոր դասակարգի և ինտելիգենցիայի ազգային կադրեր, զարգացել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա:

Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաների, ինչպես և բոլոր սովետական ռեսպուբլիկաների հաջողությունները ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարների հաղթանակն են: Այդ բարեկամության նոր խորհրդանիշն է Կարադաղ—Թբիլիսի, Կարադաղ—Երևան գազամուղը, որի շինարարության վրա աշխատել են վրացիներ, ադրբեջանցիներ, հայեր, ռուսներ, ուկրաինացիներ: Այն իրավամբ կոչվել է «Բարեկամության տրասսա»:

ՍՍՌՄ-ում ազգային հարցի հաջող լուծման փորձը, որը հարստացվեց ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձով, հսկայական համաշխարհային-պատմական նշանակություն ունի: Այդ փորձը գործնականորեն ապացուցեց, որ ազգային ճնշումը լիակատար վերացնելու և իրավահավասար ազգերի ու ժողովուրդների միջև եղբայրական համագործակցություն հաստատելու ուղին անցնում է միայն պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիզմի կառուցման միջով: Լենինյան ազգային քաղաքականությունն իրականացնելու գործում մեր երկրի ժողովուրդների ձեռք բերած հաջողությունները հզոր ներգործություն են ունենում կապիտալիստական երկրների հարյուր միլիոնավոր

աշխատավորների գիտակցության վրա, գաղութային ու կախյալ ժողովուրդներին ոգեշնչում են պայքարի՝ հանուն իրենց ազատության ու անկախության։

Լենինյան ազգային քաղաքականությունն իր ցայտուն արտահայտությունը գտավ 1959—1965 թվականներին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի ընդունած կոնտրոլ թվերի մեջ։ Յոթնամյա պլանը նախատեսում է ճիշտ տեղաբաշխել արտադրողական ուժերը, նպատակ ունենալով վերացնել ժողովուրդների երբեմնի հետամնացության մնացուկները և ամրապնդել սոցիալիստական ազգերի իրավահավասարության ու բարեկամության տնտեսական հիմքերը։ Պլանով նախատեսվում է ընդարձակել աշխատանքի սոցիալիստական բաժանումը, մասնագիտացումը և կոոպերացումը, ամրապնդել տնտեսական կապերը, համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը ռեսպուբլիկաների ու տնտեսական շրջանների միջև։

Այդ հիման վրա յոթնամյա պլանը նախատեսում է բոլոր սովետական ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական հետագա վերելք և մանավանդ երկրի արևելյան շրջանների, ներառյալ՝ Ուրալի, Ղազախստանի, Միջին Ասիայի, Սիբիրի ու Հեռավոր Արևելքի արագ զարգացում։ Այստեղ է ներդրվում բոլոր կապիտալ հատկացումների ավելի քան 40 տոկոսը։ Դրա հետ միասին պլանավորված է այն առավել հնարավոր ներդրումը, որ ամեն մի միութենական ռեսպուբլիկա պետք է մուծի կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության ընդհանուր գործի մեջ։

Յոթնամյակի իրականացման համար պայքարելն աշխատավորների հայրենասիրական պարտքն է, որովհետև նրա իրականացման հետևանքով է՛լ ավելի կամրապնդվի մեր Հայրենիքի պաշտպանունակությունը, վճռական քայլ կարվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու գործում, ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի իրականացման՝ աշխարհում ամենաբարձր կենսամակարդակի հասնելու գործում։

Դրա հետ միասին «յոթնամյա պլանի իրականացումը,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—մի նոր ապացույց կլինի, որ Սովետական Միության աշխատավորները կատարում են իրենց ինտերնացիոնալ պարտքը բոլոր երկրների աշխատավորների, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հանդեպ, ամբողջ պրոգրեսիվ մարդկության հանդեպ»։ Էկոնոմիկայի բնագավառում մեր երկրի հաջողությունները հսկայական ներդրում կլինեն ամբողջ սոցիալիստական լագերի համընդհանուր խնդրի լուծման գործում, այն է՝ առավելագույն ժամանակ շահել կապիտալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ, 1965 թվականին նյութական արտադրության բնագավառում հասնել սոցիալիստական սիստեմի բացարձակ գերազանցության՝ կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Իսկ այդ կհանգեցնի հասարակության կյանքից համաշխարհային պատերազմների վերացման ռեալ հնարավորության աճմանը, ժողովուրդների ազատագրական շարժման ուժեղացմանը։

Երբ սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից և դարձավ համաշխարհային սիստեմ, ընդլայնվեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի կիրառման բնագավառը։ Եթե մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ինտերնացիոնալիզմն արտահայտվում էր նրանով, որ միջազգային բանվոր դասակարգի ազգային ջոկատները փոխադարձաբար պաշտ-



պանում էին իրար, որ նրանք համերաշխ էին միակ սոցիալիստական պետության հետ, ապա այժմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը սոցիալիստական պետությունների փոխհարաբերությունների հիմքն է կազմում։ Այստեղ այն արտահայտվում է նոր որակով՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի որակով։

Սոցիալիստական երկրների անխորտակելի միասնությունը որոշվում է նրանց տնտեսական հիմքի ընդհանրությամբ՝ արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությամբ, նրանց հասարակական-քաղաքական ու պետական կարգերի, իդեոլոգիայի, կենսական շահերի ընդհանրությամբ, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի համար իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում նպատակների ընդհանրությամբ։ Ուստի և ի հակադրություն կապիտալիզմի, որտեղ մի քանի երկրների բարգավաճումը տեղի է ունենում ի հաշիվ մյուսների ստրկացման ու շահագործման, որտեղ ուժեղ իմպերիալիստական տերությունները շահագրգռված են, որ պահպանվի տնտեսական ու կուլտուրական անհավասարությունը, սոցիալիստական պետություններն իրար հետ կապված են բարեկամական ազնիվ հարաբերություններով, էկոնոմիկայի, քաղաքականության, իդեոլոգիայի ու պաշտպանության բնագավառում համակողմանի եղբայրական համագործակցության ու փոխօգնության հարաբերություններով, պահպանելով հավասարությունը և հարգելով միմյանց սուվերենությունը։ Այս է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի էությունը։

Սովետական Միությունը, որ սոցիալիստական լագերում ամենահզոր տերությունն է և առաջինն է լիովին ու վերջնականապես սոցիալիզմ կառուցել, այժմ համակողմանի, անշահախնդիր օգնություն է ցույց տալիս ժողովրդական դեմոկրատիայի երկրներին ծանր արդյունաբերություն ստեղծելու, կադրեր պատրաստելու գործում, ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու բնագավառում, այդ երկրներին վարկեր է տրամադրում նրանց համար նպաստավոր պայմաններով։

Համակողմանի համագործակցության և եղբայրական փոխադարձ օգնության հիման վրա հավասարվում է բոլոր ժողովրդա-դեմոկրատական երկրների տնտեսական ու կուլտուրական զարգացման ընդհանուր մակարդակը և, ինչպես նշեց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարում, հնարավորություններ են ստեղծվում, որ այդ երկրները շատ թե քիչ միաժամանակ ավարտեն սոցիալիզմի շինարարությունը և անցնեն կոմունիզմին։

Իմպերիալիստական ռեակցիան ուժեղացնում է իր գրոհները սոցիալիստական երկրների բարեկամության դեմ, միջազգային կոմունիստական, դեմոկրատական ու ազգային-ազատագրական շարժման դեմ, ամեն կերպ աշխատում է սևացնել մարքսիզմ-լենինիզմը, խորտակել պրոլետարական ինտերնացիոնալիզմի իդեոլոգիական հիմքերը։ Այդ գործում իմպերիալիստներին օգնում են նրանց գործակալները՝ ժամանակակից ռևիզիոնիստները։

Բոլոր ռևիզիոնիստները և, ամենից առաջ հարավսլավյան ռևիզիոնիստները, նեղացնում ու աղճատում են պրոլետարական ինտերնացիոնալիզմ հասկացողությունը, այն փոխարինում են մեշչանական նացիոնալիզմով ու բուրժուական օբյեկտիվիզմով։ Նրանք ինտերնացիոնալիզմը հանգեցնում են բացառապես իրավահավասարության հաստատման սոցիալիստական պետությունների միջև և անտեսում են նրա գլխավոր պահանջները՝ սոցիալիստական երկրների միասնությունը, եղբայրական համագործակցությունն ու փո-

*խաղաղ օգնությունը՝ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար կապիտալիզմի դեմ մղվող պայքարում, անտեսում են այն պահանջը, որ պետք է կարողանալ պրոլետարիատի մասնավոր, ազգային շահերը ենթարկել ամբողջ աշխարհի աշխատավորների բարձր, ինտերնացիոնալ շահերին։*

*Չարաշահելով ժողովրդական մասսաների հայրենասիրական զգացմունքները՝ ռևիզիոնիստները չափից ավելի ուզգնում են այսպես կոչված՝ դեպի սոցիալիզմ տանող ազգային ուղիները և ժխտում են սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունները, որոնք ստուգված ու հաստատված են Սովետական Միության ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձով, ժխտում են բոլոր երկրների աշխատավորների ազգային ու ինտերնացիոնալ շահերի, հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի միասնությունը։*

*Ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարում անգնահատելի դեր խաղաց սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկովյան խորհրդակցությունը, որ տեղի ունեցավ 1957 թվականի նոյեմբերին։ Ռևիզիոնիզմին խորտակիչ հարված հասցրեց ՍՄԿՊ XXI համագումարը, որը կոչ արեց շարունակել աջ օպորտունիզմի մերկացումը, որովհետև ռևիզիոնիզմը գաղափարապես ու քաղաքականորեն գլխովին ջախջախված է, բայց դեռ չի ոչնչացված։*

*XXI համագումարը ցայտուն կերպով ցուցադրեց համաշխարհային սոցիալիստական ճագերի, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ամրապնդվող միասնությունն ու համախմբվածությունը։ Այդ միասնության ու եղբայրության մեջ է սոցիալիստական ճագերի և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման պատմական անպարտելիության աղբյուրը։ Եվ միջազգային ռեակցիայի ու ռևիզիոնիզմի ոչ մի ուժ ի վիճակի չէ պառակտելու լենինյան այդ միասնությունը։*

---

# ԷՋԵՐ ՍՄԿՊ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՅՔԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

*ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան համախոհ կոմունիստների մարտական միություն է։*

*Դա նշանակում է, որ նրա անդամները միասնական են իրենց աշխարհայացքով, իրենց քաղաքական համոզմունքներով և նպատակներով, կամքով ու գործողություններով, որ նրանք ամբողջովին ընդունում են պարտիայի ծրագրային և կանոնադրական դրույթները, անվերապահորեն ենթարկվում են նրա որոշումներին, ակտիվորեն նպաստում են պարտիայի քաղաքականության անցկացմանը, գործնականորեն մասնակցում պարտիական կազմակերպությունների աշխատանքներին։*

*Պարտիայի միասնությունը անհամատեղելի է նրա շարքերում հակապարտիական խմբերի, ֆրակցիաների, մարքսիզմ-լենինիզմին խորթ և վնասակար պլատֆորմների հետ։*

*Մեր պարտիան աշխատավորների մարտական քաղաքական կազմակերպություն է, մեր երկրի միակ կառավարող պարտիան և չի կարող թույլ տալ, որ քննադատության և կարծիքների փոխանակության ազատության անվան տակ վիճարկվեն իր ընդունած որոշումները, ձախողվի դրանց իրականացումը։ Հարցերի ազատ քննարկումը, մեր թերությունների քննադատությունը թույլատրելի են միայն պարտիականության շրջանակներում։ Պարտիան չի կարող հանդուրժել նրանց, ովքեր դեմ են մեծամասնության կամքին, ովքեր փորձում են շփոթ և քայքայում մտցնել նրա շարքերում։*

*Վ. Ի. Լենինը ասում էր, թե մենք պարտավոր չենք ձեռք-ձեռքի տված գնալ նրանց հետ, ովքեր պարտիայի մեծամասնության կողմից մերժված հայացքների ակտիվ քարոզիչներ են։ Դեռևս 1906 թվականին իր «Քննադատության ազատություն և գործողությունների միասնություն» հոդվածում Լենինն ասում էր, որ մենք չենք կարող աշխատել առանց հիմնական հարցերում միասնություն ունենալու։ Նա գտնում էր, որ «Պարտիայի քաղաքական գործողությունը միասնական պետք է լինի։ Որոշակի գործողությունների միասնությունը խախտող ո՛չ մի «կոչ» թույլատրելի չէ ո՛չ լայն ժողովներում, ո՛չ պարտիական ժողովներում, ո՛չ էլ պարտիական մամուլում»[1]։*

*Պայքարելով բանվոր դասակարգի մարքսիստական պարտիայի ստեղծման համար, Լենինը նշում էր, որ այդպիսի պարտիան պետք է լինի միասնական, համախմբված, կենտրոնացված, կարգապահ կազմակերպություն։ Լենինը պրոլետարական պարտիայի ուժը որոշում էր ոչ այնքան նրա անդամների թվով, որքան նրանց գաղափարայնությամբ և կազմակերպվածությամբ։*

*«Մեր խնդիրն է,— ասել է Լենինը ՌՍԴԲՊ II համագումարում,— պահպանել մեր պարտիայի ամրությունը, կայունությունն ու մաքրությունը։ Մենք*

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 10, էջ 562։

Համագումարը լսելով Ա. Մյասնիկյանի զեկուցումը ՌԿ(բ)Պ XI կոնֆերենցիայի արդյունքների մասին, որը մի շարք կարևոր որոշումներ էր ընդունել երկրի տնտեսական շինարարության և պարտիայի շարքերի հետագա ամրապնդման մասին, ամբողջապես միանում է կոնֆերենցիայի որոշումներին և առաջարկում է բոլոր պարտիական կազմակերպություններին իրենց աշխատանքներում առաջնորդվել կոնֆերենցիայի որոշումներով։

Հայաստանի Կոմպարտիայի II համագումարը (1923 թ. փետրվար) առանձնապես ընդգծում է հակալենինյան հոսանքների ու գաղափարախոսությունների դեմ մղվող պայքարի ուժեղացման անհրաժեշտությունը։ Համագումարը խնդիր է դնում շարունակել և է՛լ ավելի ուժեղացնել անհաշտ պայքարը դաշնակցականների և մյուս թշնամական տարրերի դեմ։

ՀԿՊ II համագումարը ՌԿ(բ)Պ Կենտկոմին ուղղված ողջույնի հեռագրում «...հավաստելով Հայաստանի Կոմունիստական պարտիայի շարքերի լիակատար միասնությունը և ամուր միաձուլությունը... հաղորդում է իր հաստատ որոշումը հետագայում նույնպես պարտիայի աշխատանքները տանել համամիութենական կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ»[1]։

1923 թվականի սկզբներին, երբ պարտիայի թշնամիները՝ տրոցկիստները, օգտվելով երկրի ներքին դժվարություններից և Վ. Ի. Լենինի հիվանդությունից, գլուխ էին բարձրացրել պարտիայի դեմ, ձգտելով թուլացնել և քայքայել պարտիան, Հայաստանի Կոմունիստական պարտիան դրսևորեց իր համերաշխությունն ու հավատարմությունը պարտիային և նրա Կենտրոնական Կոմիտեին։ ՀԿՊ II համագումարն արտահայտելով Հայաստանի բոլոր կոմունիստների կամքը, հայտարարեց, որ մեր «...պարտիան աշխատում է ճիշտ ուղիով և որ նա լի է հաստատ վճռականությամբ պաշտպանելու Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումները»[2]։

Վ. Ի. Լենինի մահից հետո պարտիայի թշնամիները շատ փորձեր արեցին պարտիայի միասնության դեմ, բայց դրանք ձախողվեցին։ Վ. Ի. Լենինի մահվան կապակցությամբ 1924 թվականի հունվարի 21—22-ը տեղի ունեցած ՌԿ(բ)Պ Կենտկոմի արտակարգ պլենումի կողմից «Պարտիային։ Բոլոր աշխատավորներին» ուղղված դիմումում ասված է.

«Թող չարախնդան մեր թշնամիները մեր կորստի առթիվ։ Թշվառականներ և ողորմելիներ։ Նրանք չգիտեն, թե ինչ է մեր պարտիան։ Նրանք հույս ունեն, թե պարտիան կքայքայվի։ Բայց պարտիան երկաթե քայլերով առաջ կգնա, որովհետև նա լենինյան պարտիա է, որովհետև նա դաստիարակվել, կոփվել է մարտերում»[3]։

Լենինի մահից հետո մեր պարտիան սերտորեն համախմբեց իր շարքերը։ Այդ համախմբվածությունը դրսևորվեց ՌԿ(բ)Պ XII համագումարում, որտեղ չեղավ ոչ մի օպոզիցիոն ելույթ։ Համագումարը միաձայն դատապարտեց տրոցկիստական օպոզիցիայի պլատֆորմը, որպես մանրբուրժուական թեքում մարքսիզմից, որպես կոմունիզմի ռևիզիա։

Հայ ժողովուրդը, Հայաստանի կոմունիստները, սգալով մեծ առաջնորդ Լենինի մահը, երդվեցին հավատարիմ մնալ նրա պատգամներին, ամրապնդել պարտիայի շարքերի միաձուլությունն ու միասնությունը։ 1924 թվականի հունվարի 22-ին Երևանում գումարվում է աշխատավորների համաքաղաքային սգո միտինգ, որը վեր է ածվում պարտիայի շուրջը միասնության և համախմբվածության ցույցի։ Միտինգում ընդունվում է բանաձև, որտեղ ասված է. «Երևանի բանվորները, կարմիրբանակայինները և աշխատավորության լայն մասսաները խորը ցնցված են ուսուցիչ և ղեկավար Վ. Ի. Լենինի մահվան առթիվ... Հաղթանակի միասնական կամքով և շարքերի խտությամբ Խորհրդային Միության ու ամբողջ աշխարհի բանվորներն ու գյուղացիները կամրացնեն խորհրդային և պրոֆմիութենական բոլոր կազմակերպությունների հիմքերը, որ կոչված են իրագործելու Թանկագին ուսուցչի մտքերն ու ավանդները»[1]։

Պարտիայի լենինյան գծին իրենց հավատարմությունը ու համերաշխությունը դրսևորում են Հայաստանի բոլոր պարտիական կազմակերպությունները։

Հունվարի 24-ին տեղի է ունենում Ալավերդու կոմբջջի ժողովը, որին մասնակցում են կոմերիտականները և 200 անպարտիական[2]։ Ժողովն ընդունում է որոշում, որտեղ ասված է. «Մեծ գիտնական, համաշխարհային հեղափոխության պարագլուխ ընկեր Լենինի դագաղի առաջ տալիս ենք երդում, որ նրա մահից հետո խտացած շարքերով, պողպատե ամրությամբ ենք գնալու մեծ Լենինի ստեղծած ճանապարհով»[3]։

1923 թվականի վերջերին, երբ տրոցկիստները պարտիայի վզին համապարտիական դիսկուսիա փաթաթեցին, պնդելով թե պարտիայի մեջ պետք է թույլատրել ֆրակցիաների ազատություն, որ պարտիան պետք է բաղկացած լինի տարբեր հոսանքներից, Հայաստանի Կոմպարտիան միահամուռ կերպով պաշտպանեց պարտիայի լենինյան գիծը և իրեն դրսևորեց որպես Ռուսաստանի Կոմունիստական պարտիայի մարտական ջոկատներից մեկը։ Ռեսպուբլիկայի պարտիական բջիջներն իրենց ժողովներում մերկացրին և դատապարտեցին տրոցկիստներին։ ՀԿՊ III համագումարը (1924 թ. մայիս) ամփոփելով դիսկուսիայի արդյունքները, կրկին նշեց Հայաստանի Կոմպարտիայի հավատարմությունը լենինիզմին, նրա միաձուլությունն ու համախմբվածությունը պարտիայի շուրջը։ Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների III համագումարում, Անդրերկրկոմի քաղաքական հաշվետվության մեջ Գ. Կ. Օրջոնիկիձեն ասել է. «Հայաստանում ներպարտիական դրության տեսակետից, մենք ունեցել ենք և ունենք բավականաչափ լավ վիճակ»։

Ինչպես հայտնի է, 1924 թվականի աշնանը Տրոցկին հրապարակ հանեց իր «Հոկտեմբերի դասերը»՝ պարտիայի պատմությունն աղավաղող և զրպարտչական հոդվածը։ Ըստ Տրոցկու ստացվում էր, որ բոլշևիզմը քաղաքական հոսանք է եղել միայն 1917 թվականից։ Հոկտեմբերյան հեղաշրջման ղեկավարությունը Տրոցկին վերագրում էր ոչ թե պարտիայի ղեկավար դերին, ոչ թե Լենինին, այլ իրեն։ Տրոցկին, այսպիսով, հանդես եկավ պատմական ճշմարտության, լենինիզմի դեմ։ Նա փորձում էր վերականգնել «պերմանենտ ռևոլյուցիայի» իր մենշևիկյան տեսությունը։

Հայաստանի պարտիական կազմակերպությունը դատապարտեց Տրոցկու այդ ելույթը։ ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի, Կենտրոնական Վերահսկիչ հանձնաժողովի և Երևանի Կոմիտեի միացյալ նիստը 1924 թվականի վերջերին լսելով ընկ. Լուկաշինի զեկուցումն այդ մասին, Տրոցկու հոդվածը բնորոշում է որպես «Հոկտեմբերյան հեղափոխության, պատմության ու համաշխարհային հոկտեմբերի համար նշանակություն ունեցող իսկական դասերի կատարյալ խեղաթյուրում»[4] և նշում, որ տրոցկիզմը արտահայտում է պարտիայի մեջ և նրանից դուրս եղած ոչ-պրոլետարական՝ տրամադրությունները և ոչ մի առնչություն չունի լենինիզմի հետ։

Միացյալ նիստի ընդունած բանաձևում ասված է. «Տրոցկու հանդես գալը կուսակցությանը կանգնեցնում է նոր ցնցումների առջև։ Հայաստանի Կոմունիստական Կուսակցության Կենտր. Կոմիտեն, Կենտր. Վերահսկիչ հանձնաժողովը և Երևանի Կոմիտեն միանգամայն անթույլատրելի են համարում դիսկուսիա բանալ ստացած հարցերի և կուսակցության կողմից դատապարտված ուղղության մասին և գտնում են, որ անհրաժեշտ է լուրջ կերպով ուսումնա-

1 ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, գ. 4, թ. 1։

2 Նույն տեղը։

3 «ՍՄԿՊ-ն բանաձևերում և որոշումներում», մասն I, էջ 1029։

1 «Խորհրդային Հայաստան», 1924 թ., հունվարի 25։

2 ՄԼԻ-ի ֆիլիալի արխիվ (1924 թ.), ֆ. 2, գ. 166։

3 Նույն տեղը։

4 «Խորհրդային Հայաստան», 1924 թ., դեկտեմբերի 2։

սիրել կուսակցության պատմությունը և կուսակցության շարքերը դաստիարակել լենինիզմի ոգով»[1]։

1926 թվականին, երբ տրոցկիստները և զինովևականները բլոկ կազմեցին պարտիայի դեմ, Հայաստանի Կոմպարտիան հանդես եկավ ի պաշտպանություն պարտիայի գլխավոր գծի։ 1927 թվականի օգոստոս-սեպտեմբերին Հայաստանի պարտիական կազմակերպությունները քննարկեցին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ԿՎՀ-ի հուլիս-օգոստոսյան պլենումի արդյունքները և միահամուռ հավանություն տվին պլենումի բոլոր որոշումներին։ Այդ օրերին Երևանի բոլոր պարտիական բջիջները որոշումներ ընդունեցին, որոնցով նրանք պահանջում էին վճռական միջոցներ ձեռք առնել տրոցկիստների նկատմամբ։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի, Երևանի Կոմիտեի և Հայկական ՍՍՌ Կենտգործկոմի օրգան «Խորհրդային Հայաստան» թերթում կարելի է հանդիպել այսպիսի մեծատառ վերնագրերի՝ «Բոլշևիկ բանվորները դեմ են տրոցկիստական օպոզիցիային»[2] «Բանվորական բջիջները լիովին հավանություն են տալիս Կենտկոմի թեզիսներին[3]. «Կուսակցական մասսաները պահանջում են, որ Լենինյան կուսակցության միասնությունը խախտողները դուրս արվեն մեր շարքերից»[4]։

Երկրի համար այդ դժվարին օրերին, երբ ներքին ու արտաքին բուրժուազիան փորձեր էր կատարում խանգարելու սոցիալիստական շինարարությունը, օպոզիցիան իր պառակտիչ քաղաքականությամբ արգելակում էր մեր առաջընթացը։ Ահա թե ինչու ժողովներում, ամենուրեք օպոզիցիան հանդիպում էր պարտիական մասսաների միահամուռ դիմադրությանը։ Օպոզիցիայի անդամներից շատերը լքում են նրա շարքերը։

Երևանի կաշեգործների, մեքենայական և Արարատ գործարանների, տպագրիչների և գարաժի կոմբջիջների միացյալ ժողովը պահանջում է «բոլոր կտրուկ միջոցներով լենինիզմի դիսցիպլինան անխախտ պահել և ապահովել մեր կուսակցության բոլշևիկյան պողպատե միասնությունը»[5]։

Կենտգործկոմի, Խճուղային վարչության, Արդժողկոմատի, Կենտվիճվարի, Հրատարակչության, Բ. Գ. Տեսչության բջիջների միացյալ ժողովի բանաձևում ասված է. «Օպոզիցիան և տրոցկիստական տեսակետները ոչ մի կապ չունեն մեր կուսակցության հետ։ Ավելի մոտ լենինյան կուսակցության մեծամասնությանը, ավելի սեղմենք մեր շարքերը՝ բոլշևիկյան կուսակցության միասնությունն անխախտ պահելու համար»[6]։

«Օպոզիցիոներները խայտառակ պարտություն կրեցին», այս վերնագրով «Խորհրդային Հայաստան»-ի 1927 թվականի նոյեմբերի 15-ի համարում տպագրված հոդվածում ասված է, որ Գավգործկոմի, Աշխժողկոմատի, Միլիցիայի և Հայտնարկոոպի միացյալ բջիջների ժողովը տևում է երեք օր։ Միացյալ ժողովին մասնակցում է 103 հոգի։ Նիստի ժամանակ օպոզիցիան աշխատում է խանգարել ժողովը. շնորհիվ ժողովականների մեծամասնության ուժեղ կամքի ու լենինյան միակամության, այդ նրանց չի հաջողվում։ Օպոզիցիայի հռետորներն իրենց մենշևիկյան ու կիսադաշնակցական ճառերով շարժում են մեծամասնության զայրույթը։

Մնացած հռետորներն իրենց հիմնավորված փաստերով ու կենդանի օրինակներով ապացուցում են, որ Կենտկոմի վարած քաղաքական գիծը եղել է ճիշտ և լենինյան։

Կենտկոմի գծին հավանություն տվող բանաձևն ընդունվում է բուռն ծափահարությամբ։

---

[1] «Խորհրդային Հայաստան», 1924 թ., դեկտեմբերի 2։

[2] «Խորհրդային Հայաստան», 1927 թ., նոյեմբերի 13։

[3] Նույն տեղ։

[4] Նույն տեղ։

[5] Նույն տեղ, հոկտեմբերի 22։

[6] Նույն տեղ, նոյեմբերի 15։



«Օպոզիցիան Երևանի բանվորական բջիջներում միայն երկու ձայն է հավաքում ընդդեմ Կոմունիստական պարտիայի քաղաքականության»։[1] Տրոցկիստական օպոզիցիայի դեմ միահամուռ հանդես եկան նաև ռեսպուբլիկայի քաղաքային մյուս պարտիական կազմակերպությունները։

Տրոցկիստների և օպոզիցիոներների դեմ հանդես եկան նաև գյուղական կոմունիստները։ Սև Քարի ենթաշրջանի (Իջևանի շրջան) պարտկազմակերպության ընդհանուր ժողովը, քննության առնելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ԿՎՀ-ի պլենումի որոշումները, ամբողջովին միանում է դրանց և դատապարտում օպոզիցիայի հակապարտիական, հակալենինյան գիծը։ «Ժողովը գտնում է,— ասված է ընդունված որոշման մեջ,— որ Կենտկոմը բոլոր ասպարեզներում էլ վարել է լենինյան ճիշտ քաղաքականություն, որն ամրացրել է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, և որը սոցիալիստական նախապայմաններից մեկն է։

Կեցցե ՀամԿ(բ)Պ պողպատե միասնությունը։

Կեցցե լենինյան միասնությունը»[2]։

Այս բովանդակությամբ բանաձևեր են ընդունվել բոլոր ժողովներում։

Ի պաշտպանություն պարտիական շարքերի լենինյան միասնության, հանդես է գալիս կոմերիտմիությունը։ 1927 թվականի հոկտեմբերի կեսերին տեղի է ունենում Ղամարլվի ԼԿԵՄ բջիջների քարտուղարների և ակտիվի խորհրդակցություն, որը «ամբողջովին միանալով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ԿՎՀ-ի հուլիս-օգոստոսյան միացյալ պլենումի որոշումներին, դատապարտում է օպոզիցիայի հակալենինյան գիծը և կոչ է անում բանվորա-գյուղացիական երիտասարդությանը պատրաստ լինել պաշտպանելու սոցիալիստական հայրենիքը և լծվել երկրի ստեղծագործ աշխատանքին»[3]։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումի արդյունքները 1927 թվականի սեպտեմբերին քննության առնվեցին Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի 6-րդ պլենումում։ Այդ հարցի վերաբերյալ պլենումն ընդունեց բանաձև, որտեղ ասված է. «ՀԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը լսելով զեկուցում ՀամԿոմկուսի և ԿՎՀ-ի միացյալ պլենումի արդյունքների մասին, ամբողջովին միանում է մեր քաղաքականության հիմնական հարցերին վերաբերող բոլոր որոշումներին և իր բուռն բողոքն է արտահայտում Տրոցկու և Զինովևի գլխավորությամբ օպոզիցիայի քայքայիչ գործունեության դեմ, որը թուլացնում է պրոլետարիատի դիկտատուրան և վարկաբեկում կուսակցության և Կոմինտերնի ղեկավարությունն ու ղեկավար դերը հեղափոխական շարժման մեջ։

Կենտկոմի պլենումը հանձնարարում է նախագահությանը ձեռք առնել ամենավճռական միջոցներ Կենտկոմի և ԿՎՀ-ի պլենումի որոշումները խախտողների դեմ...»[4]։

Պլենումը կոչ է անում շարունակել հետևողական պայքարն ընդդեմ տրոցկիստական օպոզիցիայի, բարելավել պարտիայի սոցիալական կազմը, նրա շարքերից դուրս վռնդել խորթ և անհարազատ տարրերին։

Պլենումը միաժամանակ միջոցառումներ նշեց պարտիական կազմակերպությունների կապը մասսաների հետ ուժեղացնելու, ներպարտիական դեմոկրատիան ծավալելու, պարտիական-քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը բարձրացնելու, Հայաստանի պարտիական կազմակերպությունների մարտունակությունը ամրապնդելու համար։

1927 թվականի հոկտեմբերին, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ սկսված համապարտիական դիսկուսիան Հայաստանում անցավ սուր պայքարի պայ-

---

[1] «Խորհրդային Հայաստան», 1927 թ., սեպտեմբերի 23։

[2] Նույն տեղը, հոկտեմբերի 22։

[3] Նույն տեղը։

[4] «Խորհրդային Հայաստան», 1927 թ. սեպտեմբերի 23։

մաններում: Պարտիական կազմակերպությունները մերկացրին և ջախջախեցին իրենց շարքերը խցկված տրոցկիստական-զինովևական էլեմենտներին և պաշտպանեցին Կենտրոնական Կոմիտեի լենինյան գիծը:

Մերկացվեցին և ջախջախվեցին տրոցկիստական գաղտնի խմբակները: Այդպիսի խմբակ հայտաբերվեց Ղարաքիլիսայի (Կիրովական) երկաթուղային կայարանում: ՀԿ(բ)Պ ԿՎՀ նախագահության որոշմամբ այդ խմբակի ակտիվ գործիչները վտարվեցին պարտիայի շարքերից: Ղարաքիլիսայի կայարանի կոմբջիջը քննության առնելով ԿՎՀ-ի նախագահության որոշումը, ընդունում է բանաձև, որտեղ ասված է. «Ղարաքիլիսայի երկաթգծի բջիջն ամբողջովին միանում է վերահսկիչ հանձնաժողովի բոլոր որոշումներին: Միանալով կուսակցության որոշումներին և նրա վարած քաղաքականությանը, մենք միացյալ ճակատով ամենավճռական կռիվ պետք է տանենք բոլոր այն օպոզիցիոն փորձերի դեմ, որոնք նպատակ ունեն քայքայելու մեր կուսակցությունը»[1]:

Տրոցկիստական գաղտնի խմբակ հայտաբերվեց նաև Լենինականի կայարանում, որը տարածում և պրոպագանդում էր «83-ի» հակապարտիական պլատֆորմը:

Հայաստանի ԿՊ Երևանի կազմակերպության ակտիվի ժողովը 1927 թվականի հոկտեմբերի 12-ին հաղորդում լսելով տրոցկիստներ Պրեոբրաժենսկու, Սերեբրյակովի, Շարովի կողմից Մոսկվայում կազմակերպված գաղտնի տպարանի մասին, դատապարտում է նրանց ստոր գործունեությունը և պահանջում է նրանց վտարել պարտիայի շարքերից: Ժողովը միահամուռ հավանություն է տալիս Կոմինտերնի նախագահության որոշմանը՝ Տրոցկուն և Զինովևին Կոմինտերնից վտարելու մասին:

Հայաստանի Կոմունիստական պարտիայի V համագումարը, որը կայացավ 1927 թվականի նոյեմբերին, անցավ օպոզիցիայի դեմ սուր պայքարի պայմաններում: Համագումարում ունեցած իրենց ելույթներում օպոզիցիոներներ Ժ. Արեշյանը, Մ. Հարոյանը և ուրիշներ պարտիային մեղադրում էին այն բանում, որ նա իբր թե սխալ գիծ է վարում գյուղում, որ Կենտրոնական Կոմիտեի վարած քաղաքականությունը իբր թե օգնում է կուլակային տնտեսությունների զարգացմանը: Նրանք պարտիային մեղադրում էին նաև այն բանի մեջ, որ նա ռեպրեսիաներ է գործադրում Տրոցկու, Զինովևի և մյուս օպոզիցիոներների նկատմամբ:

Համագումարի դելեգատները ջախջախիչ հակահարված տվին այդօրինակ տրոցկիստական ելույթներին: Դելեգատներն իրենց ելույթներում ասում են՝ «Մենք թույլ չենք տա կուսակցության մեջ պառակտում առաջ բերել... Մենք թույլ չենք տա կուսակցությունը դուրս բերել լենինյան գծից...»[2]:

Բանվոր դելեգատներից մեկը՝ Ա. Հովհաննիսյանն, իր ելույթում ասաց հետևյալը. «Օպոզիցիոներներն ուզում են կուսակցությունը բաժանել երկու մասի, բանվորներն արդեն չեն ուզում նրանց լսել, բանվորներն արդեն հասկացել են, թե ով կարող է նրանց ղեկավարել, նրանք հասկացել են, որ միայն լենինյան կուսակցությունը կարող է նրանց ղեկավարել և միայն այդ կուսակցության հետ նրանք կմնան մինչև վերջ»[3]:

Ղեկավարվելով պարտիայի միասնության մասին ՌԿ(բ)Պ X համագումարի որոշումներով, համագումարը դատապարտում է տրոցկիստական պլատֆորմը, անարգանքի սյունին գամում օպոզիցիոներներին: Համագումարը հանձնարարում է ՀԿՊ Կենտկոմին և ԿՎՀ-ին՝ «...վերջ տալ տեղական օպոզիցիայի գործունեությանը, պարտիայի շարքերից վտարել բոլոր այն օպոզիցիոներներին, որոնք ամենափոքր-ինչ փորձ կանեն ֆրակցիոն աշխատանք կատարելու պարտիական կարգապահությունը խախտելու համար»[1]: Համագումարի նախօրյակին Հայաստանի ԿՊ Կենտկոմի անունով հեռագրեր էին ստացվում Լենինականի, Լոռի-Փամբակի, Զանգեզուրի և այլ գավառների ու գավառամասերի պարտիական կազմակերպություններից, որոնք իրենց խոր վրդովմունքն էին հայտնում օպոզիցիայի քայքայիչ գործունեության նկատմամբ, միահամուռ հավանություն էին տալիս Տրոցկուն և Զինովևին Կենտկոմից և պարտիայից հեռացնելուն, դա համարելով պարտիայի պողպատե միասնությունը պահպանելու անհրաժեշտ միջոց:

Համագումարը միաձայն ողջույնի հեռագիր ընդունեց ՀամԿ(բ)Պ Կենտկոմի անունով, ուր ասված է. «Հայաստանի Կոմկուսի(բ) V համագումարը միահամուռ կերպով դատապարտում է տրոցկիստական օպոզիցիայի ոճրագործ պառակտողական գործունեությունը և լրիվին հավանություն է տալիս Տրոցկուն և Զինովևին Կենտկոմից, նույնպես և կուսակցությունից վտարելուն՝ ոչ միայն կուսդիսցիպլինայի խայտառակ խախտման, այլև հոկտեմբերի տասնամյակի օրը հակախորհրդային ելույթներ ունենալու համար: Կուսակցությունը մեծ եռանդով հաղթահարում է սոցիալիստական շինարարության ճանապարհի վրա գտնվող դժվարությունները:

Հաղթական քայլերով առաջ ենք ընթանում, հակառակ օպոզիցիայի կամքին: Մենք կառուցում ենք և կկառուցենք սոցիալիզմը:

Կեցցե՛ կուսակցության միասնականությունը:

Կեցցե՛ ՀամԿ(բ)Պ Լենինյան Կենտկոմը»[2]:

Համագումարը միահամուռ հավանություն տվեց ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ԿՎՀ-ի որոշմանը՝ օպոզիցիայի լիդերներ Տրոցկուն և Զինովևին պարտիայից վտարելու մասին: Համագումարը հավանություն տվեց նաև ՀԿՊ ԿՎՀ-ի նախագահության որոշմանը՝ տրոցկիստներ Ռ. Սաֆրազբեկյանին, Պ. Ղազարյանին և մյուսներին պարտիայի շարքերից վտարելու մասին և հանձնարարեց ՀԿՊ Կենտկոմին և ԿՎՀ-ին՝ պարտիայից վտարել բոլոր նրանց, ովքեր իրենց ֆրակցիոն պառակտիչ գործունեությամբ փորձ կանեն խախտել պարտիայի միասնությունը:

Տրոցկիստական օպոզիցիայի դեմ մղված պայքարում է՛լ ավելի աճեցին և ամրապնդվեցին Հայաստանի Կոմպարտիայի շարքերը: Պարտիային և երկրին նվիրված հազարավոր մարդիկ, արձագանքելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի կոչին, մտան պարտիայի մեջ: Եթե առ 1-ը հունվարի 1926 թ. ՀԿՊ շարքերում կային 6972 անդամ և թեկնածու, ապա առ 1-ը հուլիսի 1927 թ. պարտիայի մեջ հաշվվում էին 8882 մարդ[3]: Աճում է հատկապես բանվորական կորիզը պարտիայի մեջ: Առ 1-ը հունվարի 1928 թ. ՀԿՊ շարքերում բանվորները կազմում էին 24,6 տոկոս[4]:

Հետագայում, պայքարի բոլոր էտապներում Հայաստանի Կոմունիստական պարտիան ցույց է տվել իր նվիրվածությունը պարտիային, նրա Կենտրոնական Կոմիտեին, ջերմորեն հավանություն է տվել պարտիայի շարքերի լենինյան միասնության ամրապնդմանն ուղղված ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ձեռնարկած բոլոր միջոցառումներին:

***

Ի. Վ. Ստալինի մահից հետո պարտիայի և երկրի թշնամիները հույս ունեին, թե պարտիայի շարքերում շփոթվածություն կառաջանա, կխախտվի

---

[1] «Խորհրդային Հայաստան», 1927 թ., հոկտեմբերի 8:

[2] ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ (1927 թ.), ֆ. 1, թ. 21:

[3] Նույն տեղ:



[1] ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ (1927 թ.), ֆ. 1, թ. 57:

[2] «Խորհրդային Հայաստան», 1927 թ., նոյեմբերի 15:

[3] ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ (1927 թ.), ֆ. 1, գ. 5, թ. 12:

[4] Նույն տեղ (1924—28 թթ.), ֆ. 1, գ. 6, թ. 172:

նրա միասնությունը, տատանումներ կլինեն նրա ներքին ու արտաքին քաղաքականության կիրառման մեջ։

Այդ հաշիվները տապալվեցին։ Ի. Վ. Ստալինի մահվան առթիվ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախագահությունը՝ պարտիայի բոլոր անդամներին, Սովետական Միության բոլոր աշխատավորներին ուղղված դիմումի մեջ կոչ արեցին՝ աչքի լույսի պես պահպանել ՍՄԿՊ միասնությունը, կոմունիստներին դաստիարակել որպես պարտիայի քաղաքականությունը և որոշումները կենսագործող ակտիվ քաղաքական մարտիկների, է՛լ ավելի ամրապնդել պարտիայի կապերը բոլոր աշխատավորների հետ, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի հետ։ Կոմունիստներին, բոլոր աշխատավորներին դաստիարակել քաղաքական բարձր զգոնության ոգով, ներքին և արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում անհաշտության և հաստատակամության ոգով։

Այդպես էլ եղավ. ամբողջ աշխարհն ականատես եղավ այն բանին, թե ինչպես Սովետական Միության Կոմունիստական պարտիան դարձավ է՛լ ավելի միաձույլ և միասնական, ավելի սերտորեն համախմբվեց իր մարտական շտաբի՝ Կենտրոնական Կոմիտեի շուրջը, ավելի բարձր պահեց մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ դրոշը։

Մեր երկրի թշնամիներն առանձնապես հույս էին դրել միջազգային իմպերիալիզմի գործակալ Բերիայի վրա, որը խարդախ ճանապարհով սողոսկել էր պարտիայի և պետության ղեկավար պոստերը։ Մեր պարտիայի Կենտկոմը ժամանակին մերկացրեց և վճռականորեն վերջ տվեց այդ վտանգավոր թշնամու և նրա գործակիցների հանցավոր, դավադրական գործունեությանը։

Սովետական ժողովուրդը, մեր ամբողջ պարտիան գոհունակությամբ ընդունեցին պարտիայի ու ժողովրդի վտանգավոր թշնամի Բերիայի և նրա բանդայի նկատմամբ պարտիայի և կառավարության ձեռք առած վճռական միջոցները։

1953—1958 թվականները նոր նշանավոր էտապ հանդիսացան կոմունիստական պարտիայի կյանքում։ Պարտիան բարձրացրեց իր մարտունակությունը, ամրապնդեց իր շարքերի միասնությունը։

Պարտիայի XX համագումարը հանդիսացավ մեր պարտիայի միասնության և համախմբվածության վառ ցուցադրումը։ Համագումարի պատգամավորները, կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչները ջերմորեն պաշտպանեցին մեր պարտիայի վարած ներքին ու արտաքին քաղաքականությունը և գոհունակությամբ նշեցին Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ մեր պարտիայի կատարած մեծ աշխատանքը կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում։

Պարտիայի գաղափարական-քաղաքական և կազմակերպական հետագա ամրապնդման համար կարևոր նշանակություն ունեցավ մարքսիզմ-լենինիզմին խորթ՝ անհատի պաշտամունքի և նրա հետևանքների հաղթահարումը։ Դա մեծապես նպաստեց մասսաների նախաձեռնության և ակտիվության բարձրացմանը, մասսաների է՛լ ավելի լայն մասնակցությանը պետության կառավարմանը և նրա ամբողջ կազմակերպչական-տնտեսական գործունեությանը։

ՍՄԿՊ XX համագումարի արդյունքների, անհատի պաշտամունքի և նրա հետևանքների հաղթահարման հարցի քննարկումը պարտիական ակտիվի ժողովներում, սկզբնական պարտիական կազմակերպություններում և աշխատավորների ժողովներում ընթացավ կոմունիստների և անկուսակցականների բարձր ակտիվության պայմաններում և ցույց տվեց պարտիայի ու ժողովրդի անխախտ միասնությունը, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի շուրջը պարտիական կազմակերպությունների և կոմունիստների սերտ համախմբվածությունը։

1956 թվականի մարտի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի և Երևանի



պարտիական ակտիվի համատեղ ժողովը, որը քննության առավ ՍՄԿՊ XX համագումարի արդյունքները և Հայաստանի Կոմպարտիայի խնդիրները։ Ակտիվի ժողովը միահամուռ հավանություն տվեց և լիովին միացավ համագումարի որոշումներին։ Ժողովը գոհունակությամբ նշեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կատարած հսկայական աշխատանքը պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնման ուղղությամբ։

Պարտիական ակտիվի ժողովը հավաստիացրեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, որ Հայաստանի պարտիական կազմակերպություններն այսուհետև է՛լ ավելի սերտորեն կհամախմբվեն ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի շուրջը և բոլոր ուժերը ի սպաս կդնեն պարտիայի XX համագումարի որոշումների անշեղ կատարմանը։

Հայաստանի Կոմունիստական պարտիան է՛լ ավելի ամրապնդվեց գաղափարապես ու կազմակերպորեն, ընդլայնեց ու խորացրեց իր կապերը մասսաների հետ, որի շնորհիվ է՛լ ավելի բարձրացավ նրա կազմակերպող դերն ու հեղինակությունը աշխատավորների լայն խավերի մեջ։

Հայաստանի Կոմպարտիայի XIX համագումարը, որը տեղի ունեցավ 1957 թվականի սկզբներին, նշեց, որ այն միասնության պայմաններում, որ գոյություն ունի Հայաստանի Կոմպարտիայի շարքերում, առանձին հակապարտիական տարրերի ռևիզիոնիստական ու նացիոնալիստական ոչ մի ելույթ չի կարող իրենից լուրջ վտանգ ներկայացնել, առավել ևս մեզ վրա որևէ նկատելի ազդեցություն թողնել։ Վտանգն այն է, որ թերագնահատվում է կոմունիստների դաստիարակումը մեզ համար խորթ գաղափարախոսության նկատմամբ անհաշտության ոգով, որ որոշ կոմունիստներ անհանդուրժելի լիբերալիզմ են ցուցաբերում մեր շարքերում հակապարտիական ելույթների նկատմամբ։

ՀԿՊ XIX համագումարը խնդիր դրեց բարձրացնել գաղափարական աշխատանքի մակարդակը, կոմունիստներին դաստիարակել թերությունների և պարտիական գծից ամեն մի շեղման նկատմամբ անհաշտելիության ոգով, ապահովել ներպարտիական դեմոկրատիայի, քննադատության և ինքնաքննադատության զարգացումը, ամրապնդել պարտիական կարգապահությունը, բարձրացնել զգոնությունը, աչքի լույսի պես պահպանել պարտիական շարքերի միասնությունը։

ՍՄԿՊ XX համագումարը կոմունիստների և անկուսակցականների, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, սովետական ամբողջ ժողովրդի աշխատանքային ակտիվության նոր ալիք առաջացրեց։ Երկրում սոցիալիստական լայն մրցություն ծավալվեց վեցերորդ հնգամյակի առաջին տարվա պլանը արդյունաբերության գծով ժամկետից շուտ կատարելու համար։ Գյուղում պայքար ծավալվեց բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու և անցնելու համար։

Պարտիայի XX համագումարից հետո մեր երկիրը՝ պարտիայի ղեկավարությամբ շարունակում էր վստահորեն առաջ ընթանալ դեպի կոմունիզմ, ամրապնդվում էր Սովետական պետության հզորությունը, բարձրանում նրա միջազգային հեղինակությունը։ Կենսագործելով XX համագումարի և Կենտրոնական Կոմիտեի դրան հաջորդած պլենումների որոշումները, սովետական ժողովուրդն աչքի ընկնող հաջողություններ ձեռք բերեց սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Զգալիորեն բարձրացավ քաղաքի և գյուղի աշխատավորների կենսամակարդակը։

Եվ ահա, այն ժամանակ, երբ պարտիան՝ Կենտկոմի ղեկավարությամբ, հաջողությամբ կենսագործում էր ՍՄԿՊ XX համագումարի որոշումները և լուրջ հաջողությունների էր հասել ժողովրդական տնտեսության զարգացման գործում, անհատի պաշտամունքի առաջացրած սխալների ու թերությունների

ուղղման վճռական կուրս էր վերցրել, պայքարում էր մարքսիզմ-լենինիզմի ռևիզիայի ամեն տեսակ փորձերի դեմ, հանուն իր շարքերի միասնության ամրապնդման, Կենտկոմի Նախագահության ներսում գոյացած հակապարտիական խումբը հանդես եկավ պարտիայի գծի դեմ և ներքին ու արտաքին քաղաքականության մեջ դիմադրում էր ՍՄԿՊ XX համագումարի լենինյան կուրսին:

1957 թվականի հունիսի 22—29-ը տեղի ունեցավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը, որը քննարկեց Գ. Մ. Մալենկովի, Լ. Մ. Կագանովիչի, Վ. Մ. Մոլոտովի հակապարտիական խմբի հարցը: Այդ կապակցությամբ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը ղեկավարվեց «Պարտիայի միասնության մասին» ՌԿ(բ)Պ X համագումարում ընդունված Լենինի մշակած այն որոշումով, որը Կենտրոնական Կոմիտեին և բոլոր պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է անդուլ կերպով ամրապնդել պարտիայի միասնությունը, վճռական հակահարված հասցնել ֆրակցիոնականության և խմբակայնության ամեն մի դրսևորման դեմ, ապահովել իրոք համերաշխ աշխատանքը, որն իսկապես մարմնավորում է բանվոր դասակարգի ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի կամքի և գործողությունների միասնությունը:

Կենտկոմի պլենումն ընթացավ բացառիկ միասնության և համախմբվածության, ներպարտիական դեմոկրատիայի լենինյան սկզբունքների խստիվ պահպանման պայմաններում: Կոմունիստները, մեր երկրի բոլոր աշխատավորները միահամուռ հավանություն տալով Կենտկոմի պլենումի որոշմանը, վճռականորեն դատապարտեցին հակապարտիական խմբի նողկալի գործունեությունը, նրանք իրենց շարքերն էլ ավելի սերտորեն համախմբեցին մարքսիզմ-լենինիզմի անպարտելի դրոշի ներքո, աշխատեցին ստեղծագործական նոր եռանդով, իրենց բոլոր ուժերն ուղղեցին կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման նպատակին:

Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի, Շեպիլովի խմբի հակապարտիական ֆրակցիոն գործունեության մերկացումը և դատապարտումը Կենտրոնական Կոմիտեի կողմից, ասված է ՍՄԿՊ պատմության դասագրքում, էլ ավելի ամրապնդեցին պարտիայի լենինյան միասնությունը, հանդիսացան պարտիայի գլխավոր գծի նոր հաղթանակը, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի հաղթանակը:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումն արժանացավ մեր ամբողջ պարտիայի, սովետական ողջ ժողովրդի ջերմ հավանությանն ու պաշտպանությանը: Բոլոր պարտիական կազմակերպությունները, մեր ամբողջ պարտիան Կենտկոմի պլենումի որոշումներից արին անհրաժեշտ հետևություններ՝ ավելի ամրապնդել պարտիական շարքերի միասնությունը, բարձրացնել կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց քաղաքական զգոնությունը, լինել զգաստ և աչալուրջ, անողոք և անխնա բոլոր նրանց նկատմամբ, ովքեր ոտնձգություններ կանեն մեր պարտիայի լենինյան միասնության դեմ:

Հայաստանի Կոմունիստական պարտիան, ամբողջ հայ ժողովուրդը միահամուռ հավանությամբ արձագանքեցին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներին, դրանով մեկ անգամ ևս դրսևորելով իրենց անսահման նվիրվածությունը Կոմունիստական մեծ պարտիային:

1957 թվականի հուլիսի 3-ին տեղի ունեցավ Հայաստանի և Երևանի պարտիական ակտիվի համատեղ ժողովը՝ նվիրված ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի արդյունքների քննարկմանը: Ակտիվի ժողովը լիովին հավանություն տվեց և միահամուռ կերպով միացավ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշմանը՝ հակապարտիական խմբի մասին: Ակտիվի ժողովը կոչ արեց ռեսպուբլիկայի բոլոր կոմունիստներին պրակտիկ հետևություններ անել ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի պատմական որոշումից, ամենուրեք բարելավել աշխատանքը տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագա-



վառներում, անդուլ պայքար մղել ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները կյանքում կենսագործելու, պարտիական շարքերի կարգապահությունը և միասնությունը ամրապնդելու, պարտիական կյանքի լենինյան նորմերը անշեղորեն կենսագործելու, պարտիայի շարքերի իդեական անաղարտության համար:

Պարտիական ակտիվը հավաստիացրեց ՍՄԿՊ լենինյան Կենտկոմին, որ «Հայաստանի պարտիական կազմակերպությունը էլ ավելի սերտորեն կհամախմբի իր շարքերը ՍՄԿՊ Կենտկոմի՝ մեր պարտիայի մարտական շտաբի շուրջը և մարքսիզմ-լենինիզմի անպարտելի դրոշի տակ իր բոլոր ուժերը կուղղի մեր երկրում կոմունիզմի կառուցման խնդիրների հաջող լուծմանը»[1]:

Պարտիական ակտիվի ժողովներից բացի, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը լայնորեն քննարկվեց ինչպես սկզբնական պարտիական կազմակերպությունների, այնպես էլ աշխատավորների ընդհանուր ժողովներում: Այդ ժողովները ամենուրեք վերածվեցին Կոմունիստական պարտիայի նկատմամբ մեր երկրի աշխատավորների սիրո և նվիրվածության վառ ցույցերի:

Հանդես գալով ժողովներում, սովետական մարդիկ գոհունակությամբ նշում էին այն հաստատակամ և հետևողական պայքարը, որ մղում է մեր պարտիան իր շարքերի միասնության համար. Նրանք ցասմամբ ու զայրույթով խոսելով հակապարտիական խմբի մասին, ջերմորեն հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշմանը, այն դիտելով որպես պարտիական և պետական մեծ նշանակություն ունեցող միանգամայն ճիշտ ու ժամանակին միջոցառում:

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները լայն արձագանք գտան մեր երկրի սահմաններից դուրս: Եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաները, սոցիալիստական երկրների բոլոր աշխատավորները ջերմորեն հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներին:

Մեր պարտիայի լենինյան միասնության, իր Կենտրոնական Կոմիտեի շուրջը նրա համախմբվածության նոր և հզոր ցույց հանդիսացավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, որը մշակեց մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ պլանը:

***

Լրանում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի ստեղծման 40-ամյակը: Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ Հայաստանի Կոմպարտիան անցած տարիների ընթացքում աճել ու ամրապնդվել է գաղափարապես և կազմակերպչորեն: Եթե 1922 թվականին ՀԿՊ-ն իր շարքերում ուներ մոտ 6000 պարտանդամ և պարտանդամության թեկնածու, ապա ներկայումս նրա շարքերում հաշվվում են ավելի քան 75 հազար մարդ: Ռեսպուբլիկայի աշխատավորները՝ ՀԿՊ ղեկավարությամբ Սովետական ժողովրդի եղբայրական ընտանիքում, ձեռք բերած պատմական հաջողություններով են դիմավորում Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 40-ամյակը:

Հայաստանի Կոմպարտիան միշտ դրսևորել է իր միասնությունն ու համախմբածությունը ՍՄԿՊ-ի, նրա լենինյան Կենտկոմի շուրջը, դարձել է նրա մարտական ջոկատներից մեկը: Այդ միասնությունը նրա հետագա հաջողությունների փայլուն գրավականն է:

---

[1] «Սովետական Հայաստան», 1957 թ., հունիսի 5:

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր երկրի ամբողջ պատմության ընթացքում տեխնիկական պրոգրեսի հարցը երբեք այնպես խորությամբ ու լայնությամբ չի դրվել, ինչպես այժմ՝ կոմունիզմի ծավալուն կառուցման շրջանում։*

*Պատմական զարգացման ներկա էտապում ավելի մեծ ուշադրություն նվիրելով տեխնիկական պրոգրեսի հարցերին, պարտիան ելնում է նրանից, որ աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի հիման վրա պետք է վճռական քայլ կատարել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ընտեղծման, ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման ուղղությամբ։*

*Արդյունաբերության և շինարարության տեխնիկական պրոգրեսի մասին պարտիայի Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների համաձայն ռեսպուբլիկայի արդյունաբերական բոլոր ձեռնարկություններում, այդ թվում և ժողտնտխորհի ձեռնարկություններում առաջավոր բանվորներից, ռացիոնալիզատորներից, ինժեներներից և տեխնիկներից ստեղծվեցին հանձնաժողովներ, որոնք պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ստուգեցին սարքավորումների վիճակը և տեխնիկական պրոգրեսի իրականացման գործում բացահայտեցին մի շարք լուրջ թերություններ։ Պարտիական կազմակերպությունները գործնական քայլերի դիմեցին դրանց վերացման համար։ Հունիսյան պլենումի որոշումներից հետո, պարտիական կազմակերպական աշխատանքի շնորհիվ, ԺՏԽ-ի ձեռնարկություններում իրագործվեցին 300-ից ավելի կարևորագույն միջոցառումներ, այդ թվում արտադրության պրոցեսների ավտոմատացման 146 և նորագույն տեխնոլոգիայի արմատավորման 55 միջոցառում, որոնք տնտեսական մեծ օգուտ տվեցին։*

*Տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ կատարվող գործնական քայլերին զուգընթաց գործարանային պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները գլխավորեցին բանվորների աշխատանքային նախաձեռնությունն ու խանդավառությունը։ Այդ և իրականացված մյուս միջոցառումների շնորհիվ ապահովվեց յոթնամյակի առաջին տարվա տեխնիկա-տնտեսական առաջադրանքների կատարումը և պլանից դուրս երկրին տրվեցին 326 միլիոն ռուբլու էլեկտրական մեքենաներ, ապարատներ, գործիքներ, մետաղահատ հաստոցներ, զանազան նյութեր և ժողովրդական սպառման այլ ապրանքներ։ Շարք մտան երկու տասնյակից ավելի արդյունաբերական նոր ձեռնարկություններ ու բաժանմունքներ, որոնց թվում՝ Երևանի, Լենինականի, Կիրովականի և Լուսավանի հաստոցաշինական գործարանները, Արզնու Քըզգըրտ տեխնիկական քարերի գործարանը, արհեստական կորունդ թողարկող բաժանմունքը՝ Կիրովականի քիմիական կոմբինատում, սպիրտի զտման բաժանմունքը՝ էջմիածնի գինու գործարանում։ Արտադրական ձեռնարկությունները յուրացրին 110 տեսակ նոր արտադրանքի արտադրություն. դրանք սպառվում են ո՛չ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս։*

*Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում յուրացվել է ֆրեզերային լայն ունիվերսալ հաստոցների արտադրությունը, որը լայնորեն կիրառվում է երկրի մեքենաշինական ձեռնարկությունների գործիքային արտադրության մեջ։ Լուսավանի հաստոցաշինական երիտասարդ գործարանի կոլեկտիվը յուրացրեց հորիզոնական ներտաշող հաստոցների սերիական արտադրությունը։ Երևանի հիդրոպոմպերի գործարանի պարտիական կազմակերպությունը կազմակերպական հետևողական աշխատանքով և նախապես կազմված գրաֆիկով ապահովեց միաբլոկ պոմպերի առաջին խմբի թողարկումը, որը հավանության է արժանացել Հիդրավլիկ մեքենաների համամիութենական ինստիտուտի կողմից։ Այս տարի գործարանը կթողարկի տասնյակ հազարավոր այդպիսի պոմպեր, նախկինում թողարկվող ագրեգատային պոմպերի փոխարեն։ Նոր, առավել կատարելագործված պոմպերի թողարկման շնորհիվ գործարանը կտնտեսի 40 տոկոսից ավելի մետաղ, որից պետությունը կշահի տարեկան 2 միլիոն ռուբլի։*

*Մեքենաշինական գործարաններում հատուկ տեխնոլոգիական գծերի ու կոնվեյերների տեղադրմամբ, գործարանային կոլեկտիվների ջանքերով կազմակերպվել է 35 հոսքային արտադրություն և արտադրության մեջ կիրառվել է 200-ից ավելի բարձր արտադրողական սարքավորում։ Երկրի խոշորագույն ձեռնարկություններից մեկը՝ Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանի պանծալի կոլեկտիվը այս տարվա ընթացքում երկրին կտա մի քանի տասնյակ հազարավոր սինխրոնային գեներատորներ և ուժային տրանսֆորմատորներ, որոնք նախատեսվում է օգտագործել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։*

*Տեխնիկական պրոգրեսի գծով ընթացիկ տարվա խնդիրների հաջող լուծումը մեծ մասամբ պայմանավորված է պարտիական կազմակերպությունների աշխատանքի մակարդակով, այն բանով, թե նրանք ինչ չափով են խորանում տեխնիկական պրոգրեսի հարցերում, ինչպես են հաղթահարում արտադրության հին մեթոդների ու աշխատանքի հին գործիքներին կառչած մնալու տենդենցները, արտադրության տեխնիկական միջոցների կատարելագործման ասպարեզում եղած խոչընդոտները։*

*Տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու գործում կարևոր դեր են խաղում արտադրական ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական կազմակերպությունների կողմից վերահսկելու իրավունքն իրականացնող հանձնաժողովները, որոնք կազմակերպված են ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի հունիսի 26-ի որոշմամբ։ ԺՏԽ-ի ձեռնարկությունների պարտկազմակերպություններում ստեղծված յուրաքանչյուր հինգ հանձնաժողովից մեկը նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի ներդրման, արտադրության պրոցեսների ավտոմատացման և մեքենայացման գծով պարտիական վերահսկողության հանձնաժողով է, որը որոշակի ազդեցություն ունի գործարանային կյանքի վրա։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ցեխային պարտիական կազմակերպություններին և պարտիական կոմիտեին կից կազ-*

մակերպված են 20 այդպիսի հանձնաժողովներ, որոնք իրենց գործունեու-
թյամբ լրացնում են միմյանց և օգնում գործարանին՝ իր առջև դրված խնդիր-
ները լուծելու։

Պարտկոմը, համաձայն իր աշխատանքի պլանի, քննարկեց արտադրու-
թյան պրոգրեսիվ տեխնոլոգիական մեթոդի արմատավորման հարցը, որը վա-
ղուց զբաղեցնում էր գործարանի ինժեներների միտքը։ Մշակվեց քլորոպրենի
անընդհատ պոլիմերացման եղանակը, որի արմատավորման շնորհիվ կրճ-
տվելու էր երկու տոկոսի հումք, կբարձրացվեր աշխատանքի արտադրողականու-
թյունն ու որակը, կբարելավվեին աշխատանքի պայմանները։ Սակայն այդ-
պիսի պրոգրեսիվ մեթոդի արմատավորումը ձգձգվում էր։ Պահանջվեց պար-
տիական կազմակերպության միջամտությունը։ Այս տարվա հունվարին մե-
քենայացման և ավտոմատացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներ-
դրման վերահսկողության հանձնաժողովը, որը ղեկավարում է ինժեներ Պ.
Կասպարովը, հանգամանորեն ուսումնասիրեց և պարզեց այդ առաջավոր մե-
թոդի արմատավորման գործում եղած ձգձգումների պատճառները։ Դրանից
հետո պարտիական կոմիտեն (քարտուղար Ռ. Գալստյան) ադմինիստրացիայի
հետ միասին մշակեց գործնական աշխատանքի պլան, այն հաշվով, որ մին-
չև ՀԿՊ XXI համագումարի բացման օրը պոլիմերացումը կատարվի նոր եղա-
նակով։ Այդպես էլ եղավ. կիրովցիները համագումար եկան իրենց խոստումը
կատարած։

Վ. Ի. Լենինի անվան մեքենաշինական գործարանի պարտիական կազ-
մակերպության անմիջական օգնությամբ տեխնիկական պրոգրեսի ողղու-
թյամբ մշակվել և արտադրության մեջ ներդրվել է ավելի քան 70 միջոցա-
ռում, տարեկան 3 100 հազար ռուբլի տնտեսական օգուտով։ Գործարանի
պարտիական կոմիտեն (քարտուղար Ս. Դավթյան) և նրա ցեխային պարտ-
կազմակերպությունները ուշի-ուշով և սիստեմատիկաբար քննարկում են նոր
տեխնիկայի ներդրման հարցերը։ Վերջերս պարտկոմը քննության առավ նոր
մեքենաների ստեղծմանն ու ներդրմանը վերահսկող հանձնաժողովի (նախա-
գահ Մ. Ղուկասյան) աշխատանքի արդյունքները։ Կոմիտեն պարտիական
կազմակերպությունների ու ադմինիստրացիայի ուշադրությունը հրավիրեց այն
բանի վրա, որ մի շարք կարևոր էլեկտրական մեքենաների («ԿՏՊ 180/10»,
«ԽՍՍ—80—4», «ԱՍԴ—50», «ՏՍՄԱ—180») նախագծերի մշակումը գիտա-
հետազոտական ինստիտուտի գործարանի ֆիլիալի կողմից ձգձգվել է 15—60
օրով։ Հատկապես նշվեց այդ գործում ֆիլիալի գլխավոր կոնստրուկտորի
բաժնի անբավարար աշխատանքը։

1959 թվականի սկզբներին էլեկտրատեխնիկական գործարանը Մոսկվայի
Օրջոնիկիձեի անվան հաստոցաշինական գործարանից ստացել էր երկու հիդ-
րավլիկ խառատային կիսաավտոմատ հաստոց՝ էլեկտրաշարժիչների լիսեռ-
ների մշակման համար։ Գործարանի մասնագետները այդ նոր, բարդ մեխա-
նիզմներին ծանոթ չլինելով, երկար ժամանակ չէին կարողանում դրանք ան-
խափան և արտադրողաբար աշխատեցնել։ Գործարանի մի քանի ինժեներա-
տեխնիկական աշխատողներ հայտնեցին այն կարծիքը, որ այդ հաստոցներն
իրենց կոնստրուկտիվ թերությունների պատճառով չեն արդարացնում իրենց,
չեն աշխատում արտադրողաբար։ Պարտիական կազմակերպությունը (քար-
տուղար Լ. Ղազարյան) գործարանի ղեկավարությունից պահանջեց գործա-
րան հրավիրել այդ հաստոցների «լեզուն հասկացող» մասնագետներ։ Ընդա-



ռաջելով պարտիական կազմակերպության պահանջին, գործարան եկան այդ
հաստոցները արտադրող ձեռնարկության մի խումբ մասնագետներ։ Նրանց
կարճատև աշխատանքից հետո հաստոցներն սկսեցին գործել անխափան և
նախագծային կարողությամբ։

Կահույքի ձեռնարկություններում արտադրվող կահույքի ողորկումը (փայ-
լեցումը) կատարվում է ձեռքով։ Դա կահույքի արտադրության ամենաաշ-
խատատար պրոցեսն է։ Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկայի պար-
տիական կազմակերպությունը և ադմինիստրացիան զբաղվեցին աշխատանքի
այդ պրոցեսը մեքենայացնելու հնարավորության հարցով։ Կարճ ժամանակ
անց ֆաբրիկայի մեխանիկ Ս. Ասատրյանը ներկայացրեց ողորկման պրոցե-
սը կատարող կիսաավտոմատ հաստոցի նախագիծը։ Ֆաբրիկայի ուժերով
ստեղծվեց մի պարզ, օրիգինալ հաստոց, որը կատարում է այդ աշխատատար
պրոցեսը։

ԺՏԽ-ի էներգետիկ վարչության պարտիական կազմակերպության ան-
դամ, ավտոմատացման խմբի ղեկավար Լ. Խուրշուդյանը, ռելեային պաշտ-
պանության ծառայության ղեկավար, կոմունիստ Ս. Հայրապետյանը և ծա-
ռայության աշխատակից Պ. Ջելենկոն մեծ ջանքեր ներդրեցին կապի նոր
սարքավորումների ստեղծման, հիդրոէլեկտրակայանների ավտոմատացման
համար նոր սխեմաների մշակման գործում, որոնք ապահովում են էներգա-
սիստեմների տարբեր օղակների անխափան աշխատանքը։

Ալյումինի գործարանի պարտիական կազմակերպությունը (քարտուղար
Կ. Հունանյան) կազմակերպական լայն աշխատանքով ապահովեց էլեկտրո-
լիզներից գազակլանման տեղակայանքի արմատավորումը, որը զգալի չափով
նպաստեց բանվորների աշխատանքի պայմանների լավացմանը։ Այստեղ մե-
քենայացվեց անոդների բարձրացման պրոցեսը պնևմոամբարձիչների միջո-
ցով։ Երևանի կաբելի գործարանի պարտկազմակերպության անդամներ Գ.
Սմբատյանը, Ռ. Երամջյանը, Հ. Սարգսյանը մշակեցին տեղակայման լարերի
պատրաստման նոր տեխնոլոգիա, որը տարեկան տալիս է 200 հազար ռուբ-
լու տնտեսում, իսկ Ս. Ղազախեցյանը, Ա. Կարապետյանը կատարելագոր-
ծեցին շլանգային կաբելների պատրաստման տեխնոլոգիան։

Էլեկտրալամպերի գործարանում արմատավորվել են լամպերի հավաք-
ման, կոլբաների և խողովակային ապակու պատրաստման ավտոմատացված
հոսքային գծերը։ Հաստոցաշինական և սարքաշինական գործարաններում
կիրառվեցին արագ գործող պնևմատիկ և հիդրավլիկ հարմարանքները, որոնք
զգալի չափով բարձրացրին աշխատանքի արտադրողականությունը։ Վ. Ի.
Լենինի անվան մետաքսի կոմբինատի գլխավոր ինժեներ, պարտիայի անդամ
Ջ. Հակոբյանը և ինժեներ Ավսեևան արմատավորեցին մետաքսի կոճերի
վերջնական մշակման հոսքային գիծը, որի տնտեսական օգտավետությունը
տարեկան կազմում է 1,5 միլիոն ռուբլի։

Էլեկտրատեխնիկական գործարանի փականագործ, կոմունիստ Մոշալովի
ղեկավարությամբ և անմիջական մասնակցությամբ լուրջ փոփոխություններ
մտցվեցին դրոշմիչների արտադրանքի տեխնոլոգիայում։ Դա հնարավորու-
թյուն տվեց դրոշմիչների մասերի պատրաստումը դարձնել հոսքային գծի
սկզբունքներով և դրանով իսկ ձեռքի աշխատանքը փոխարինել մեքենայական
աշխատանքով։ Ուշագրավ է նաև նրա մյուս առաջարկությունը, որի համա-
ձայն ստեղծված պարզ և օրիգինալ հարմարանքը մեքենայացնում է էլեկ-

տրաշարժիչների տարբեր մասերի հավաքման պրոցեսը։ Պակաս ուսանելի չէ գործարանի վերանորոգման ցեխից պարտիայի անդամ Մ. Զաքարյանի օրինակը. նա իր աշխատանքային ընկերների հետ միասին ստեղծեց և արտադրական գործածության մեջ դրեց բազմագլանային մկրատը՝ դինամային պողպատը ձևավորելու համար։ Այդ հարմարանքի տեղադրումը ցեխում աշխատանքի արտադրողականությունը բարձրացրեց 30 տոկոսով։

Բայց սխալ կլիներ կարծել, որ տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ ամեն ինչ բարեհաջող է։ Գործարանային շատ պարտիական կազմակերպություններ դեռ ինչպես հարկն է չեն գլխավորում տեխնիկական պրոգրեսի համար մղվող պայքարը։ Արդյունաբերական շատ ձեռնարկությունների օժանդակ և բեռնաբարձման-բեռնաթափման տեղամասերում գերակշռում է ձեռքի աշխատանքը։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանում օժանդակ աշխատանքներում կենտրոնացված է բանվորների ընդհանուր թվի 51,3 տոկոսը, իսկ տրանսպորտի աշխատանքներում՝ 8,7 տոկոսը։ Առայժմ մեքենայացված և ավտոմատացված են միայն առանձին ագրեգատներ և արտադրական պրոցեսներ։

Կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը դեռ չի դարձել պարտիական կազմակերպությունների կենտրոնական խնդիրը, ժողովրդական տնտեսության խորհրդի և նրա ճյուղային վարչությունների գլխավոր հոգսը։ Ժողովրդական տնտեսության խորհրդի տեխնիկական վարչությունը և սարքավորումների բաժինը համագործակցված աշխատանք չեն կատարում այդ ուղղությամբ։

Լուրջ ուշադրության բացակայության հետևանք է այն, որ ժամացույցի գործարանում, սարքավորումների և նյութերի առկայության պայմաններում չարմատավորվեց ժամացույցների իրանների կոնվեյերային ներկումը էլեկտրաստատիկ դաշտում և ինֆրակարմիր ճառագայթների միջոցով։ Ավտոպահեստամասերի գործարանում անցյալ տարվա երրորդ եռամսյակից մինչև օրս չի տեղադրվում 1600 տոննա ճիգով դրոշմիչը, որը հնարավորություն կտար անցնելու կռվածքների փոքրացված թողվածքներով դրոշմման պրոգրեսիվ մեթոդին։ Նույնպիսի օրինակներ կարելի է բերել կահույք արտադրող ձեռնարկություններից, էլեկտրալամպերի և այլ գործարաններից։

Ժողտնտխորհի ճյուղային վարչությունների տնտեսական ակտիվի խորհրդակցությունները ցույց տվին, թե արդյունաբերական ձեռնարկություններում որքան շատ ռեզերվներ և հնարավորություններ կան, որոնք, դժբախտաբար, անբավարար են օգտագործվում։ Այդ ռեզերվներից է հնացած արտադրական սարքավորումների մոդեռնացումը։

Հնացած սարքավորումների էտալոնը ընդունված է հաշվել բարոյական մաշվածությամբ, կոնստրուկտիվ և տեխնոլոգիական տվյալներով, սերիական արտադրության համար նոր մեքենաների կոնստրուկցիաների անհրաժեշտությամբ։ Դա հիմնականում տարածվում է մետաղահատ հաստոցների, դարբնոցամամլիչ մեքենաների, տեքստիլ և տրիկոտաժ արդյունաբերության սարքավորումների վրա։

Ժողովրդական տնտեսության խորհրդի մեքենաշինության, հաստոցաշինության ու էլեկտրատեխնիկական և սարքաշինության ձեռնարկությունների տեխնոլոգիական սարքավորումներն են՝ մետաղահատ հաստոցները և դարբնոցամամլիչ մեքենաները։ ԺՏԽ-ի մեքենաշինության և հաստոցաշինության



վարչության ձեռնարկություններում արտադրության պրոցեսին մասնակցող մետաղահատ հաստոցների ամբողջ պարկի 22 տոկոսը (կամ 5-ից մեկը) հնացած է։ Այդ տեսակետից բարվոք վիճակում չէ Լենինականի հեծանվի գործարանը, որտեղ յուրաքանչյուր 5 հաստոցից 3-ը հնացած են, ավտոպահեստամասերի գործարանում՝ 3-ից մեկը։ Մոտավորապես այդպիսի վիճակ գոյություն ունի նաև հիդրոպոմպերի, կոմպրեսորների գործարաններում։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունները փաստորեն ստեղծվել են վերջին տասնամյակի ընթացքում։ Այդ պատճառով էլ արտադրությանը մասնակցող հաստոցների պարկի միայն 15 տոկոսն է հնացած։ Բայց դա չի նշանակում, թե առանձին ձեռնարկությունների պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները անհանգստանալու հիմքեր չունեն։ Չպետք է մոռանալ, որ թեթև արդյունաբերության որոշ ձեռնարկություններում դեռևս փորձում են շատ հնացած սարքավորումներ։

Հաշվումները ցույց են տալիս, որ յոթնամյակի ընթացքում անհրաժեշտ է մեքենաշինության, հաստոցաշինության և սարքաշինության ձեռնարկություններում նորացնել 2400-ից ավելի հաստոց։ Նկատի ունենալով, որ արտադրվող ժամանակակից հաստոցները տեղադրվում են նոր գործարաններում և բաժանմունքներում, սարքավորումները մեծ ծավալով (տարեկան 250 միավոր) պետք է նորացնել միայն մոդեռնացման հաշվին։ Մինչդեռ 1958 թվականին մոդեռնացվել է ընդամենը 73, 1959 թվականին 245 հաստոց։ 1960 թվականին և հետագա տարիներին այդ թվերը չեն կարող համարվել բավարար։ Այդ ուղղությամբ մեծ աշխատանք է պահանջվում թեթև արդյունաբերության ձեռնարկություններում, ուր ամեն տարի պետք է մոդեռնացվի շուրջ 600 սարքավորում։

Ժողովրդական տնտեսության խորհրդի համապատասխան ճյուղային վարչությունների, նրա սարքավորումների բաժնի, Տեխնիկական վարչության և ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ մշակել հնացած հաստոցների մոդեռնացումն ապահովող պրակտիկ միջոցառումներ, ելնելով տվյալ ձեռնարկության կոնկրետ պայմաններից և պահանջներից։

Նոր տեխնիկայի արմատավորման գործում եղած թերությունները մեծ մասամբ արդյունք են պահպանողականության, որի դեմ սկզբնական պարտիական կազմակերպությունները դեռևս անհրաժեշտ պայքար չեն ծավալում։ Պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ վճռականապես վերջ տալ պահպանողական տրամադրություններին, ամեն կերպ արագացնել տեխնիկական պրոգրեսի տեմպերը, որի համար կան բոլոր պայմաններն ու հնարավորությունները։ Դրա լավագույն գրավականն է բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների անձնուրաց աշխատանքը, որը հիմնված լինելով ստեղծագործական համագործակցության և փոխադարձ օգնության վրա, վճռական ուժ է դարձել նոր տեխնիկայի անսահմանափակ զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ծնունդը, գագանովականների հիանալի հայրենասիրական շարժումը, մի քանի մասնագիտություններ տիրապետելու բանվորների ձգտումը, նրանց տեխնիկական գիտելիքների

մակարդակի բարձրացումը և անմիջական մասնակցությունը տեխնիկական պրոգրեսին՝ վկայությունն է այն հզոր ուժի, որը պետք է տեխնիկան առաջ շարժի բոլոր ուղղություններով։

Ձեռնարկություններում տարեցտարի աճում է ռացիոնալիզատորների և գյուտարարների թիվը։ Եթե 1958 թվականին ժողտնտխորհի ձեռնարկություններում կային 5875 ռացիոնալիզատոր և գյուտարար, ապա 1959 թվականին այդ թիվը հասավ 6782-ի և օրեցօր ավելանում է։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանն ունի 500-ից ավելի ռացիոնալիզատորներ և գյուտարարներ։ Դրանցից 220-ը ռացիոնալիզատորական առաջարկություններով հանդես են եկել առաջին անգամ՝ ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումից հետո։ Գործարանի ռացիոնալիզատորները 1959 թվականին արեցին 1300 առաջարկություն։ Այդ առաջարկությունների, որոնցից 1093-ը ներդրվել են արտադրության մեջ, տարեկան պայմանական օգտավետությունը կազմում է մոտ 7 միլիոն ռուբլի։ Գործարանի փականագործ Ա. Սարգսյանը, ցեխի պետ Ս. Գրիգորյանը և նրա տեղակալ Զ. Առաքելյանը անցյալ տարի հանդես եկան մի քանի առաջարկություններով, որոնց ներդրումից գործարանն ստացավ 1,5 միլիոն ռուբլու տնտեսում։ Ուշագրավ առաջարկությամբ հանդես եկան գործարանի գլխավոր ինժեներ Ն. Կարապետյանը, կենտրոնական լաբորատորիայի բաժնի վարիչ Խ. Խայկինան և լաբորատորիայի աշխատակից Ի. Բոշնյակովը։ Նրանք մշակեցին նայիրիտի ստացման նոր եղանակ։ Նոր տեխնոլոգիայով ստացված նայիրիտը փոխարինում է գուտապերչին և որպես սոսինձ օգտագործվում է կոշկեղենի արդյունաբերության մեջ։ Այդ առաջարկության արժեքավորությունը երևում է նրանից, որ երկրի ժողովրդական տնտեսության մեջ գուտապերչը նայիրիտով փոխարինելու շնորհիվ տնտեսվում է 20 միլիոն ռուբլի։

Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի 635 ռացիոնալիզատորներից և գյուտարարներից 180-ը կոմունիստներ են։ Պարտիայի անդամ Դերձակյանը արել է 43 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից 18-ը արդեն ներդրվել են արտադրության մեջ։ Առաջներում տրանսֆորմատորների կափարիչների վրա վինտերն ամրացնում էին ձեռքով՝ էլեկտրաաղեղային հերմետիկ զոդման միջոցով։ Դերձակյանը դրա փոխարեն առաջարկեց նոր տեխնոլոգիա, ըստ որի վինտերը զոդվում են առանց նախնական գայլիկոնման. այդպիսով աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է 30 տոկոսով, լավանում է արտադրանքի որակը, բարելավվում աշխատանքի պայմանները։

Էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի ապարատների բաժնի մի խումբ աշխատողներ մշակել են ավտոմատ հարմարանք՝ տրանսֆորմատորի կոճերի միջգալարային միացումները որոշելու համար։ Դա ներդրվեց արտադրության մեջ, որը մեծ չափով հեշտացրեց բանվորների աշխատանքը, բարձրացավ աշխատանքի որակը։ Այդպիսի բազմաթիվ օրինակներ կարելի է բերել ալյումինի, էլեկտրատեխնիկական, ավտոպահեստամասերի, կաբելի գործարաններից, որոնց աշխատանքի դրական փորձը արժանի է լայն տարածման։

Արդյունաբերական ձեռնարկությունների և ժողտնտխորհի պարտիական կազմակերպությունները դեռևս շատ ու շատ բան ունեն կատարելու տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ։ Գլխավորելով տեխնիկական պրոգրեսի համար



մղվող պայքարը՝ նրանք պետք է կոնկրետ և նպատակասլաց կերպով զբաղվեն արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հարցերով, պաշտպանեն և արտադրության մեջ արմատավորեն այն, ինչ առաջադիմական է, վճռական պայքար մղեն լճացածության, նոր տեխնիկայի ու նորարարների փորձի նկատմամբ անուշադիր վերաբերմունքի դեմ։ Պարտիական կազմակերպությունները պետք է անեն այն ամենը, ինչ անհրաժեշտ է տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ պարտիայի առաջադրած խնդիրները պատվով կատարելու համար։

Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի
պարտկոմի քարտուղար

## ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԲԱՐ

Սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերի հուժկու վերելքի պահին Մոսկվայում կայացավ կոմունիստական աշխատանքի բրիգադների և հարվածայինների կոչման մրցության առաջավորների համամիութենական խորհրդակցություն։

Խորհրդակցությունը ցուցադրեց սովետական ժողովրդի բացառիկ միասնությունը անմահ Լենինի պարտիայի շուրջը, ժողովրդի ստեղծագործական ուժերի չտեսնված աճը։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար սկսված շարժումը պայմանավորված է երկրում արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակով և բխում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման անհրաժեշտությունից։ Տեխնիկական ու տնտեսական արագ պրոգրեսը պահանջում է նոր վերաբերմունք դեպի աշխատանքը, ամենից առաջ՝ աշխատողների բարձր գիտակցություն և լուրջ գիտելիքներ։

Կոմունիստական աշխատանքի բրիգադների անդամները ձգտում են բարելավել արտադրական ցուցանիշները, պատվաստել կոմունիստական բարոյականություն, աշխատանքում և կենցաղում մարդկանց միջև կոմունիստական հարաբերություններ հաստատել։ Կոլեկտիվիզմի բարձր զգացմունքը, որն արտահայտվում է ետ մնացողներին օգնելու կամեցողությամբ, ընդհանուր վերելքի համար պայքարելու ցանկությամբ՝ սոցիալիստական մրցության նոր ձևի դրսևորումներն են։ Այդ նոր ձևի բնորոշ գիծը շարժման մասսայական բնույթն է, որի նպատակն է ոչ թե առանձին առաջավորների հասցնել ռեկորդային արդյունքների, այլև օգնել ետ մնացողներին, որպեսզի ամբողջ կոլեկտիվի աշխատանքում արմատավորվեն աշխատանքի առաջավոր եղանակները։

Ամբողջ ժողովրդին աշխատանքի նկատմամբ կոմունիստական ոգով դաստիարակելն այսօր մեր առաջնահերթ խնդիրն է։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչում նվաճելու համար ծավալված մրցությունը ոչ մեկ ամսվա և ոչ էլ մեկ տարվա շարժում է։ Դա կապված է նոր մարդու դաստիարակման, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ձևավորման խոր պրոցեսների հետ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի առնչությամբ ծնունդ առավ «Ապրել և աշխատել կոմունիստաբար» լոզունգը, որը դարձավ մասսայական շարժում՝ հանուն կոմունիզմի կառուցման։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական, պրոֆմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել և որոշ փորձ ունեն այդ բնագավառում։ Ներկայումս մրցության մեջ են մտել 1500 կոլեկտիվ, որոնցում ընդգրկված են մոտ 22 հազար մարդ. դրանցից լավագույնները արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչման։

Ստանձնած կոմունիստական պարտավորությունների բնույթը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր բանվոր և ինժեներա-տեխնիկական աշխատող ամեն կերպ ձգտում է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը՝ տեխնիկայի յուրացման, արտադրության ավտոմատացման ու մեքենայացման միջոցով։ Բանվորները պարտավորվում են առանց արտադրությունից կտրվելու բարձրացնել իրենց քաղաքական, կուլտուրական և տեխնիկական գիտելիքների մակարդակը, դառնալ բազմակողմանի զարգացած մարդ։

Երևանի էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանը 1958 թվականին մեծ դժվարություններ էր կրում պլանների կատարման գործում. պատճառն այն էր, որ գործարանը միկրոամպերմետրի մեջ դրվող երեք մասերի՝ շրջանակի, պահպանակի, հենակի կարիք էր զգում։ Հենակների մեծ մասը, իսկ շրջանակի և պահպանակի կարևոր մասերն ամբողջովին ստացվում էին երկրի հեռավոր գործարաններից։ Շատ հաճախ դրանք ուշանում էին, և խախտվում էր գործարանի ռիթմիկ աշխատանքը։ Լուրջ թերություններ կային նաև գործարանի մեխանիկական ցեխի հենակներ պատրաստող տեղամասում, որը հաճախ պլանները չէր կատարում, թողարկում էր խոտան։ Այդ վիճակը մտահոգում էր ցեխի կոմունիստներին և կոմերիտականներին։ Մի անգամ ցեխի ագիտատորն իր հերթական զրույցը նվիրեց ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինության զարգացման յոթնամյա պլանին։ Նա նշեց, որ ռեսպուբլիկայի սարքաշինական արդյունաբերության արտադրանքը յոթնամյակում կավելանա ավելի քան հինգ, իսկ իրենց գործարանի արտադրանքը՝ մոտ 3 անգամ։ Բոլորին ոգևորել էին գործարանի զարգացման հեռանկարները։ Հենց այստեղ էլ բրիգադավար Միքայել Մխիթարյանն առաջարկեց պայքարել կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար։ Առաջարկությունն ընդունվեց։ Մշակվեցին պարտավորություններ։

Պայքարի առաջին իսկ օրվանից բրիգադայի անդամները ձեռնամուխ եղան ավելացնելու հենակների արտադրությունը տեղում, սակայն չնայած բոլոր ջանքերին, վիճակը սկզբում չէր բարելավվում։ Պատճառն այն էր, որ պատրաստի հենակը հաստոցից հանելու և հաջորդը տեղադրելու համար պետք էր կանգնեցնել հաստոցը։ Հաստոցն անընդհատ կանգնեցնելը և գործի դցելը բանվորից հսկայական ժամանակ էր խլում, իջեցնում արտադրողականությունը։ Որոնումները շարունակվում էին համառորեն և, վերջապես, պսակվեցին հաջողությամբ։ Բրիգադավար Մ. Մխիթարյանի նորարարական առաջարկության շնորհիվ հնարավոր դարձավ հենակը հանելու և հաջորդը տեղադրելու գործողությունը կատարել առանց հաստոցը կանգնեցնելու։ Դա զգալի չափով բարձրացրեց արտադրողականությունը. եթե նախկինում 8 հոգով օրա-



կան արտադրում էին 2300—2500 հենակ, ապա այժմ 4 հոգով արտադրում են մինչև 5000 հենակ։ Այդ առաջարկության ներդրումը մեխանիկական ցեխի կոլեկտիվին հնարավորություն տվեց ոչ միայն առանց դրսի օգնության հենակներով ապահովելու գործարանը, այլև երկհերթափոխ աշխատանքից անցնելու մեկ հերթափոխի և տարեկան տնտեսելու 60 հազար ռուբլի։

Սակայն էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանի ռիթմիկ աշխատանքը լիովին ապահովելու համար անհրաժեշտ էր նաև կազմակերպել շրջանակների ու պահպանակների արտադրությունը տեղում։ 1959 թվականի հունվար ամսից սկսվեց նաև այդ երկու մասերի արտադրությունը, որը մեծ չափով նպաստեց գործարանի պլանների կատարմանը և գերակատարմանը։

Այդ երեք մասերի տեղում պատրաստման կազմակերպումն ու յուրացումը պահանջեց աշխատանքային տեղամասն ընդարձակել, բանվորների թիվն ավելացնել, առանձին վարպետ նշանակել։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար Միքայել Մխիթարյանը նշանակվեց տեղամասի վարպետ, իսկ առաջավոր բանվորուհի Մարիետա Դարբինյանը՝ բրիգադավար։ Բրիգադայի անդամները որոշեցին տիրապետել տեղամասի աշխատանքի բոլոր պրոցեսներին, հարկ եղած ժամանակ միմյանց փոխարինելու համար։ Սոս Ավագյանը, Լենա Կոմբոյանը, Վարդուհի Սարգսյանը և ուրիշներ այդ գործում համբերատարությամբ սկսեցին փոխադարձաբար օգնել իրար։ Այժմ նրանցից յուրաքանչյուրը տիրապետում է տեղամասի արտադրական բոլոր պրոցեսներին։

Տեղամասի բոլոր անդամներն ունեն միջնակարգ կրթություն, իսկ նրանց մի մասը շարունակում է ուսումը մասնագիտական տարբեր հաստատություններում, մյուսները կազմակերպված խմբակի միջոցով հարստացնում են իրենց գիտելիքները, բարձրացնում որակավորումը և համաձայն իրենց որոշման՝ ձգտում կուլտուր-տեխնիկական մակարդակով յոթնամյակում հասնել ինժեներա-տեխնիկական աշխատողների մակարդակին։

Կոլեկտիվի բոլոր անդամներն էլ ակտիվ կերպով մասնակցում են գործարանի հասարակական-կուլտուրական կյանքին։ Բրիգադան կոմունիստական գիտակցությամբ օժտված մի կուռ, համերաշխ կոլեկտիվ է, որի յուրաքանչյուր անդամ իր շահը միաձուլում է ընդհանուրի շահին, իր ուժերը ներդնում ընդհանուր գործին։ Այժմ նրանք բոլորն էլ իրենց արտադրական ցուցանիշներով և կուլտուրական վարքով օրինակելի են գործարանում։

Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար հայրենասիրական շարժումը թևակոխել է նոր փուլ. այն ծավալվելով, ընդգրկում է ավելի մեծ թվով աշխատողներ ունեցող ցեխեր, տեղամասերի կոլեկտիվներ։

Այդ տեսակետից ուսանելի է Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատի № 1 ցեխի փորձը։ Մ. Պապիկյանի ղեկավարած հերթափոխության կոլեկտիվը, առաջնորդվելով «սովորել, աշխատել, ապրել կոմունիստաբար» նշանաբանով, կարճ ժամանակամիջոցում ձեռք բերեց զգալի հաջողություններ և 1959 թվականի մարտ ամսին արժանացավ կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման։ Դա մեծ ոգևորություն առաջացրեց ցեխում և շուտով ամբողջ ցեխը, նրա բոլոր հերթափոխությունները մտան կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար մղվող պայքարի մեջ։ Եվ ահա ցեխի 193 հոգուց բաղկացած կոլեկտիվն ամսե-ամիս բարելա-

վում է իր աշխատանքը, թողարկվող արտադրանքի որակը։ Անցած 14 ամիսների ընթացքում ցեխն ամեն ամիս արժանացել է կոմբինատի դիրեկցիայի, պարտկոմի և գործարկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, կոմբինատում ծավալված մրցության մեջ առաջին տեղը գրավելու համար։ Միայն անցյալ տարի արտապլանային արտադրանքի ծավալը ավելացավ 4 անգամ, ցեխը թողարկում է միմիայն առաջին տեսակի արտադրանք, տալով էլեկտրաէներգիայի, հումքի և նյութերի մեծ խնայողություն։ Այստեղ համարյա բոլոր բանվորներն ունեն երկու մասնագիտություն և անհրաժեշտության դեպքում փոխարինում են մեկը մյուսին։ Առանց արտադրությունից կտրվելու տարբեր ուսումնական հաստատություններում սովորում են 40 մարդ։

1959 թվականին ցեխի ռացիոնալիզատորները տվել են 192 առաջարկություն, որոնցից 122-ը (տարեկան 200 հազար ռուբլու տնտեսական օգուտով) արդեն ներդրվել են արտադրության մեջ։

Կինո-նկարների կոլեկտիվ դիտումները, գեղարվեստական ցուցահանդեսներ, թանգարաններ հաճախելը, ընթերցած գրքերի քննարկումները, էքսկուրսիաները դեպի տեսարժան վայրերն ընդլայնում են ցեխի աշխատողների մտահորիզոնը, զարգացնում նրանց ճաշակն ու կուլտուրան։ Քրտնաջան աշխատանքը տվեց իր արդյունքը։ Ցեխը վերջերս արժանացավ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման։

Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար ծավալված շարժման հետ միասին մեր երկրի արդյունաբերական ձեռնարկություններում ծնունդ առավ նաև կոմունիստական աշխատանքի հարվածային կոչման համար պայքարողների հայրենասիրական շարժումը։ Ինչպես կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի, այնպես էլ կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում նվաճելու համար աշխատավորները պարտավորվել են արագորեն յուրացնել ժամանակակից տեխնիկան, ջանք չեն խնայում նորարարության, արտադրական պրոցեսների մեքենայացման միջոցով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Կոմունիստական աշխատանքի հարվածայինը սոցիալիստական հասարակության այն քաղաքացին է, որը վարպետորեն տիրապետում է աշխատանքին, բազմակողմանիորեն զարգացած է, կուլտուրական, ակտիվ կերպով մասնակցում է հասարակական կյանքին։ Դա յոթնամյակի անխոնջ մարտիկն է, որը քայլում է կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, սովխոզներում և կոլտնտեսություններում կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար այժմ պայքարում են ավելի քան 19 հազար աշխատավոր։

Ժողովրդական մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը կոմունիստաբար աշխատելու նորանոր ձևեր է հայտաբերում։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հիանալի օրինակ ցույց տվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վալենտինա Գագանովան, որի օրինակին ռեսպուբլիկայում արդեն հետևել են արտադրության 64 առաջավոր։ Դրանց թիվը գնալով ավելանում է։

Կոլտնտեսային աշխատավորությունը ձգտում է ժամկետից շուտ կատարել գյուղատնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսված առա-



ջադրանքները։ 1959 թվականին մեր ռեսպուբլիկայում ծնունդ առավ կոմունիստական աշխատանքի ևս մի նոր շարժում՝ «Հարուստ հեկտարի համար»։ Այս շարժման մասնակիցներն իրենց առջև խնդիր են դնում մաքսիմալ չափերի հասցնել մեկ հեկտարի բերքատվությունը, բարձրացնել գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը, կրճատել աշխատանքային ծախսերը, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման միջոցով ապահովել բարձր եկամուտ, ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ վաճառել պետությանը։

«Հարուստ հեկտարի համար» շարժման սկիզբը դրեց Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի Կիրովի անվան կոլտնտեսության՝ Գրիգոր Բարսեղյանի ղեկավարած բրիգադան։ Այդ շարժումը լայնորեն տարածվում է նաև Միության այլ ռեսպուբլիկաներում։ Գ. Բարսեղյանի բրիգադայի հիանալի նախաձեռնությունը կարճ ժամանակամիջոցում իր վրա բևեռեց ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորության ուշադրությունը։

«Հարուստ հեկտարի համար» մրցությունում, ընդօրինակելով շահումյանցիների փորձը, Վեդու շրջանի Թայթան գյուղի կոլտնտեսության Հ. Աբգարյանի բրիգադայի անդամները 1959 թվականին լավ աշխատանքի օրինակ ցույց տվին։ Պլանով նախատեսված 24 ցենտներ հացահատիկի փոխարեն նրանք ամեն մի հեկտարից ստացան 30 ցենտներ, 110 ցենտներ խաղողի փոխարեն՝ 135 ցենտներ։ Աբգարյանի բրիգադան ավելի բարձր պարտավորություններ է ստանձնել 1960 թվականի համար։ Այն պարտավորվել է յուրաքանչյուր հեկտարից ստանալ՝ 40 ցենտներ բամբակ, 40 ցենտներ հացահատիկ, 160 ցենտներ խաղողի բերք։

Գ. Բարսեղյանի բրիգադայի օրինակին հետևեց նաև Էջմիածնի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսության՝ Ս. Զաքարյանի ղեկավարած բրիգադան. «Մենք ևս ավելի բարելավեցինք վազերի, բամբակենու և բանջարանոցային կուլտուրաների խնամքը և բարձր բերք ստացանք,—ասում է Ս. Զաքարյանը։—1958 թվականին մեր այգիների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 44 ցենտներ, իսկ 1959 թվականին՝ 126։ Բամբակագործներն ամեն մի հեկտարից 44 ցենտներ բերք են հավաքել, իսկ բանջարաբույծները՝ 502 ցենտներ։ Այսուհետև ևս մենք կպայքարենք «Հարուստ հեկտարի համար»»։

Գլխավորելով ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի և հարվածայինի կոչման, ինչպես նաև «Հարուստ հեկտարի համար» ծավալված հայրենասիրական շարժումը, պարտիայի քաղկոմ-շրջկոմները զգալի աշխատանք են կատարել լավագույն բրիգադաների աշխատանքային փորձի ուսումնասիրման և ընդհանրացման, նոր կազմակերպվող բրիգադաներին օգնելու և կազմակերպչական աշխատանքներում նկատվող թերությունները վերացնելու ուղղությամբ։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ընդգծելով ռեսպուբլիկայի աշխատավորության ստեղծագործական վերելքը, միաժամանակ նշեց այդ գործում տեղ գտած թերությունները։ Ահա դրանցից մի քանիսը։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող կոլեկտիվների մի մասի ստանձնած պարտավորությունները ունեն միակողմանի բնույթ. նրանցում ընդգրկված են միայն աշխատանքային դաստիարա-

կության հարցերը, մոռացության են տրված գաղափարական, էսթետիկական դաստիարակության, ուսման, վարքի, կուլտուրայի և կոմունիստական հասարակարգի մարդու կենցաղի ձևավորման և այլ հարցեր։

Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի «Կարմիր ջուլհակ» ֆաբրիկայի գործվածքային ցեխը կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար իր ստանձնած պարտավորություններում ընդգրկել էր միայն արտադրական հարցեր. այդ իսկ պատճառով այդ պարտավորությունները ոչնչով չէին տարբերվում նրա մինչ այդ ստանձնած պարտավորություններից։

Ամեն մի կոլեկտիվ ձգտելով կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչման, պետք է լավ իմանա, որ դա նրա առաջ մեծ խնդիրներ է դնում, խնդիրներ, որ հնարավոր է կատարել միայն անբասիր աշխատանքով։

Սակայն հաճախ որոշ կոլեկտիվների կոչում շնորհելիս հապճեպություն է ցուցաբերվում։ Այդպիսի մոտեցումը օբյեկտիվորեն նպաստում է այդ կարևոր շարժման պարզունակացմանը։ Օրինակ, Կոտայքի շրջանի Արզնու ապակետարայի գործարանի Ա. Գարսոյանի ղեկավարած բրիգադային կոչում էր շնորհվել այդ կոչման համար պայքարի մեջ մտնելուց ընդամենը երկու ամիս հետո և միայն այն բանի համար, որ այդ երկու ամիսներին նրա ղեկավարած կոլեկտիվն իր արտադրական պլանները գերակատարել էր։ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարող հերթափոխությունների կոլեկտիվներից այլ հերթափոխություններ էին տեղափոխել աշխատանքում իրենց չարդարացնող, անկարգապահ բանվորներին։ Իսկ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում ո՛չ միայն որոշել են կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող կոլեկտիվները համալրել միմիայն առաջավոր բանվորներով, այլև այդ կոչման համար պայքարող բոլոր կոլեկտիվների համար մշակել են արտադրական նոր նորմաներ։ Նման մոտեցումը սահմանափակում է մրցման մեջ մտած կոլեկտիվի անդամների ստեղծագործական հնարավորությունները։

ՀԿՊ Կենտկոմի որոշումից հետո վերը նշված կազմակերպություններում նկատված թերությունները վերացվեցին, սակայն ուշադրությունը պետք է բևեռել նոր կազմակերպվող կոլեկտիվների վրա, որպեսզի նրանք զերծ մնան նման թերություններից։

Շատ պարտիական և կոմերիտական կազմակերպություններ զբաղվելով, հատկապես, արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում այդ շարժումն ընդլայնելու գործով, անքաթող են անում փոքր ձեռնարկությունները։ Մրցությունը կոմունիստական աշխատանքի համար մինչև օրս դեռևս լայնորեն չի ծավալվել հատկապես ռեսպուբլիկայի շինարարական օբյեկտներում։ Հարկավոր է այդ շարժման մեջ ընդգրկել աշխատավորության ավելի լայն խավեր։

Պետք է նշել, որ առանձին ձեռնարկություններում կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչում շնորհելու հարցում կա որոշ անորոշություն։ Փորձը ցույց է տալիս, որ ճիշտ են վարվում տեղական այն կազմակերպությունները, որոնք պայքարող կոլեկտիվներին կոչում են շնորհում տվյալ ձեռնարկության ընդհանուր ժողովում, պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և ադմինիստրացիայի ներկայացուցիչ-



ների հետ միասին կոմունիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը բազմակողմանիորեն քննարկելուց հետո։ Այդպիսի մոտեցումը հնարավորություն կտա այդ կազմակերպություններին՝ խուսափելու հապճեպությունից և սխալներից։

Ռեսպուբլիկայի պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ գլխավորել այդ շարժումը և այն լայնորեն տարածել։

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

## ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏ Պ. ՄԿՐՏՉՅԱՆԻ ՓՈՐՁԻՑ

Հրազդանի շրջանի Քաղսի գյուղում քաղլուսցանցի կոմպլեկտավորման ժամանակ կոմունիստները և անպարտիական ակտիվը միաբերան պահանջեցին գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակի պրոպագանդիստ նշանակել կոլտնտեսության նախագահ Պ. Մկրտչյանին, ասելով, որ այս պատասխանատու աշխատանքը ևս նա պատվով կկատարի։ Նրանք չսխալվեցին։ Ընկ. Մկրտչյանը լիովին արդարացնում է պրոպագանդիստի բարձր կոչումը։ Ունենալով գյուղատնտեսական մասնագիտական կրթություն և պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ, նա կարողանում է ուսումնասիրվող նյութը սերտորեն կապել կյանքի գործնական խնդիրների հետ, տեղական փաստերի միջոցով այն դարձնել կենդանի ու հետաքրքրական։

Կազմելով պարապմունքի պլան, ընկ. Մկրտչյանը ձևակերպում է նաև յուրաքանչյուր թեմայի գլխավոր նպատակը, որոշում հիմնական հանգուցային հարցերը։ Օրինակ, խմբակի ապրիլի 8-ի պարապմունքի՝ «Աշխատանքի նորմավորումը և վարձատրությունը կոլտնտեսություններում» թեման պլանավորել է այսպես.

1. Սոցիալիստական հասարակության հիմնական տնտեսական օրենքը։
2. Աշխօրը և նրա դերը կոլտնտեսային արտադրության մեջ.

ա) աշխօրը որպես աշխատանքի չափանիշ.

բ) աշխատանքի կոնկրետ տեսակների չափումը աշխօրերով.

գ) աշխօրից դեպի դրամական վարձատրություն։

3. Աշխատանքի նորմավորումը կոլտնտեսություններում.

ա) ճիշտ սահմանված նորման որպես արտադրությունը կարգավորող ուժ.

բ) աշխատանքի նորմավորումը ըստ արտադրական ճյուղերի, ելնելով տվյալ ճյուղի զարգացման անհրաժեշտությունից։

4. Գործավարձի կիրառումը կոլտնտեսություններում.

ա) անհատական և մանր խմբային գործավարձն անասնապահության և դաշտավարության մեջ.

բ) ինչո՞ւ մեր կոլտնտեսությունում չի կիրառվում անհատական գործավարձը։

5. Աշխատանքում անձնական շահագրգռվածության դերն ու նշանակությունը.

ա) անձնական շահագրգռվածության մեթոդի կիրառումը որպես աշխատանքի լավագույն գրավական.

բ) շահագրգռվածության բարձրացման ձևերն ու մեթոդները.

գ) կոլտնտեսականների ավանսային վարձատրումը։

Ունկնդիրները խոսելով այս կամ այն հարցի մասին, բնականաբար շաղկապում են նաև մյուս հարցերը և այն հաստատցնում իրենց կոլտնտեսությու-

նից բերված կոնկրետ օրինակներով։ Երվանդ Խուրշուդյանը, խոսելով աշխատանքի նորմավորման մասին, նշեց, որ կոլտնտեսությունում աշխատանքի ճիշտ նորմավորմամբ վերջին տարիներում բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Խոսելով պրոգրեսիվ նորմաների արմատավորման մասին՝ նա վկայակոչեց հարևան՝ Սոլակի կոլտնտեսության աշխատանքի դրական արդյունքներն այս ուղղությամբ։ Կովաբուծական ֆերմայի վարիչ Ս. Ենոքյանը (որը ֆերմա է գնացել Գագանովայի օրինակով), խոսելով գործավարձի կիրառման կարևորության մասին, նշեց, որ ծխախոտագործության և դաշտավարության բնագավառում իրենց կոլտնտեսությունում չի կիրառվում անհատական գործավարձը։ Ունկնդիր Բադալյանը խոսելով «Աշխօրը որպես աշխատանքի չափանիշ» հարցի մասին, ասաց, որ ներկայումս աշխօրն աստիճանաբար իր տեղը զիջում է դրամական վարձատրությանը և այլն։ Այս հարցն ամփոփելիս պրոպագանդիստը համոզիչ կերպով պարզաբանեց պարապմունքի ընթացքում ծագած վեճերը։

«Կոլտնտեսության եկամուտները և դրանց բաշխումը» նոր թեմային անցնելիս պրոպագանդիստը նախօրոք հաղորդեց թեմայի հիմնական հարցերը, հանձնարարվող մինիմում գրականությունը, ապա անցավ նյութի լուսաբանմանը։ Թեման նախապատրաստելիս Մկրտչյանը օգտվել էր ոչ միայն «Գյուղատնտեսության էկոնոմիկայի ձեռնարկ» դասագրքից, այլև պարտիայի ու կառավարության որոշումներից, առաջավոր կոլտնտեսությունների փորձից, գիտա-պոպուլյար գրականությունից և այլն։

Իր համառ և հետևողական աշխատանքի շնորհիվ Մկրտչյանը հասել է այն բանին, որ ունկնդիրները նյութը կոնսպեկտավորում են ոչ թե հարկադրաբար, այլ գիտակցաբար։ Պրոպագանդիստը սովորեցրել է նրանց մատչելի ձևով կոնսպեկտավորել նյութը և օգտվել դրանից։

Ընկ. Մկրտչյանը կազմակերպում է նաև այս կամ այն թեմայի շուրջ ռեֆերատների քննարկումներ։ Այսպես, հունվարի 10-ին ունկնդիր Հովհաննիսյանը կարդաց ռեֆերատ՝ «ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը և գյուղատնտեսության զարգացման խնդիրները Քաղսիի կոլտնտեսությունում» թեմայով։ Խմբակի պարապմունքից մի քանի օր առաջ պրոպագանդիստը օգնեց նրան՝ գտնելու թեմայի նպատակը և այն հիմնական հարցերը, որոնք պետք է շոշափվեին ռեֆերատում։ Քննարկումն անցավ աշխույժ, և ունկնդիրներն արեցին մի շարք դիտողություններ ու լրացումներ։ Հաշվի առնելով արժեքավոր դիտողություններն ու լրացումները՝ նա այդ թեմայով զրույցներ անցկացրեց անասնապահական ֆերմաներում ու դաշտավարական բրիգադներում։ Այսպիսով, ռեֆերատի քննարկման կազմակերպումը օգտակար է դառնում ոչ միայն խմբակի շրջանակներում, այլ խմբակում չընդգրկված կոլտնտեսականների համար։

Մկրտչյանը պարապմունքներն անց է կացնում ակտիվ զրույցի մեթոդով, պարզ ու մատչելի լեզվով, խուսափելով բարդ ու անհասկանալի բառերից։ Խմբակի պարապմունքի ժամանակ երբ պարզվում է, որ այս կամ այն ունկնդիրը դժվարանում է առանձին հարցերում, ապա պրոպագանդիստը նրա համար անցկացնում է անհատական կոնսուլտացիա։ Այսպես, օրինակ, «Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցի պատմական նշանակությունը» թեման ուսումնասիրելիս ունկնդիրներից շատերը պարզ պատկերացում չունեին խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի էության մասին և դա առաջ էր բերել վե-



ճեր։ Պրոպագանդիստն անմիջապես չհայտնեց իր կարծիքը. նա թույլ տվեց, որպեսզի ունկնդիրները խոսեն և այդ հարցը բացատրեց իր ողջ էությամբ։ Մկրտչյանը թեման ամփոփելիս զանազան հարցեր է տալիս ունկնդիրներին, որոնց պատասխանները ցույց են տալիս, թե ինչպես է թեման յուրացվել։

Երբ պրոպագանդիստը հնարավորություն չի ստեղծում կարծիքների ազատ ու անկեղծ փոխանակման, նա երբեք հաջողություն չի ունենա։ Մկրտչյանը ունկնդիրներին թույլ է տալիս կարծիքներ փոխանակել ուսումնասիրվող թեմայի շուրջ։ Եվ դա լավ արդյունք է տալիս։

Փորձը ցույց է տալիս, որ նյութի բազմակողմանի և խոր յուրացմանը նպաստում է դիդակտիկ նյութերի օգտագործումը։ Պատին փակցված են ցուցադրական դիագրամներ, որոնք ցույց են տալիս ՍՍՌՄ-ի, Հայկ. ՍՍՌ-ի և Քաղսիի կոլտնտեսության կուլտուրական ու տնտեսական նվաճումները, սկսած 1953 թվականից մինչև 1959 թվականը։ Մյուս դիագրամում պատկերված են կոլտնտեսության պլանները ընթացիկ յոթնամյակում և ստանձնած պարտավորությունները 1960 թվականին։ Ստենդներից մեկը ցույց է տալիս, որ 1960 թվականի առաջին եռամսյակում կոլտնտեսությունը նախատեսել է արտադրել 366 ցենտներ կաթ, արտադրվել է 792,4 ցենտներ, ձու՝ 20.000, ստացել են 23.000 հատ։

Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի կողմից հաճախակի է ուսումնասիրվել ընկ. Մկրտչյանի պրոպագանդիստական աշխատանքի դրական փորձը և կազմակերպվել այդ փորձի փոխանակում։

Մ. ՊՈՂՈՍՅԱՆ
ՀԿՊ Հրազդանի շրջկոմի
քաղլուս կաբինետի վարիչ

## ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԴԵՄՔԸ

Քաղաքական ուսուցման գլխավոր դեմքը պրոպագանդիստն է։ Նկատի ունենալով այդ՝ պարտիական կազմակերպությունները մարքս-լենինյան թեորիան մասսաներին մատուցելու գործը վստահել են այնպիսի ընկերների, որոնք ունեն տեսական ու հանրակրթական անհրաժեշտ պատրաստականություն, լավ են ճանաչում կյանքը, օժտված են մարդկանց վրա ազդելու, նրանց վերափոխելու ունակությամբ։ Այդպիսիներից է Արզնու ապակու տարայի գործարանի գլխավոր ինժեներ, պրոպագանդիստ Թաթուլ Կիրակոսյանը։

Քսանհինգ տարուց ավելի է, ինչ Կիրակոսյանը պրոպագանդիստական աշխատանք է կատարում։ Պարտուս ցանցի նախորդ ուսումնական տարում նա ղեկավարում էր արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարը, իսկ այս տարի՝ պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակը։ Օգտագործելով քաղաքական աշխատանքի երկար տարիների իր հարուստ փորձը, պրոպագանդիստը կիրառում է պարապմունքի անցկացման մեթոդական ճկուն ձևեր, կարողանում է ներգործել լսարանի վրա, ուսումնասիրվող նյութը դարձնել մատչելի ու տպավորիչ։

Նախքան պարապմունքի ներկայանալը Կիրակոսյանը բազմակողմանիորեն ուսումնասիրում է տվյալ թեման, առանձնացնում հանգուցային հարցերը։ Նա օգտագործում է կյանքից վերցրած կոնկրետ օրինակներ, ուսումնասիրվող նյութը կապում ձեռնարկության առջև դրված հրատապ խնդիրնե-

րի հետ։ Ահա թե ինչու խմբակում ուսուցումն ընթանում է քաղաքական բարձր մակարդակով և 30 ունկնդիրներից ոչ մեկը անհարգելի պատճառով պարապմունքներից չի բացակայում։

Պրոպագանդիստական աշխատանքի խելացի կազմակերպումը մեծ չափով նպաստում է կոմունիստների ակտիվության բարձրացմանը և աշխատանքի արտադրողականության վերելքին։ Պատահական չէ, որ 1959 թվականին գործարանը համախառն արտադրանքի թողարկման առաջադրանքը կատարեց 107 տոկոսով և արժանացավ երկրորդ կարգի մրցանակի։

Ձեռնարկության բանվորները և ինժեներա-տեխնիկական աշխատողները միշտ որոնում, հայտաբերում և գործողության մեջ են դնում նորանոր ռեզերվներ, որպեսզի Հայրենիքին տան ավելի շատ արտապլանային արտադրանք։ Նրանք միջոցառումներ են մշակել զգալիորեն ավելացնելու թողարկվող արտադրանքի քանակը, առանց արտադրական տարածությունն ընդարձակելու։

Երկու տարի առաջ այստեղ էին բերվել «ՎՎՄ—10» մարկայի երկու ավտոմատ մեքենա։ Այդ մեքենաները տեղադրելու համար նախատեսված էր կառուցել արտադրական նոր կորպուս այն հաշվով, որ 1963 թվականի վերջերին դրանք սկսեին արտադրանք տալ։ Կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարի հերթական պարապմունքներից մեկի ժամանակ ընկ. Թ. Կիրակոսյանը, խոսելով արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիների մասին, ցույց տվեց այդ ասպարեզում իրենց մոտ եղած, բայց դեռևս չօգտագործվող մի շարք ռեզերվներ։

— Ավելի քան 15 միլիոն ռուբլի պետք է ծախսենք արտադրական նոր կորպուս կառուցելու համար,—ասաց նա,—և երեք տարուց հետո միայն արտադրանք ստանանք։ Մինչդեռ մեր կատարած նախնական հաշվումները ցույց են տալիս, որ հնարավոր է աննշան վերափոխումներ կատարել ներկայումս գործող կորպուսներում և աշխատեցնել անգործության մատնված մեքենաները։ Դրա շնորհիվ կտնտեսվի 12—12,5 միլիոն ռուբլի և արտադրանք կըստանանք նախատեսված ժամկետից երեք տարի շուտ։

Դա հուզեց բոլոր ունկնդիրներին, որոնք պատրաստակամություն հայտնեցին ամեն կերպ օգնելու այդ խելացի միջոցառման կենսագործմանը։ Նրանցից շատերը մասնակցեցին արտադրական տեղամասերի վերակառուցման նախագծի մշակմանը. Նախագիծը հավանության արժանացավ ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի կողմից ու այժմ կենսագործվում է։

«Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ խնդիր է դրվում՝ քաղաքական լուսավորության կազմակերպման գործում լուրջ ուշադրություն հատկացնել կադրերի տնտեսագիտական ուսուցմանը, սեմինարներում ամեն կերպ խրախուսել տեսական այնպիսի թեմաների ուսումնասիրությունը, որոնք կապված են ունկնդիրների պրակտիկ գործունեության հետ։ Այդ շատ կարևոր հարցը մշտապես գտնվում է Հրազդանի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում։ Երրորդ տարին է, որ այնտեղ, բացի պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակից, գործում է գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարը, որտեղ ընդգրկված են 19 մարդ, այդ թվում կոլտնտեսության բրիգադավարներ, անասնաբուծության աշխատողներ և արտադրության առաջավորներ։ Սեմինարը ղեկավարում է կոլտնտեսության գյուղատնտես Գեղամ Հարությունյանը։ Նա բարեխղճորեն պատրաստում է անցնելիք նյութը, առանձնացնում թեմայի մեջ մտնող հիմնական հարցերը, այն հարստացնում իրենց կոլտնտեսությունից վերցրած կոնկրետ փաստերով։ Պարապմունքի ժամանակ նա օգտագործում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի մասին ակումբում եղած դիտողական նյութերը և դիագրամները։ Պարապմունքները հիմնականում անց են կացվում ակտիվ զրույցի ձևով. ունկնդիրների ելույթներից հետո սեմինարի ղեկավարը ամփոփում է թեման, պարզաբանում չյուրացված հարցերը և հանձնարարում հաջորդ թեման։ Ընկ. Հարությունյանի մոտ պարապմունքներն անցնում են հետաքրքրական, բովանդակալից և ունկնդիրները միշտ էլ ակտիվորեն են մասնակցում դրանց։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի նյութերի ուսումնասիրության ժամանակ սեմինարի ղեկավարը ընդգծելով վերջին տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու նպատակով պարտիայի ձեռնարկած միջոցառումների կարևորագույն նշանակությունը կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ մրցության մեջ, հանգամանորեն նշում է այդ ծրագրին իրականացնողների՝ գյուղատնտեսության առաջավորների հայրենանվեր գործերի մասին, հանգամանորեն վերլուծում կոլտնտեսության առաջավոր կթվորուհի Թամար Դավթյանի, դաշտավարական բրիգադայի բրիգադավարներ Գերասիմ Ասատրյանի, Վարազդատ Հովհաննիսյանի և ուրիշների աշխատանքի դրական փորձը։

— Մի՞թե կոլտնտեսությունում ավելի մեծ հնարավորություններ չկան անասնաբուծության մթերատվության, հացահատիկային կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացման համար,—հարցնում է ընկ. Հարությունյանը։

Այդ հարցն աշխուժացնում է ունկնդիրներին և մեկը մյուսի հետևից նրանք թվում են կոլտնտեսության ունեցած հնարավորություններն ու ռեզերվները։ Անասնաբույժ Գարուշ Հարությունյանը ցույց է տալիս, թե անասնաբուծական մթերքների ավելացման գործում որքան կարևոր նշանակություն ունեն հիվանդությունների դեմ տարվող պայքարի ուժեղացումը, անասունների ցեղի բարելավումը, արոտավայրերի ճիշտ և ռացիոնալ օգտագործումը, ինչպես նաև կերի կայուն բազայի ստեղծումը։ Մեխանիզատորական բրիգադայի բրիգադավար Սերյոժա Միքայելյանը նշում է, թե ինչպես անցյալ տարի ծխախոտի պլանտացիաները վատ մշակելու հետևանքով ստացվեց ցածր բերք։ Խոսելով իր բրիգադայի հնարավորությունների մասին, նա խոստացավ 1960 թվականին կրկնակի չափով բարձրացնել բերքատվությունը։ Ունկնդիրները խոսեցին նաև հացահատիկային կուլտուրաների բերքատվության ավելացման և այլ բնագավառներում տեղ գտած թերությունների ու դեռևս չլուծված խնդիրների մասին։

Սեմինարում ստացած գիտելիքները, անշուշտ, կօգնեն Հրազդանի կոլտնտեսության ղեկավար կադրերին՝ լավագույն ձևով կազմակերպելու կոլտնտեսային արտադրությունը, ժամանակին կատարելու գյուղատնտեսական աշխատանքները։

Օ. ՍԱՐԳՍՅԱՆ
ՀԿՊ Կոտայքի շրջկոմի քարտուղար

# ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

### ՆՎԻՐԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՄԻ ՔԱՆԻ ԷՋԵՐ



Երևան...

Աստաֆյան փողոց...

Փողո՞ց... Ավելի շատ դա հիշեցնում էր թատերական տեսարան, ուր ողբերգությունը խառնված էր կավեշտին, արցունքը հռհռոցին, «մեռնում եմ. մի կտոր հա՜ց», ճիչը՝ «է՜յ, человек, շամպայն» հարբած, կուշտ աղաղակին:

Աշնանային ծառերը լալիս էին՝ դեղին ու փիրավոր, և գունատ տերևները թափվում էին մաշված սալաքարերին: Բարակ անձրև էր մաղում: Փողոցում՝ մարդիկ, կառքեր:

Մարդիկ՝ դրանք հայ ժողովրդի բեկորներն էին, փախած թուրքական սրից, վաղուց մոռացած իրենց վերջին հացեն, հալածված, հուսաբեկ: Նրանցից շատերը նստած էին հենց այդտեղ, երևանյան փողոցի սալահատակին տարածած նախշանկար կապերտին, որ նրանց կյանքում փրկված միակ գունավարդ բանն էր երևի: Շատ մայրեր փոքրիկների համար ճոճ էին կապել պուրծ ծառերից և երբ օրորում էին, կարկտի պես ներքև էին թափվում դեղին տերևները: Մի ուրիշ տեղ պառավ մի կին հենց մայթին չոքած՝ խաչակնքում էր, հայացքը՝ ոչինչ չտեսնող և չլսող աստծուն, այստեղ-այնտեղ, պատերի տակ, նիհար բռունցքի պես սեղմված էին տղամարդիկ, որ արդեն ուժ չունեին տեսնելու, թե ինչպես մի կտոր հաց երազելով նվաղում են իրենց զավակները:

Կառքեր. դրանք կամ սլանում, կամ սողում էին դեղին տերևներով ծածկված թաց սալահատակի վրայով և իրենց շուրջը տարածում հայհոյանք, գինեհոտ, ճիչ: Այդ կառքի տերերը կոչվում էին պենքի անունով—**մաուզերիստներ:** Եվ դա հազար անգամ ճիշտ էր, հիմնականը մաուզերն էր, որը նրանք ամենուր թափահարում կամ կրակում էին:

Երևան:

Աստաֆյան փողոց:

1919 թ. աշուն... Դաշնակների տիրապետության «ամենափառավոր» ժամանակը, ամենաողբերգականը հայ ժողովրդի ապրած բոլոր աշուններից:

Բայց դա վերջինն էր լինելու՝ տառապանքի ու բռնության վերջին աշունը: Գարունը հեռու չէ, հեռու չէ ազատության օրը: Այսպես էին երազում... Երազո՞ւմ, ո՜չ, այլ դրա իրականացման համար գործում էին հայ ժողովրդի լավագույն զավակները:

Գործում էր և այն մարդը, որ գունատ դեմքով, պենսնեն աչքերին քայլում էր Աստաֆյան փողոցով: Նրա աչքերից ոչինչ չէր վրիպում: Ծանր մշուշ էր նրա հոգում: Աստաֆյան փողոցում կարծես ցուցադրվում էր հայոց ողբերգությունը, կարծես ավերակների միջով էր նա քայլում: Մտքերը խռնվել էին ուղեղում, խռնվել էին հարցեր, որոնց լուծումը հարկավոր էր գտնել և գտնել անմիջապես:

— Է՜, դեղագո՛րծ,— հանկարծ լսեց նա գլխավերևում: Հայացքը բարձրացրեց. կողքին կանգ առած կառքը համարյա քսվում էր նրան, բայց դրանից չէ, որ նա ետ ընկրկեց: Զզվելի էր նայել հարբած մաուզերիստի՝ բիֆշտեքսի պես կարմրած դեմքին:



— Է՛յ, դեղագո՛րծ,— շարունակում էր հարբածը, կոնյակի բաժակը նրան մեկնելով.— խմի՛ր ծովից-ծով Հայաստանի կենացը...

Ակնոցների հետևից նայող աչքերը հեգնող էին, պողպատի պես սառը: Ի՞նչ կարող էր նա ասել այդ կիսամարդուն, ի՞նչ կարող էր նա հասկանալ...

— Խմի՛ր, խմի՛ր,— աղաղակում էր հարբածը, երբ հանկարծ ծառս եղան ձիերը, և կառքն առաջ թռավ: Մաուզերիստն ընկավ բազմոցին և կոնյակի շիթերը մնացին նրա յուղոտ, կենդանական դեմքին:

Իսկ մարդը նայում էր կառքի հետևից՝ խայթող հայացքով: Կարո՞ղ էր արդյոք մտածել այդ մաուզերիստը, որն իրեն ողջ Հայաստանի տերն էր համարում, թե ուղիղ մի տարի անց ակնոցավոր այդ «դեղագործն» է ստորագրելու իր և իրենց ամբողջ ռեժիմի կործանման թուղթը: Կարո՞ղ էր արդյոք մտածել, որ համատարած վշտի և ավերածության օրերին այդ մարդը մեկն էր նրանցից, որ տեսնում էր այդ փողոցը, Երևանը, Հայաստանը՝ ազատված, երջանիկ:

...1919 թվականի աշուն...

Երևան...

Աստաֆյան փողոց... Փողոցով քայլում էր Սարգիս Կասյանը՝ լենինյան գվարդիայի պայծառ պինվորներից մեկը, որն այստեղ էր եկել պատմական առաջադրանքով, նվիրական ծրագրերով...

* * *

...Իսկ մինչև այդ աշո՞ւնը: Արդյոք նրա՞ համար, որ ժամանակ ուներ մինչև Ասքանազի գալը, արդյոք նրա՞ համար, որ նոր էր Հայաստան եկել, և անցյալը, կարծես, հանկարծ պատմություն էր դարձել, Սարգիս Կասյանի սրտում խլրտացին հիշողությունները, արթնացան թանկագին, նվիրական անունները...

23—24 տարեկան էր, երբ Գերմանիա գնաց՝ սովորելու: Լայպցիգ—առևտրական ինստիտուտ, ապա Բեռլին—փիլիսոփայության ֆակուլտետ. XX դարի առաջին տարիներ... Ուսումն ավարտելուց հետո նրան շնորհում են փիլիսոփայական գիտությունների դոկտորի գիտական աստիճան:

Այդ ժամանակ, Եվրոպայից Ռուսաստան էին թռչում հարյուրավոր կայծեր, որոնք մի անուն ունեին՝ «Искра»: Եվ հայ երիտասարդը ժամերով կռանում էր այդ բարակ, մանրատառ թղթերին, աչքերով, իսկ ավելի շատ սրտով և գիտակցությամբ կլանում յուրաքանչյուր բառ, յուրաքանչյուր միտք:

...1905 թվական, Բաքու: Նա նորից հարազատ վայրերում էր, բայց արդեն իբրև բոլշևիկ, արդեն անգիր արած լենինյան «Ինչ անելի» շատ էջեր, արդեն իմանալով, թե ինչ է հարկավոր անել...

Լարված, էլեկտրականացած տարիներ: Դեպքերը խառնվում են իրար, կորչում է հիշողության թելը: Հիշելու ժամանակ չկա: Բաքվում, Անդրկովկասում հասունանում էր ժողովրդական պայթյունի ալիքը, այդ ալիքը ղեկավարելու համար ավնիվ, համարձակ մարտիկներ էին հարկավոր: Այդպիսին էր Կասյանը: Այդ տարիներին նա իր ողջ եռանդը նվիրաբերում էր հայ, ռուս և ադրբեջանցի բանվորների բարեկամության գործին: Այդ մասին էր նա խոսում և՛ «Բանվորի կռվի», և՛ «Կայծի», և՛ «Նոր խոսքի» էջերում, և՛ բանվորական հավաքույթներում, միտինգներում...

Հետո՞: Հետո ողջ Ռուսաստանը մտցրին ստոլիպինյան ռեակցիայի սառնարանի մեջ: Բայց դա վերջին ճիգն էր, մեռնող գայլի վերջին մղումը. 1912 թվականի գարունը ճեղքեց ռեակցիայի սառցաբեկորները, և նորից աղմկեցին ռևոլյուցիայի վտակները:

Չի մոռանա այդ օրը. 1913 թվականի ապրիլ: Թիֆլիսի բուսաբանական այգում հավաքվել էին հարյուրներ: Նրանք երազում էին ազատություն, խաղաղություն, հաց, երջանկություն: Եվ Սարգիս Կասյանը նրանց հետ խոսում էր այդ ամենի մասին, խոսում էր կրակված հոգով: Բանվորական պայծառ դեմքերը դեպի հռետորն էին ուղղված հավատով, վստահությամբ: Կասյանն ասում էր, որ մի քանի օր հետո մայիսն է, և հարկավոր է փողոց դուրս գալ, հարկավոր է նորաբաց գարնան ձայներին խառնել բանվորական պողպատե ձայները և պահանջել Հա՜ց: Երջանկությո՜ւն: Ազատությո՜ւն:

Մի քանի օր անց, սակայն, Կասյանը Մետեխի բանտում էր: Ոստիկանական շները գտել էին նրա հետքը: Բայց ռևոլյուցիայի զինվորը բանտում էլ չի կորացրվում, նա այստեղ էլ մարտական դիրքերում է. Կասյանն սկսում է աշխատել բանտարկյալների մեջ... Այդ էլ գաղտնի չի մնում:

Եվ ահա՝ մնաս բարով Թիֆլիս: Նրան փոխադրում են Աստրախան, իսկ հետո՝ Վոլոգդա:

Վոլոգդա... Այս հուշը հանկարծ արևով լցրեց Կասյանի սիրտը. չէ՞ որ այստեղ, ռուսական գորշ քաղաքի պատերի մեջ նրան հասան «Ավրորա»-ի համազարկերը: Այդպիսի առավոտ չէր տեսել աշխարհում և ոչ մի բանտ. անծանոթ, օտար մարդիկ համբուրում էին իրար և լալիս:

Սարգիս Կասյանը վերադարձավ Թիֆլիս: Նորից ռևոլյուցիոն գործ, միտինգներ, ցույցեր: Մենշևիկներին հաջողվում է նկատել Կասյանի հետքերը, բայց նա փախչում է Հայաստան:

Եվ ահա, Երևան, Աստաֆյան փողոց...

* * *

— Սարգի՞ս,— շուռ եկավ. դե, իհարկե, Ասքանազն է, Մռավյանը:— Գնանք:

— Ովքե՞ր են լինելու,— հարցրեց Կասյանը:

# ՓՈԹՈՐԿԻ ՄԻՋՈՎ



Դեռ չէր ցամաքել դատավճռի տակ դրված ստորագրությունների թանաքը, դեռևս դահլիճից չէին հեռացել դատավորը, դատախազը, երդվյալները, փողոցում արդեն ժողովրդի բազմության մեջ մերթ ցածրաձայն, մերթ բարձրագոչ հնչում էին անհանգիստ ձայներ:

— Տանում են, տանում են: Կալանավորներին տանում են:

Պահակախումբը նրանց տանում էր քաղաքի ցեխոտ, նեղ փողոցներով, բայց ո՞ւր: Այդ առայժմ գիտեին քչերը միայն՝ հարազատները, մերձավորները: Լաց, հեծկլտոց, արցունք...

Ոստիկանները շուտ-շուտ հեռու էին քշում ամբոխին, սպառնագին շտապեցնում կալանավորներին: Բայց քառասունին մոտ մի կին ոչ մի ուշադրություն չէր դարձնում դրա վրա, նա նույնպես արագացնում էր քայլերը, կրնկակոխ հետևում նրանց, իր տասներեքամյա տղայի ձեռքից բռնած, աչք չհեռացնելով ամուսնուց: Նա քայլում էր ու լալիս, աղաչում էր, գթություն խնդրում:

Տարիքավոր որմնադիրը մի անգամ էլ նայեց կնոջ ու որդու կողմը: Նրա շուրթերից հնչեցին հրաժեշտի վերջին խոսքերը՝ «Մնաք բարով: Այս անգամ արդեն երկար ժամանակով: Բայց մենք դեռ կվերադառնանք... Լա՛վ նայիր տղայիս, Սալմինա՛կ... Մեշեդի՛, հարազա՛տս... Մեշեդի ջան, իմ միակ զավա՛կ...»:

Այս խոսքերն ընդհատվեցին մտրակի հարվածներից, որ իջան նրա գլխին, դեմքին, մեջքին: Անգութ ուղեկցորդը մի գլուխ գոռում էր. «Է՛յ, մի՛ դանդաղիր, խռովարար»: Հերթական հարվածը հասցնելով «խռովարարին», նա անողորմաբար մտրակեց նաև հանդուգն կնոջը: Կինը մի կողմ քաշվեց և սկսեց անեծքի կարկուտ տեղալ: Տղայի խոշոր, խորաթափանց աչքերը վայրկենապես լայնացան: Ատամները սեղմած՝ նա քարացավ տեղում և ամուր սեղմեց փոքր-ինչ վեր բարձրացրած բռունցքները:

Բանվորները վրդովվում էին, բողոքում: Տարերայնորեն ռևոլյուցիոն շարժում ծագեց: Շահագործողների դեմ սկսված այդ տարերային ելույթներին շատերի հետ միասին ակտիվ մասնակցություն էր ունեցել նաև Ազիզ-Բեկ Ազիմ Բեկ Օղլի Ազիզբեկովը, այն որմնադիրը, որին տանում էր պահակախումբը: Նա Բաքվի բանվոր էր, սպիտակ քարի որմնադիր վարպետ, Մեշադի-Բեկ Ազիզբեկովի հայրը: Ծերունի որմնադիրը վախճանվեց Սիբիրում, աքսորավայրում: Բայց նրա և իր ընկերների գցած սերմերը ծիլեր տվին, ռևոլյուցիոն փոթորիկ բարձրացրին Բաքվում: Ահա այդ փոթորկի միջով անցան Մեշադի-Բեկ Ազիզբեկովի անուրախ մանկության ու պատանեկության տարիները, նրա ամբողջ գիտակցական կյանքը:

❋❋❋

Բանվորական ընտանիքը զրկվեց իր գլխավորից, որբացավ: Ազիատսկայա փողոցի (ներկայումս Պյոտր Մոնտինի փողոց) № 107 տան կյանքը դարձավ տխուր ու ծանր: Անասելի արագությամբ ու անկուսպ կերպով կարիքն ու զրկանքը իրենց մահացու գիրկն էին առնում նույնանման հազարավոր ընտանիքներ. կրտսեր Ազիզբեկովը այդ ամբողջ զարհուրելի տեսարանի կենդանի վկան էր: Դրա ճնշող ծանրության տակ նրա հոգու խորքում ավելի հաճախ ու ավելի ուժգին էին հնչում հոր աքսորման ժամանակ չարտասանած խոսքերը՝ «Գնա՛ս բարով, հա՛յր, ձեր սկսած արդար գործը մենք մինչև վերջ կհասցնենք»: Դեռ այն ժամանակ նրա մեջ բռնկել էին բողոքի կայծեր, որոնք պատրաստ էին բորբոքվելու, բոցավառվելու: Իսկ նրա մայրը ոչ մի րոպե չէր մոռացել ամուսնու կտակը՝ «Լա՛վ նայիր որդուս, Սալմինա՛կ»: Նա ամբողջովին նըվիրվել էր որդու դաստիարակության ու կրթության գործին, մեծ դժվարությամբ նրան տեղավորեց Բաքվի ռեալական ուսումնարանում: Հետագայում նա կարողացավ Մեշադի-Բեկին փոխադրել Թիֆլիսի ռեալական ուսումնարանը, բայց հետո, տնտեսական ծանր դրությունը ստիպեց նըրան վերադարձնել Բաքու:

Վրա հասավ 1896 թվականի հունիս ամիսը: Բոլոր դժվարություններն արդեն անցած են: Մեշադի-Բեկը հաջողությամբ ավարտեց Բաքվի ռեալական ուսումնարանը և նրա լրացուցիչ դասարանները:

— Դե՛հ, իսկ հիմա՞, զավակս,— գոհունակ սըրտով հարցրեց Սալմինազը՝ ամուր կրծքին սեղմելով Մեշադի-Բեկի ավարտական վկայականը և գրկելով ու համբուրելով որդուն:

— Հիմա էլ աշխատանքի կմտնեմ. չէ՞ որ հարկավոր է օգնել քեզ,— պատասխանեց որդին մոր հպարտությամբ ուրախացած:

— Չէ, որդիս, ես մի կերպ ծայրը ծայրին կհասցնեմ: Քեզ հարկավոր է ուսումդ շարունակել, բարձրագույն կրթություն ստանալ:

— Նույն ամառը, օգոստոսյան մի շոգ օր քսանամյա պատանին մեկնեց հեռավոր ճամփորդության՝ Պետերբուրգ: Թեև այստեղ էլ ստիպված էր շատ դժվարություններ հաղթահարել (չէ՞ որ նա աքսորականի որդի էր, այն էլ՝ ադրբեջանցի), բայց Մեշադի-Բեկը հաջողությամբ հանձնեց ընդունելության քննությունները և մտավ Պետերբուրգի Տեխնոլոգիական ինստիտուտը: Ճակատագիրը նրան մի փոթորկից նետել էր մյուսի մեջ՝ Բաքվից՝ Պետերբուրգ, ռևոլյուցիոն մի օջախից մյուսը, հուլված Կասպիից՝ մրրկահույզ Բալթիկա:

Ցարական կայսրության մայրաքաղաքում կովկասցի ուսանողի առաջ ամբողջ հասակով կանգնեց այն նույն զարհուրելի պատկերը, որ տեսել էր նա Բաքվում. ժողովուրդն իրավազուրկ է, նա դաժանորեն ճնշվում է: Եվ նա ընդվզում է... Ահա այստեղ, ռուսական ռևոլյուցիայի այս փառապանծ օրրանում էլ տեղի է ունենում նրա առաջին մարտական մկրտությունը, գործնականորեն մարմնավորվում է Ազիզբեկովի վաղուցվա նվիրական իղձը՝ կանգնել ժողովրդի լուսաշող ապագայի համար մարտնչողների շարքերում:

Վերջապես բորբոքվեց կրակը, բռնկվեց անմար բոցը:

Ճիշտ է, փշոտ էր այդ ճանապարհը, դժվարին, բայց երիտասարդ Մեշադի-Բեկին այդ ամենևին չխանգարեց ինստիտուտում եղած բոլոր տարիներին ուսումը զուգակցել ռևոլյուցիոն եռանդուն գործունեության հետ: Դասագրքերի հետ միասին նրա սեղանի գրքերը դարձան Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները: Մարքսիստական ուսմունքի այդ գանձարաններից նա շատ բան էր քաղում, վերջնական ու սպառիչ պատասխաններ էր գտնում այն բոլոր հարցերին, որոնք նրա մեջ ծագում էին դեռ մանկական տարիներին. «Ձերբակալում, հեռավոր Սիբիր են աքսորում: Ինչի՞ համար, ի՞նչ հանցանքների համար»: Ինչպիսի՜ եռանդով էր նա կարդում և ուսումնասիրում ռուս գրականությունը, մանավանդ ռուս ռևոլյուցիոն-դեմոկրատների՝ Դոբրոլյուբովի, Չերնիշևսկու և մյուսների աշխատությունները: Քանի՜, քանի անգամ նա հպարտությամբ կրկնում էր. «Եթե իմ առաջին մայրը Սալմինազն է, ապա երկրորդ մայրըս է Չերնիշևսկու «Ինչ անել»-ը: Նրանք երկուսն էլ ինձ դաստիարակել ու աճեցրել են»:

1897 թվական: Պետերբուրգի ուսանողների տասը հազարանոց մասսան ռևոլյուցիոն երգերով ցույցի է դուրս եկել: Ազիզբեկովը երթի առաջին շարքերում է: Նրա շուրթերից քաղաքական լոզունգներ են հնչում ցարի դեմ: Բայց դա որքա՛ն թանկ նըստեց նրան: Ազիզբեկովին նետել են բանտի մենախուցը: Բայց մեղադրական ապացույցները քիչ են: Ժանդարմների ճիրաններից դուրս պրծնելով՝ Մեշադի-Բեկն է՛լ ավելի ակտիվորեն է լծվում ռևոլյուցիոն պայքարի, իսկ մի տարի հետո, 1898 թվականին արդեն մտնում է Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական պարտիայի շարքերը, դառնում ուսանողական ռևոլյուցիոն շարժման ակտիվ ղեկավարներից մեկը:

❋❋❋

...1904 թվականի վերջն է: Ձմեռային մի ցուրտ առավոտ Բաիլովի էլեկտրակայանը եկավ մի երիտասարդ, որը դեռ իր հագից չէր հանել ուսանողական տարազը: Այդ օրվանից նա դարձավ էլեկտրիկ-ինժեներ: Առաջին պաշտոնը, աշխատանքային գործունեության սկիզբը: Իսկ որքա՛ն ուրախ է Սալմինազը: Նրա զավակը մարդամեջ է մտել: Էլեկտրակայանի տերն էլ հիացած է: Եկել է թարմ ուժերով, հարուստ գիտելիքներով մի մասնագետ: Թեև էլեկտրիկ-ինժեները կայտառ է, բարձր տրամադրությամբ, բայց նրան ոգևորողը այդ պաշտոնը չէ: Նույնիսկ ձեռնարկատիրոջ հետ բանակցելու րոպեներին նրան կոչում, ոգևորում էր մի ուրիշ՝ վեհ, նվիրական նպատակ. «Ինչպե՛ս անեմ, որ շուտ հանդիպեմ նրանց հետ, խոսենք, պայմանավորվենք... գործի անցնենք... Ստեփան, Ալյոշա, Վանյա...»: Չէ՞ որ անհամբեր նրան էին սպասում մարտական բարեկամները, դասակարգային պայքարի զինակիցները, որոնց հետ նա սերտ մտեր-

նրան ուղեկցող ընկերները այն տպավորությունն էին ստացել, որ գյուղացիներն անկեղծորեն վըստահում են Բաքվի Սովետին: «Մուսավաթ»-ը վերջնականապես վարկաբեկված է և, ընդհակառակն, սոցիալիստական կազմակերպությունները մուսուլմանական դեմոկրատիայի վրա ավելի ու ավելի մեծ ազդեցություն է ձեռք բերում»:

Տասնութ թվականի հունիսյան շոգ օր: Տրանսպորտային նավի տախտակամածի վրա միտինգ է: Ստեփան Շահումյանը ճառ է արտասանում: Նրա կողքին Մեշադի-Բեկն է: Երկաթե ճաղերին հենված՝ նա նայում է միտինգի կողմը, բայց նրա հայացքն ընդգրկում է նաև ուրիշ նավեր: Նայում է և ուրախ ժպտում, իսկ ուրախությունից սիրտն ավելի արագ է պարկում: Եվ ինչպե՞ս չուրախանա: Չէ՞ որ սա առաջին քարավանն է, որ Բաքվի նավթը վերցրած մեկնում է դեպի Սովետական Ռուսաստան: Ռուսաստա՛ն, ռուս բանվորներին օգնության, ջա՛ն Ռուսաստանն էլ պատասխանում է. հյուսիսից Բաքու են գալիս հաց, պարենամթերք, ռազմական հանդերձանք, դրամական օգնություն:

Վրա հասան Կոմունայի կյանքի համար դժվարին հուլիսյան օրերը: Բաքուն ներքին ու արտաքին կոնտրռևոլյուցիայի օղակի մեջ է: Քաղաքացիական պատերազմի ամենաթեժ մարտերի պահին քաղաք է մտնում Սովետական Ռուսաստանի պատվիրակ Պետրովի մարտական ջոկատը: Դա օգնություն է Բաքվի Կոմունային:

Ազիզբեկովը Շահումյանի հետ միասին դիմավորում է Ջոկատին: Նրա սիրտը նորից ցնծում է հրճվանքից. Պետրոգրադն օգնում է:

— Բոլորս ի զեն, ընկերնե՛ր: Պաշտպանենք Կոմունան: Կեցցե՛ կոմունիզմը,— անվեհեր կոչ էր անում Մեշադի-Բեկը մինչև Կոմունայի անկման վերջին րոպեները, մինչև հերոսական մահվան վերջին վայրկյանները՝ իր մարտական ընկերների հետ:

— Կոմունիզմի վեհ գաղափարը ապրում է ու հաղթում: Հավերժ փառք ձեզ, անվեհեր կոմիսարներ,— ասես նրան պատասխանելով գոչում են միլիոնավոր աշխատավորներ:

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

---

# ԱՆՄՈՌԱՑ ՄԱՐՏԻԿԸ



Հայֆիլհարմոնիայի փոքր դահլիճի բեմի վրա է մի երիտասարդ երգչուհի: Եգիպտոսից է եկել, ասում են՝ հայրենադարձների վերջին խմբի հետ. նրա դեբյուտն է այս երեկո: Նկատելիորեն հուզվում է երգչուհին: Քար լռություն է դահլիճում, ու մեկեն ճայթում է ծափերի որոտը...

Առաջին շարքից ոտքի է ելել փոքրահասակ, սարիքոտ մի մարդ. նա գրկում է համրաքայլ իրեն մոտեցող բանաստեղծի թևը, հարցնում կիսաձայն.

— Տեսա՞ր... տեսա՞ր ոնց է կլկլացնում...

— Հայոց սոխակն է, հայոց սոխակը,— աչքերից առատորեն հոսող արցունքը սրբելով՝ շշընջում է վարպետը:

— Դու է՞լ ես ասում...— և նրա դեմքը փայլում է իբրև պայծառ լիալուսին:

Քանի՛ տարի է արդեն ոչ մի համերգից ետ չի ընկնում այս պարզաբարո մարդը, և Կոնսերվատորիայի ուսանողները, որ այս դահլիճի մշտական հաճախորդներն են, վաղուց նրան համարում են օր-ծերության իր կբաղմունքը թողած մի պրոֆեսիոնալ երաժիշտ: Ի՞նչ իմանան նրանք, թե ուրիշ, բոլորովին ուրիշ պրոֆեսիայի տեր է եղել այս մարդը, որ դաժան պրկանքներով ու մահառիթ վտանգներով լի մի կյանք է անցրել նա...

***

1918 թվականի մարտի ցրտաշունչ մի իրիկուն է: Սառը քամին ավազախառն փոշու վիթխարի ամպեր է երկինք հանել: Ով դուրսն է, մի ապաստան է որոնում հողմերի քաղաքում: Այս անպատեհ ժամին Բաքվի փողոցներով սլանում է ծայրեծայր բեռնված մի ավտոմեքենա. թափքին, բրեզենտով ծածկված կոշտ ու կոպիտ առարկաների վրա ռուս զինվորներ են նստոտած: Մեքենան կանգ է առնում Միլիոննայա փողոցի № 3 տան առաջ: Վարորդի կաբինից իջնում է Ստեփան Շահումյանը: Առաջներում, ցարիզմի օրոք նա շատ անգամ է եղել այստեղ. Սերգո Մարտիկյանի տունն է սա...

Երբ անակնկալ հյուրը երկրորդ հարկի մեծ սենյակը մտավ, տանտերն իր ընտանիքի հետ իրիկնահացի էր նստած: Շահումյանի գալուստը զվարթ իրարանցում է առաջ բերում. ո՞վ կարող է լինել ավելի ըղձալի, քան այդ հմայիչ մարդը, որ հենց նոր է տեղ հասել զինվորական էշելոնի հետ՝ ռեակցիայի բույն դարձած Թիֆլիսից: Բայց ողջագուրանքի ժամանակ չկա: Ամենքը վար են վազում, Սերգոն, իր կինը՝ Սաթոն, զավակները՝ Թաթուլը և Ազատը, և ռուս զինվորների հետ միասին մինչև ուշ գիշեր ավտոմեքենայից շալակով ներս են կրում գնդացիրներն ու հրացանները, ռռնակների ու փամփուշտների ծանր արկղները... Շահումյանի հետ եկած զինվորներն էլ գիշերում են Սերգոյի տանը և մնում նրա մոտ բնակվելու: Հաղթահասակ և կորովի Կոստյա Բաթմանովը դառնում է Բաքվի կոմունիստական դրուժինայի պետը, որի կոմիսարն էր ինքը՝ Սերգոն... Եվ այդ օրվանից Միլիոննայա № 3 տունը դառնում է դրուժինայի շտաբը:

Քուն ու հանգիստ չունի դրուժինայի կոմիսարը: Միշտ և ամենուր, ներքին ռեակցիայի և իմպերիալիստական ներխուժողների դեմ մղվող անհավասար մարտերի մեջ ամենավտանգավոր ճակատամասումն է նա: Նրա դրուժինան իր կազմով մարմնացնում է բանվորական Անդրկովկասի միջազգային միասնությունը: Հորդուն եռանդի տեր, խանդավառ անձնազոհությամբ տոգորված

ների թախանձանքն էլ գուր է անցնում: Մեկ անգամ միայն, 1956 թվականի հոկտեմբերին, ընկերները նրան տեսնում են սաստիկ այլայլված և երբ հարցնում են պատճառը, Սերգոն բռունցքը սեղանին պարկելով, բղավում է. «Ես հիմա հիշողություն պետք է գրեմ»... Պարզվում է, որ Բաքվի 1918 թվականի դեպքերի մի շարքային մասնակից շարադրելով իր «ինքնակենսագրական հուշերը», անխղճորեն չափազանցրել է իր անձնական դերն այդ դեպքերի մեջ: Այս է, որ հարկադրում է Սերգոյին մանրամասն գրի առնել իր արժանահավատ և ստույգ հիշողությունները այդ ձեռագրում շոշափված իրադարձությունների վերաբերյալ:

Ի սրտե հրճվում է Սերգոն մանավանդ լենինյան հին գվարդիայի գործիչներին հատուկ մարդկային գծերը տեսնելով Հոկտեմբերյան օրերին գործող բոլշևիկյան սերնդի մեջ: Երիտասարդների վառ գաղափարականությունը, նվիրվածությունը կոմունիզմի իդեալներին, անձնական խիզախությունը հպարտությամբ են լցնում նրա հոգին: Իր դրուժինայի անցած մարտական ճանապարհին անդրադառնալով, նա ջերմությամբ և խոր հուզմունքով է հիշում, թե ինչպես Բաքվի հին ամրոցի (այնտեղ ամրացել էին մուսավաթականները) դեմ մղվող կռվի ժամանակ Անաստասը վիրավորվեց ոտքից. 23 տարեկան այդ տաքարյուն երիտասարդը ամեն րոպե պատրաստ էր գլուխը գնդակի տակ դնելու: Հաճույքով նա պատմում է, թե ինչ վառվռուն, արիասիրտ աղջիկ էր Օլյան, թե ինչպես ամբողջ դրուժինայի սիրելին դարձավ մշտապվարթ Արտակը, ինչպիսի գիտուն և կորովի երիտասարդ էր Սուրեն Աղամիրովը... Անբավ փորձառությամբ լի, միշտ հոգով երիտասարդ՝ Սերգոն իր ամբողջ կյանքում շրջապատված է եղել երիտասարդ ընկերներով, որոնք խորապես հարգել ու սիրել են նրան, և որոնց իբրև գորովասիրտ հայր սիրել է ինքը: Այսպես, 1919—1920 թվականին, դաշնակցական Հայաստանում, նա հոգով-սրտով կապված էր սպարտակյանների հետ: Շատ տարիներ են անցել, բայց նրա ձայնը դողում է հուզմունքից, երբ ասում է. «Ղուկա՞սը... Սրտոտ տղա էր Ղուկասը, ու շատ տաքարյուն, հանդուգն, անվեհեր...», «Արմենա՞կը. թեորետիկ միտք ուներ, բանտում էլ վեհ էր պահում իրեն. լավ գիտեր խոսել, բայց չէր սիրում աչքի ընկնել դրանով...»: Եվ, ի հակադրություն Արմենակի, տհաճությամբ մտաբերում է մի ուրիշ երիտասարդի. «Փառասիրություն կար մեջը, ինքնահավանություն. կարծում էր կոչված է անպայման ղեկավար լինելու»... Նորից գորովանքի ժպիտը փայլում է մանրիկ աչքերի մեջ, երբ սպարտակյան աղջիկներին է հիշում, և գտնում է էլի իրեն հատուկ պարզունակ, սրտագին խոսքեր՝ նրանց բնութագրելու. «Աղավնի՞ն հեզ, բայց շատ եռանդուն, դուրեկան, համակրելի աղջիկ էր... հիանալի երեխա էր»... Այդպիսին էլ մնացել է Սերգոյի հիշողության մեջ այդ քսանամյա օրիորդը, մի հիանալի երեխա: Շատ հաճախ նա անմիջականորեն օգնել է երիտասարդներին, երբ դժվար գործերի են ձեռնարկել նրանք: Ահա 1919 թվականին սպարտակյանները կոչ են հրատարակում ազգամիջյան թշնամանք հրահրող դաշնակցական կառավարության դեմ: Սերգոն իր ձեռքով Ռուբեն Դաշտոյանի բնակարանում (ներկայիս Լուսաշխի տանը) վաթսուն օրինակ բազմացնում է Ստեփան Շահումյանի այժմ հանրահայտ լուսանկարը (օսլայած բարձր օձիքով. սյուրտուկը հագին): Սպարտակյաններն այդ նկարը իրենց կոչի հետ գիշերով փակցնում են քաղաքի փողոցներում: Ժողովուրդը տեսնում ու ճանաչում է Բաքվի Կոմունայի պանծալի առաջնորդին: Այս կերպ ահա Սերգոն օգնում է երիտասարդներին, հմուտ կոնսպիրատորի իր հարուստ փորձառությունը հաղորդելով նրանց:

Եվ ինչ կա զարմանալու, որ երբ իր կյանքի վերջալույսին,— Սերգո Մարտիկյանը վախճանվեց 1957 թ., 83 տարեկան հասակում,— նա շրջապատված էր երիտասարդ ընկերների ու բարեկամների ջերմ սիրով ու գուրգուրանքով:

Ստիճանաբար կորցնելով տեսողությունը, անհագորեն կլանում է նա քաղաքական ու գեղարվեստական բազմապիսի գրականությունը, որ ընկերները և նրա արդեն չափահաս թոռնիկները կարդում են նրա համար: Սերգոյին հոգևոր սնունդ են տալիս Տոլստոյը, Ստենդալը, Լերմոնտովը, անխառն հաճույք է պատճառում Հովհաննես Թումանյանը, որին խորունկ սիրով սիրել է պատանի հասակից: Նրա համեստ կացարանում հասարակ թախտի ու սեղան-աթոռի, մի-երկու շատ սիրելի լուսանկարների հետ, ամենաարժեքավոր իրն է վաղուց արդեն հնատիպ դարձած ռադիոընդունիչը: Երաժշտության սիրահարը խանդավառ երկրպագուն էր Բեթհովենի, Չայկովսկու, Գրիգի, անչափ հարազատ են նրա սրտին Կոմիտասն ու Տիգրանյանը:

Իրերի բերումով գարնան մի երեկո, նոր ապաքինված թոքերի բորբոքումից, երբ, ավա՜ղ, նրա օրերը հաշված էին արդեն, Սերգոն, ինչպես մոտ տասը տարի առաջ, հիացմունքով ունկնդրում է իր սիրած երգչուհուն. «Անուշն» է հաղորդվում օպերայի բեմից:

Խաղաղ հանգչում է նա հայրենի քաղցրալուր մեղեդիներով շոյված ու խիղճը հանգիստ փակում է վերջին էջը այն բազմաբովանդակ գրքի, որ իր կյանքն է եղել:

Ռ. ԱԹԱՅԱՆ

---



## ՆԵՐՔԻՆ ԴՎԻՆԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ 1959 Թ. ԲԱԼԱՆՍԸ

*Յուրաքանչյուր կոլտնտեսության տարեկան բալանսում (հաշվեկշռում) արտացոլվում է տնտեսության իրական պատկերը:*

*Վերլուծելով Ն. Դվինի կոլտնտեսության բալանսը, կարելի է լրիվ պատկերացում կազմել տվյալ տնտեսության մեկ տարվա գործունեության մասին՝ ըստ ճյուղավորումների ու ճյուղերի: Անհրաժեշտ ենք գտնում հատուկ ուշադրություն հատկացնել աշխատանքի կազմակերպման և վարձատրման սիստեմի, արտադրական ցուցանիշների, եկամուտների ու նրանց բաշխման, անբաժանելի ֆոնդերի և հանրային տնտեսության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, տարեվերջի բալանսի և միջոցների հաշվառման հարցերին:*

### ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԵՎ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

*Աշխատանքի լավ կազմակերպումը և կոլտնտեսականների ճիշտ վարձատրությունն այն կարևոր և հիմնական գործոններն են, որոնց միջոցով հնարավոր է լավագույն ձևով վարել արտադրությունը և հասնել արտադրական բարձր ցուցանիշների:*

*Ուսումնասիրելով Ն. Դվինի կոլտնտեսության բալանսը՝ պարզվում է, որ կոլտնտեսության մեջ ընդգրկված են 480 տնտեսություն՝ 1909 շնչով: Կոլտնտեսությունը 16 տարեկանից բարձր 1062 անդամ ունի, որոնցից աշխատունակ են՝ 784-ը, այդ թվում՝ 403 կին: Վաթսունհինգ հոգին աշխատում են կոլտնտեսությունից դուրս, արդյունաբերության, ժողովրդական կրթության և այլ բնագավառներում, 33-ը սովորողներ են:*

*Կոլտնտեսության վարչությունը, հաշվի առնելով աշխատող ուժի առկայությունը, մշակվող կուլտուրաների առանձնահատկությունները և մեքենայացման աստիճանը, 1959 թվականին կոմպլեկտավորել է 10 արտադրական (4-ը դաշտավարական, 6-ը այգեգործական) և մեկ տրակտորային բրիգադա, 2 անասնապահական ֆերմա: Կոմպլեկտավորված 10 արտադրական բրիգադաների ներսում կազմակերպվել են 25 օղակ: Արտադրական և տրակտորային բրիգադաներում տարեսկզբին ընդգրկվել է 601, անասնապահական ֆերմաներում՝ 57 կոլտնտեսական: Բացի արտադրական բրիգադաներից և անասնապահական ֆերմաներից, 115 մարդ գործում է տնտեսության այլ ճյուղերում, 33 հոգի՝ շինարարական բրիգադայում, 25-ը՝ օժանդակ ձեռնարկություններում:*

*Հիմնական աշխատանքներին մասնակցում են ընդամենը 772 կոլտնտե-*

*սական։ Կոլտնտեսության աշխատունակ (աշխօրերի պարտադիր մինիմումի ենթակա) անդամների թիվը հասնում է 656 հոգու։ Այդ նշանակում է, որ արտելի վարչությունը արտադրության մեջ ճիշտ է տեղաբաշխել աշխատող ուժը։*

*Սակայն տարեկան հաշվետվությունը ցույց է տալիս, որ արտելում ճիշտ չի հաշվարկված աշխօրերի պարտադիր մինիմումի չափը։ Կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսականի պարտադիր մինիմումի չափը սահմանվել է 157 աշխօր։ Մինչդեռ 1959 թվականին աշխատունակ կոլտնտեսականները միջին հաշվով վաստակել են 235 աշխօր։ Հատկապես ցածր են տղամարդկանց համար սահմանված նորմաները և, պատահական չէ, որ աշխատանքի ընդունակ տղամարդիկ միջին հաշվով վաստակել են 343 աշխօր (սահմանված 180-ի փոխարեն), իսկ կանայք միջին հաշվով վաստակել են 134 աշխօր (130-ի փոխարեն)։ Կանանց աշխատանքի համար անհրաժեշտ պայմաններ չստեղծելու հետևանքով աշխատունակ կանանց 20 տոկոսը չի կատարել աշխօրերի մինիմումը։*

*Աշխատանքի կազմակերպման գործում տեղ գտած հիմնական թերություններից մեկը արտադրական բրիգադների ոչ ճիշտ կոմպլեկտավորումն է։ Կոլտնտեսությունն ունի 206 հեկտար վարելահող և 230 հեկտար խաղողի ու մրգի այգիներ։ Այս պայմաններում 10 արտադրական բրիգադայի կոմպլեկտավորման անհրաժեշտություն չկար, որովհետև դրանցից յուրաքանչյուրին ընկնում է ընդամենը 43,5 հեկտար տարածություն։ Նախ, մանր բրիգադների կոմպլեկտավորումը, հողերի մասնատումը արգելակում են կոմպլեքսային մեքենայացմանը, ինչպես և պատճառ դառնում ավելորդ աշխօրերի ծախսման։ Պատահական չէ, որ կոլտնտեսությունում բուսաբուծության վրա ծախսված 86 163 աշխօրից 11 262-ը, կամ 13 տոկոսը կազմում են անուղղակի ծախսումները բրիգադավարների, օղակավարների և վարչական այլ ղեկավարների համար, չհաշված ընդհանուր կոլտնտեսային ծախսերը։*

*Կոլտնտեսության վարչությունը հենց այդ հանգամանքը հաշվի առնելով՝ 1960 թվականին զգալիորեն կրճատեց արտադրական բրիգադների թիվը։*

*Կոլտնտեսությունում վարչական սպասարկող անձնակազմը, արտադրական բրիգադների բրիգադավարները, անասնապահական ֆերմաների վարիչները վարձատրվում են ըստ արտադրանքի, որը բարձրացնում է նրանց նյութական շահագրգռվածությունը՝ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու գործում։*

*Արտադրության կազմակերպման համար 1959 թվականին կոլտնտեսությունը ծախսել է ընդամենը 162 432 աշխօր, 129 412 մարդ-օրով։ Միջին հաշվով տնտեսության բոլոր ճյուղերում մեկ մարդ-օրվա աշխատանքը գնահատվում է 1,28 աշխօր։ Կոլտնտեսության արտադրական նորմաները հաստատելու ժամանակ վարչությունը հաշվի է առել տնտեսության ետ մնացող ճյուղերը. այդ ճյուղերում աշխատող կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով սահմանել են վարձատրության ավելի բարձր նորմաներ։ Այսպես, օրինակ՝ բուսաբուծության մեջ աշխատող կոլտնտեսականների մեկ մարդ-օրվա աշխատանքի վարձատրության միջինը կազմում է 1,14 աշխօր, իսկ անասնաբուծության մեջ՝ 1,44 աշխօր։ Վարչական սպասարկող անձնակազմը մեկ մարդ-օրվա աշխատանքի համար վարձատրվում է 1,65 աշխօր, կամ միջին կոլտնտեսականի վարձատրությունից*



*30 տոկոսով ավելի, մինչդեռ անցյալում նրանց վարձատրությունը 2—2,5 անգամ ավելի էր կոլտնտեսականի միջին վարձատրությունից։*

*Կոլտնտեսության վարչությունը աշխատում է հնարավորության սահմաններում ավելացնել կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց կատարվող վճարումները։ 1959 թվականին յուրաքանչյուր աշխօրի արժեքը կազմել է 35 ռ. 65 կ. (որից 14 ռ. 90 կ. մթերքով և 20 ռ. 75 կ. դրամով)։ Աշխատունակ ամեն մի կոլտնտեսականի տարվա ընթացքում վճարվել է 8377 ռ., կամ աշխատած օրերի հաշվով ամեն ամսվա համար՝ 1197 ռուբլի։*

*Կոլտնտեսականները տարվա ընթացքում 4 անգամ ավանս են ստացել։ Բացի հիմնական վարձատրությունից, պլանային առաջադրանքները գերակատարելու համար լրացուցիչ կարգով կոլտնտեսականներին գրանցվել է 2470 աշխօր, իսկ բրիգադներում և օղակներում գյուղատնտեսական առանձին կուլտուրաների բերքատվության պլանային առաջադրանքները չկատարելու համար կոլտնտեսականներից պահվել է 306 աշխօր։*

*ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մայիսի 10-ի որոշումից հետո կոլտնտեսության վարչությունը ավելացրել է ծերերին, հաշմանդամներին, ժամանակավորապես աշխատունակությունը կորցրածներին օգնելու ֆոնդը։ Աշխատունակությունը ժամանակավորապես կորցրածներին և հղի կանանց արձակուրդների համար վճարվել է 20892 ռուբլի, հիմնական թոշակավորման համար առանձնացված է 14 հազար ռուբլի, միանվագ օգնության կարգով բաց է թողնված 5821 ռուբլի։ Մեկ տարում այդ նպատակների համար կատարվող հատկացումները կազմում են 40713 ռ.։*

*Աշխատանքի ճիշտ կազմակերպման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունում ապահովվել է գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանային առաջադրանքների կատարումը և գերակատարումը։*

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԸ

*Կոլտնտեսության արտադրական ցուցանիշների մասին պատկերացում կարելի է կազմել հողատարածության 100 հեկտարի դիմաց ընկնող արտադրանքի քանակով։ Ն. Դվինի կոլտնտեսությունը 1959 թվականին գյուղատնտեսական օգտագործման հողի 100 հեկտարի դիմաց ստացել է 262 ցենտներ կաթ, 65 ցենտներ միս, 3,3 ցենտներ բուրդ, վարելահողի 100 հեկտարի դիմաց՝ 64 ցենտներ խոզի միս և հացահատիկային տարածության 100 հեկտարի դիմաց՝ 65,6 հազար ձու։*

*Բուսաբուծության և անասնաբուծության համախառն արտադրանքի արժեքը 100 հեկտար օգտագործվող հողատարածության հաշվով կազմել է 873,9 հազար ռուբլի, որից դրամական եկամուտ՝ 508,9 հազար ռուբլի։*

*1959 թվականին կոլտնտեսության համախառն արտադրանքի արժեքը կազմել է 11 177 հազար ռուբլի, ընդ որում բուսաբուծությունից՝ 10 169 հազար, անասնաբուծությունից՝ 1008 հազար ռուբլի։ Կոլտնտեսությունը կատարել և գերակատարել է պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու բոլոր առաջադրանքները։*

*Կոլտնտեսության բալանսի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նրա*

տնտեսությունը զարգանում է հիմնականում ինտենսիվ կերպով։ Այդ մասին են վկայում բուսաբուծության ցուցանիշները։ Կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 32 ցենտներ բամբակի հումք, 407 ցենտներ բանջարանոցային՝ 177 ցենտներ բոստանային կուլտուրաներ, 438,2 ցենտներ կերի արմատապտուղ։ Եգիպտացորենի 8 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 46,5 ցենտներ չոր հատիկ և 500 ցենտներ կանաչ զանգված։ Առվույտի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից՝ 128 ցենտներ միջին բերք։

Կոլտնտեսությունում գլխավոր ճյուղը այգեգործությունն է, հատկապես՝ խաղողագործությունը։ Խաղողի 165 հեկտար բերքատու տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 121,2 ցենտներ միջին բերք. պտուղների 20 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 116 ցենտներ, այդ թվում՝ հնդավոր 90, կորիզավոր՝ 142 ցենտներ։

Բալանսային թվերը ցույց են տալիս, որ գյուղատնտեսական առանձին կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվությունը դեռևս ցածր է։ Այսպես. բանջարանոցային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը ընդհանուր առմամբ կազմում է 387 ցենտներ, իսկ սոխինը՝ 252 ցենտներ. իհարկե, այս ցածր է։ Ցածր է նաև անասունների մթերատվությունը։ 1959 թվականին կոլտնտեսությունը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 1812 լիտր կաթ, մեկ ոչխարից՝ 3,3 կգ. բուրդ և յուրաքանչյուր ածան հավից՝ 67 ձու։ Արտադրվել է ընդամենը 703 ցենտներ միս (կենդանի քաշով), դրանից խոզի՝ 132 ցենտներ, որը կազմում է արտադրված ամբողջ մսի 18 տոկոսը։

Հանրային հոտում դեռևս քիչ է մայրական կազմը։ 560 գլուխ խոշոր եղջերավոր անասուններից միայն 180-ն է կով։ Նույնպիսի վիճակ գոյություն ունի խոզաբուծության բնագավառում։ Կոլտնտեսությունն ամբողջ մեկ տարվա ընթացքում արտադրել է ընդամենը 132 ցենտներ խոզի միս այն դեպքում, երբ առ մեկը հունվարի 1959 թվականի ֆերմայում եղել է 227 գլուխ խոզ, որից 143-ը մայրեր են։ Եթե կոլտնտեսության վարչությունը գործը լավ կազմակերպեր, հնարավոր կլիներ 20 մայրերից յուրաքանչյուրից ստանալ 15-ից ոչ պակաս խոճկոր, իսկ մնացած միածին 123 մայրերից՝ 6—7-ական խոճկոր, կամ տարվա ընթացքում 1000 գլուխ խոզ։ Այդպիսով զգալիորեն կավելանար մսի արտադրությունը։

Բալանսային տվյալները ցույց են տալիս, որ միայն ցեղի բարելավման միջոցով նույնիսկ ոչխարների ներկա գլխաքանակի պահպանումով կոլտնտեսությունը կարող է կրկնապատկել բրդի արտադրանքը։ 1959 թվականին մեկ ոչխարից միջին հաշվով ստացվել է 3,3 կգ. բուրդ. մինչդեռ նրբագեղմ ցեղի յուրաքանչյուր ոչխարից՝ 6 կգ, կիսանրբագեղմից՝ 4,4 կգ, կոպտաբուրդ ցեղից՝ 2,4 կգ։ Հանրային հոտում նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարների գլխաքանակը կազմում է ընդամենը 18 տոկոս։

Չի կարելի չնշել, որ անասնաբուծության զարգացմանն արգելակում է կերի խիստ պակասը։ Կոլտնտեսությունում 560 գլուխ խոշոր եղջերավոր անասունի, 1353 գլուխ ոչխարի, 446 գլուխ խոզի և 1600 հավի համար տարվա ընթացքում կուտակվել է ընդամենը 35 տոննա հատիկային կեր, 500 տոննա սիլոս, 209 տոննա ճակնդեղ, 767 տոննա խոտ և 138 տոննա ծղոտ։ Երբ կերը բաշխում ենք ըստ անասունների գլխաքանակի, մեկ կովին տարեկան հասնում



է 2,7 տոննա սիլոս և մեկ տոննա ճակնդեղ, որը շատ քիչ է։ Կերի պակասը լրացնելու համար կոլտնտեսությունը միայն 1959 թվականին ծախսել է 326 հազար ռուբլի։

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԵԿԱՄՈՒՏՆԵՐԸ ԵՎ ԴՐԱՆՑ ԲԱՇԽՈՒՄԸ

1959 թվականին կոլտնտեսությունն ստացել է 11 միլիոն 177 հազար ռուբլու համախառն արտադրանք։ Ըստ ճյուղերի համախառն արտադրանք ստացվել է հետևյալ չափերով. հացահատիկային կուլտուրաներից՝ 105 հազար ռուբլի, բամբակից՝ 580 հազար, բանջարաբոստանային կուլտուրաներից՝ 418 հազար, կերից՝ 245 հազար, այգեգործությունից՝ 8 միլիոն 820 հազար, խոշոր եղջերավոր անասուններից՝ 572 հազար, խոզաբուծությունից՝ 105,5 հազար, ոչխարաբուծությունից՝ 227 հազար, թռչնաբուծությունից՝ 57 հազար, շերամապահությունից 35,6 հազար և մեղվաբուծությունից 10,2 հազար ռուբլի։

Արտադրական ֆինանսական պլանով նախատեսված 6 միլիոն 371 հազար ռուբլի դրամական եկամտի փոխարեն կոլտնտեսությունն ստացել է 6 միլիոն 509 հազար ռուբլի։ Այսպես, բուսաբուծության գծով նախատեսված 5 միլիոն 377 հազար ռուբլու դիմաց ստացվել է 5 միլիոն 630 ռուբլի, անասնաբուծության 888 հազար ռուբլու դիմաց՝ 743 հազար ռուբլի և եկամուտներ այլ աղբյուրներից։ Կոլտնտեսությունը գյուղատնտեսական մթերքները հիմնականում վաճառել է պետական և կոոպերատիվ կազմակերպություններին, ըստ որում ստացված դրամական եկամտից 5 միլիոն 833 հազար ռուբլին ստացվել է պետական մթերող կազմակերպություններից ու կոոպերացիայից, 600,8 հազար ռուբլին՝ կոլտնտեսային առևտրից։

Կոլտնտեսության դրամական եկամուտները բաշխվել են հետևյալ կերպ՝

| Անվանումը | Գումարը հազար ռուբլիներով | Ընդհանուր եկամտի որ տոկոսն է կազմում |
|---|---|---|
| Ընդամենը դրամական եկամուտներ | 6.508,7 | 100 |
| 1. Հարկեր և ապահովագրական վճարումներ | 960,4 | 14,7 |
| Այդ թվում՝ եկամտահարկ | 816,5 | 12,5 |
| պարտադիր կոոպերային և կամավոր ապահովագրական վճարումներ | 143,9 | 2,2 |
| 2. Ծախսեր ընթացիկ տարվա արտադրական կարիքների համար | 907,3 | 13,9 |
| 3. Ընդհանուր տնտեսական և վարչատնտեսական ծախսեր | 24,7 | 0,4 |
| 4. Դրամական հավելավճարումներ նախագահին և հաշվապահին | 8,6 | 0,1 |
| գյուղատնտեսության մասնագետներին | 8,7 | 0.1 |
| 5. Անբաժանելի ֆոնդերի լրացմանը | 1.307,7 | 20,1 |
| 6. Գնված նյութերի և մանր ինվենտարի պահեստային փոխանցիկ ֆոնդերի լրացման նորման | 57,5 | 0,9 |
| 7. Կոլտնտեսականներին ավանսավորելու ֆոնդի լրացման համար | 59,5 | 0,9 |
| 8. Կուլտուր-կենցաղային կարիքների համար | 25,4 | 0,4 |
| 9. Օգնության ֆոնդին և թոշակավորման ապահովմանը | 48,7 | 0.8 |
| 10. Կամավոր սպորտ-ընկերության իրավական անդամավճար | 20,6 | 0,3 |
| 11. Աշխօրերին և աշխատանքի լրացուցիչ վարձատրության կարգով կոլտնտեսականներին վճարելու համար | 3,079,6 | 47,4 |

Թվական տվյալները ցույց են տալիս, որ մեծ չափերի են հասնում արտադրական կարիքների վրա կատարվող դրամական ծախսումները, որոնք կազմում են ամբողջ եկամտի 13,9 տոկոսը։ Կոլտնտեսության արտադրական ֆինանսական պլանով արտադրական կարիքների վրա նախատեսված էր ծախսել 866 հազար ռուբլի, մինչդեռ ծախսվել է 907 հազար ռուբլի։ Երբ ուսումնասիրում ենք արտադրական ծախսերի բնույթը, պարզվում է, որ 327 հազար ռուբլին կամ արտադրական ծախսերի 33 տոկոսը հատկացվել է կեր գնելուն, 97 հազարը կամ մոտ 11 տոկոսը՝ վարձու աշխատողներին, 71,6 հազարը՝ վառելանյութ ձեռք բերելուն, 80 հազարը՝ էլեկտրաէներգիային և այլն։ Կոլտնտեսության վարչությունը կարող է և պետք է այսուհետև ձգտի կրճատել այդ ծախսումները։

Ցածր է անբաժանելի ֆոնդերին կատարվող մասհանումների չափը։ Կոլտնտեսությունում ընդհանուր եկամտի 20 տոկոսի չափով կատարվող մասհանումները չեն ապահովում հանրային տնտեսության զարգացման համար նախատեսված աճի տեմպը։ Չնայած նրան, որ կոլտնտեսությունը լրիվին ապահովված է գյուղատնտեսական մեքենաներով ու գործիքներով, դեռևս շատ միջոցներ են ծախսվում մանր ինվենտար ձեռք բերելու համար։

## ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ՖՈՆԴԵՐԸ ԵՎ ՀԱՆՐԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՃԸ

Անբաժանելի ֆոնդերի աճը հիմնականում կատարվում է կապիտալ ներդրումների հաշվին։ 1959 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտներից կապիտալ ներդրումների համար հատկացվել է 1 միլիոն 307 հազար ռուբլի։ Մեկ տարվա ընթացքում կոլտնտեսությունը շինարարության մեջ ներդրել է 741 հազար ռուբլի, որից 411 հազարը արտադրական և 330 հազարը կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող շենքեր կառուցելու համար։ Բացի այդ, 189 հազար ռուբլի հատկացված է Դվինի ջրանցքի կառուցմանը, 136 հազարը՝ տրակտորներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ ձեռք բերելուն և այլն։

Կոլտնտեսությունն անբաժանելի ֆոնդերի հաշվին կոլտնտեսականներին բաց է թողել 37 հազար ռուբլու վարկ՝ բնակարանային շինարարության համար։

Կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները հիմնականում ծառայում են արտադրության ընդլայնմանը, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Ն. Դվինի կոլտնտեսության 10 միլիոն 300 հազար ռուբլի անբաժանելի ֆոնդերից արտադրական հիմնական միջոցները կազմում են 7500 հազար ռուբլի, որից 976 հազարը մթերատու, բանող և մատղաշ անասունների արժեքն է. 761 հազարը՝ տրակտորներինը, գյուղատնտեսական այլ մեքենաներինը և ինվենտարինը, 406 հազարը՝ փոխադրական միջոցներինը։ Արտադրական նշանակություն ունեցող շենքերի և կառուցումների արժեքը կազմում է 2 միլիոն 916 հազար ռուբլի, կուլտուր-կենցաղային օբյեկտներինը՝ 2 միլիոն 231 հազար ռուբլի, բազմամյա տնկումներինը՝ 210 հազար ռուբլի։

Կոլտնտեսության համախառն եկամտի քանակը պարզելուց հետո պետք է իմանալ, թե հիմնական միջոցների յուրաքանչյուր ռուբլու հաշվով որքան



համախառն եկամուտ է ստեղծված, կամ՝ պարզել կապիտալ ներդրումների տնտեսական էֆեկտիվությունը, որն արտահայտված է այս աղյուսակում.

| Անվանումը | Ընդամենը կոլտնտեսութ. | Այդ թվում՝ բուսաբուծություն | Այդ թվում՝ անասնաբուծություն |
|---|---|---|---|
| Արտադրության հիմնական միջոցների բալանսային արժեքը (հազար ռուբլիներով) | 7,290 | 3,608,4 | 3,681,6 |
| Համախառն արտադրանքի գինը (հազար ռուբլիներով) | 11,177 | 10,169 | 1,008,0 |
| Նյութական պահումներ (հազար ռուբլիներով) | 2,530,2 | 1,818,9 | 711,3 |
| Համախառն եկամուտը՝ ընդամենը (հազար ռուբլիներով) | 8,646,8 | 8,350,1 | 296,7 |
| Համախառն եկամուտը հիմնական ֆոնդի մեկ ռուբլու հաշվով (ռուբլիներով) | 1 ռ. 18 կ. | 2 ռ. 31 կ. | 0,08 ռ. |

Այս աղյուսակը ցույց է տալիս, որ անասնաբուծության բնագավառում արդյունավետ չեն օգտագործվում կապիտալ ներդրումները. տնտեսության այդ ճյուղը ո՛չ միայն օգուտներ չի բերում տնտեսությանը, այլ նրա հասցրած վնասները փակվում են բուսաբուծության հաշվին։

Կապիտալ ներդրումներն ավելի արդյունավետ օգտագործելու համար կոլտնտեսության վարչությունը պետք է ժամանակին ծախսի այն, արագ ավարտի և շահագործման հանձնի նոր օբյեկտները, մինչդեռ բալանսային տվյալները ցույց են տալիս, որ 1959 թվականին Ն. Դվինի կոլտնտեսությունում կապիտալ ներդրման միջոցներից 834 հազար ռուբլին չի օգտագործվել, իսկ անավարտ շինարարությունները կազմում են 1 միլիոն 508 հազար ռուբլի։

## ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Արտադրանքի ինքնարժեքը կոլտնտեսությունում այն կարևոր տնտեսական ցուցանիշներից մեկն է, որի մեջ ամփոփվում են աշխատանքի արտադրողականության, արտադրական միջոցների արդյունավետ ծախսման, տնտեսական-կազմակերպչական գործունեության արդյունքները։

Գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը Ն. Դվինի կոլտնտեսությունում, ըստ բալանսային տվյալների, յուրաքանչյուր ցենտներից կազմել է հացահատիկինը՝ 93 ռ. 50 կ., որից եգիպտացորենինը (չոր հատիկ)՝ 29 ռ. 20 կ., բամբակինը՝ 161 ռ. 20 կ., բանջարեղենինը՝ 28 ռուբլի, այդ թվում սոխինը՝ 50 ռ. 98 կ., պոմիդորինը՝ 16 ռ. 14 կ., բոստանային կուլտուրաներինը՝ 33 ռ. 40 կ., ճակնդեղինը՝ 8 ռ. 40 կ., մրգերինը՝ 35 ռ. 10 կ., խաղողինը՝ 52 ռ. 83 կ., կաթինը՝ 153 ռ. 20 կ., խոշոր եղջերավոր անասունի մսինը (կենդանի քաշով)՝ 671, խոզի մսինը՝ 731, հավի մսինը՝ 1490, հազար ձվինը՝ 811 ռուբլի։

Ինչպես տեսնում ենք, կոլտնտեսությունում չափազանց բարձր է անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։

Անասնաբուծական մթերքների արտադրության վրա կոլտնտեսությունում կատարվել են ինչպես նյութական ու դրամական, այնպես էլ աշխատանքային մեծ ծախսումներ, բայց ստացվել է քիչ արտադրանք։ Դեռևս ցածր է անասունների մթերատվությունը, անասնաբուծությունը գլխավորապես զարգա-

նում է ոչ թե տնտեսության սեփական կերի, այլ, հիմնականում, գնված կերի հաշվին։

Փաստական տվյալները ցույց են տալիս, որ աշխատանքի արտադրողականությունը ցածր է ո՛չ միայն անասնաբուծության, այլև բուսաբուծության առանձին կուլտուրաների գծով։ Չի կարելի նորմալ համարել մեխանիզացիայի օգտագործման ներկա աստիճանը, երբ մեկ պայմանական տրակտորի արտադրողականությունը (վերածած փափուկ վարի) կազմում է 234,6 հեկտար։ Միջին հաշվով յուրաքանչյուր պայմանական տրակտոր աշխատել է 130 մեքենա-օր։ Եղած տրակտորներն ու գյուղատնտեսական գործիքները լրիվ կերպով չեն օգտագործվում արտադրության մեջ և պատահական չէ, որ յուրաքանչյուր հեկտար փափուկ վարի ինքնարժեքը կազմել է 68 ռ. 40 կ.։

Կոլտնտեսությունում չի արմատավորված առաջավոր փորձը՝ գյուղատընտեսական կուլտուրաների քառակուսի բնային ցանքի և մշակության աշխատանքների կազմակերպման գործում։ Տրակտորները հիմնական աշխատանքից դուրս չեն օգտագործվում որպես փոխադրական միջոց։

## ՏԱՐԵՎԵՐՋԻ ԲԱԼԱՆՍԸ ԵՎ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՀԱՇՎԱՌՈՒՄԸ

Նոր տնտեսական տարում արտադրությունը կազմակերպելու գործում կարևոր նշանակություն ունի միջոցների ճիշտ հաշվառումը բալանսում։ Բալանսը ռեալ է, եթե ռեալ է նրանում նախատեսված միջոցների բաշխումը։

Որպեսզի ավելի քան պարզ լինի դրամական միջոցների առկայությունը, վերլուծենք բալանսի միջոցները, որոնք ցույց են տրված աղյուսակում։

| Ա Կ Տ Ի Վ<br>Անվանումը | Գումարը հազար ռ. | Պ Ա Ս Ս Ի Վ<br>Անվանումը | Գումարը հազար ռ. |
|---|---|---|---|
| 1. Վաճառման ենթակա մթերքներ | 158,0 | 1. Գնված նյութեր և մանր ինվենտար, փոխանցիկ ֆոնդ | 257,5 |
| 2. Գնովի մթերքներ | 2,0 | 2. Նոր տնտեսական տարվա արտադր. կարիքների համար | 103,3 |
| 3. Գնովի սերմեր | 4,0 | 3. Դրամական ֆոնդ կոլտնտեսականներին ավանսավորելու համար | 69,0 |
| 4. Կեր » | 47,0 | 4. Օգնության և կուլտ. ֆոնդերին | 32,2 |
| 5. Նավթամթերք | 6,5 | 5. Պարտքեր կոլտնտեսականներին դրամով | 681,6 |
| 6. Պահեստային մասեր | 32,5 | 6. Պարտքեր հիմնարկ-ձեռնարկություն. | 9,6 |
| 7. Զանազան նյութեր | 29,9 | 7. Կապիտալ ներդրման մուծման ենթակա միջոցներ | 5,0 |
| 8. Մանր ինվենտար | 134,9 | | |
| 9. Դրամական միջոցներ դրամարկղում | 21,4 | | |
| 10. Դրամական միջոցներ ընթացիկ հաշվում, բանկում | 56,0 | | |
| 11. Դրամական միջոցներ, հատուկ հաշիվ բանկում | 556,3 | | |
| 12. Կոլտնտեսականների պարտքեր դրամով | 26,9 | | |
| 13. Պարտքեր զանազան անձանց և հիմնարկների | 82,4 | | |
| Ընդամենը | 1.157,8 | Ընդամենը | 1.158,2 |



Բալանսային տվյալներից պարզվում է, որ չնայած կոլտնտեսությունն ունի միջոցներ պարտքերը փակելու, սակայն կոլտնտեսության վարչությունն անհրաժեշտ ուշադրություն չի հատկացնում կոլտնտեսականների ավանսավորման ֆոնդերը ավելացնելուն. վերջին չորս տարում այդ ֆոնդերի համար առանձնացված է միայն 69 հազար ռուբլի, որը քիչ է։

Բալանսում ճիշտ են հաշվառված նաև կապիտալ ներդրման միջոցները, որը երևում է հետևյալ աղյուսակից․

| Ա Կ Տ Ի Վ<br>Անվանումը | Գումարը ռուբ. | Պ Ա Ս Ս Ի Վ<br>Անվանումը | Գումարը հազար ռուբլի |
|---|---|---|---|
| 1. Արտադրական հիմնական միջոցները | 7.290,4 | 1. Անբաժանելի ֆոնդի մնացորդը տարեվերջին | 10.300,3 |
| 2. Մատղաշ անասուններ | 210,0 | 2. Փայավճարներ | 129,7 |
| 3. Շինանյութերի մնացորդներ | 348,7 | 3. Կապիտալ ներդրման մուծման ենթակա գումարներ | 5,0 |
| 4. Կապիտալ ներդրման միջոցների մնացորդը բանկում | 829,6 | | |
| 5. Արժեթղթերի մնացորդը | 150,6 | | |
| 6. Կոլտնտեսակ. պարտքը վարկերի գծով | 37,3 | | |
| 7. Ձախսված միջոցները միջկոլտնտեսային սովետում | 49,5 | | |
| 8. Անավարտ շինարարություն | 1.508,5 | | |
| Ընդամենը | 10.424,6 | Ընդամենը | 10.435 |

Կապիտալ ներդրման միջոցների վերլուծությունը ցույց է տալիս, որ կոլտնտեսությունում 10 400 ռուբլու չափով միջոցները պակաս են հաշվարկված։

Կոլտնտեսության միջոցների տարեվերջի մնացորդը ցույց է տալիս, որ կոլտնտեսությունում կան բոլոր պայմանները նոր տնտեսական տարում արտադրությունն ավելի լավ կազմակերպելու համար։

Ն. Դվինի կոլտնտեսության վարչության, պարտիական կազմակերպության խնդիրն է՝ բոլոր միջոցները ձեռնարկել աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, անբաժանելի ֆոնդերի արդյունավետ օգտագործման, գյուղատնտեսական մթերքների արտադրության առանձնած պարտավորությունները ժամանակին կատարելու և Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 40-ամյակը արժանավայել դիմավորելու համար։

Ժ. ՍԱՆՈՅԱՆ

րելի է օգտագործել Դ—210Գ, ԿՍ—6 և Կ—1Ա կոնստրուկցիաների արմատահանիչները։ Այդ արմատահանիչները կախվում են Ս—100 տրակտորից, ունեն 4 ատամ, որոնք հողի մեջ կարող են մտնել 60—80 սմ խորությամբ։

Խոշոր քարերով ծածկված հողերը փխրեցվում են ՌՆ—80Ա տիպի փխրեցուցիչով, որը կախվում է Ս—100 տրակտորից։ Այն ունի կտրիչ, դանակաձև կողով և մի կանգնակ դուրաձև թաթիկով, որը հողի մեջ կարող է մտնել 80 սմ խորությամբ։

Հյուսիս-արևմտյան հատուկ կոնստրուկտորական բյուրոն (Լատվիական ՍՍՌ) նախագծել է ՄՌԻ—0,6 տիպի ունիվերսալ հատուկ շրջանակ, որի վրա կարելի է սարքավորել քարհավաք ագրեգատը, որն ունի երեք տեսակ փոփոխվող հարմարանք և կատարում է քարերի հավաքման մի քանի պրոցեսներ։ Ունիվերսալ շրջանակը հարմարեցվում է ԴՏ—55 տրակտորի վրա։ 1960 թվականին պետք է թողարկվի մոտ 100 այդպիսի մեքենա։ Ունիվերսալ շրջանակի առջևի մասում կախվում է ՌՈՒԲ—150 տիպի արմատահանիչ հավաքիչը։ Այդ մեքենան միաժամանակ կատարում է մի քանի պրոցես և փոխարինում է արմատահանիչին, ՊԿ—2 տիպի հավաքիչին և Դ—388 կամ 4003 տիպի բարձիչին։ ՌՈՒԲ—150 տիպի ունիվերսալ մեքենան ունի բարձր արտադրողականություն և ցածր ինքնարժեք։ Ունիվերսալ շրջանակի հետևի մասից կարելի է կախել ՌՈՒԲ—100 արմատահանիչը։ Փոքր քարերի համար շրջանակն ունի կցովի ՌՈՒԲ—50 քարհավաք, որը հողի 25—30 սմ խորությունից հանում է մինչև 10 սմ չափի քարեր և դրանք բարձում բունկերի կամ հետևից ընթացող սահնակի մեջ։

Ոչ մեծ քարերը հավաքելու և փոխադրելու համար նախատեսված են ՌՈՒՍԿ—0,7 և ՊԿ—0,3 տիպի քարհավաքները։ Այդ մեքենաները կախվում են ԴՏ—14 տրակտորից և ունեն գրեյֆերային ընդգրկում ունեցող 6 ատամ։ Մեծ քարերը հողից հանելու համար կարելի է համատեղ օգտագործել մի քանի գործիքներ և սարքավորումներ, ինչպես, օրինակ, Դ—198 բեռնաչափիչը, ծակիչ սարքավորումների տարբեր կոնստրուկցիաներ, շարժական Վ—10 տիպի կոմպրեսոր, ՌԼՄ—17 տիպի ծակիչ ու ՎՎ և ՎՄ տիպի պայթեցնող գործիքների կոմպլեկտը։

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը յուրաքանչյուր գյուղատնտեսական գոտու համար մշակել է կոմպլեքսային մեքենայացման սիստեմ՝ բոլոր ընագավառների համար։ Ըստ այդ սիստեմի լեռնային հողագործության համար նախատեսված է պատրաստել 308 անուն նոր տիպի գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։ Հարթավայրային պայմանների համար թողարկվող 149 անուն գոյություն ունեցող գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ պետք է հարմարեցվեն լեռնային շրջանների հողագործությանը։

Գյուղատնտեսական արտադրության մեջ մեքենա-տրակտորային ագրեգատների արագության մեծացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն գործոններից մեկն է։ Այդ հնարավորություն կտա արտադրողականությունը բարձրացնել 25—30 տոկոսով, տրակտորային աշխատանքի ինքնարժեքը իջեցնել 10—13 տոկոսով, որի շնորհիվ գյուղատնտեսական աշխատանքները կկատարվեն ավելի սեղմ ժամկետում. զգալիորեն կբարձրանա դաշտերի բերքատվությունը։

Վարի և հողի մշակման մյուս աշխատանքների համար մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական բոլոր գոտիներում հիմնականում օգտագործվում է ԴՏ—54 տիպի տրակտորը։ 1959 թվականին գյուղատնտեսական դաշտային աշխատանքների մոտ 69 տոկոսը կատարվել է այդ տրակտորների միջոցով։ ԴՏ—54 տրակտորը իր տեխնիկա-շահագործական ցուցանիշներով դասվում է արտասահմանյան լավագույն տրակտորների շարքին, չնայած անհրաժեշտ է որոշ չափով մոդեռնացնել այն։ 1958 թվականից թողարկվում է Բելոռուս ՄՏԶ—5 տիպի անիվավոր տրակտորը։ Լայն արտադրական փորձարկումներ է անցնում չորս տանող անիվներ ունեցող ՄՏԶ—7 տիպի տրակտորը, որն ունի փոխանցման 10 աստիճան, 40—50 ձիաուժ շարժիչի հզորություն։

Լիպեցկի տրակտորաշինական գործարանը խաղողի և պտղատու այգիների աշխատատար ծանր պրոցեսները մեքենայացնելու համար ստեղծել է Տ—40Ա տիպի հատուկ տրակտոր, որի արագությունը 0,5 մինչև 9,5 կմ ժամ է, իսկ շարժիչի հզորությունը՝ 45 ձիաուժ։ Փոքր հողակտորներում, հատկապես բանջարա-բոստանային կուլտուրաները մշակելիս լայնորեն կարելի է օգտագործել ԴՍՇ—14 և ԴՎՍՇ—16 ինքնագնաց հենասարքերը, Տ—16 և Տ—20 տիպի տրակտորները, ինչպես նաև Ուխտոմսկու անվան գյուղմեքենաշինական գործարանի կողմից մասսայական թողարկման համար նախապատրաստվող ԿՆՖ—1,0 տիպի ձեռքի ինքնագնաց մեքենան՝ հնձիչ ապարատով և այլ գյուղատնտեսական գործիքներով։

Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման և տեխնիկական պրոգրեսի ասպարեզում կարևոր նշանակություն ունի արտադրության զինումը կախովի և



կիսակախովի մեքենաներով, նոր, մեծ արտադրողականություն ունեցող բերքահավաք կոմբայններով և այլ տիպի գյուղատնտեսական մեքենաներով։

Քարքարոտ հողերը շրջելու համար ռեսպուբլիկայում գյուղատնտեսական գոտու հողային պայմաններում կարելի է օգտագործել մեկից չորս իրան ունեցող գութաններ։ Օդեսայի «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի» անվան գործարանը թողարկում է 2—3 իրան ունեցող ՊՆԿ—2 և ՊՆԿ—3 տիպի գութաններ, որոնք նախատեսված են քարքարոտ հողերը մշակելու համար։ Այդ գութաններն ունեն ավտոմատ հարմարանք, որի օգնությամբ գութանի իրանը դիմադրության հանդիպելիս (քարի) ծալվում է, իսկ հետո կրկին բացվում և ընդունում բանող վիճակ, առանց տրակտորիստի միջամտության և առանց տրակտորը կանգնեցնելու։

Ռյազանի գյուղմեքենաշինական գործարանն արտադրում է ԿՌՆ—2,8, ԿՌՕՇ—4,2 և ԿՌՎՆ—2,5 և այլ տիպի կուլտիվատորներ, որոնք նախատեսված են տեխնիկական կուլտուրաների, խաղողի այգիների շարամիջյան տարածությունների, ինչպես նաև քարքարոտ հողերի մշակման համար։

«Հոկտեմբերյան ռևոլյուցիայի» անվան գործարանը 1,5, 2,0 և 2,2 մետր շարամիջյան տարածություն ունեցող խաղողի այգիների մշակման համար թողարկում է կախովի ԿՆՍԻ—7,2 տիպի կուլտիվատոր, որը սարքավորվում է ԴՏ—16Գ տրակտորի վրա, իսկ քարքարոտ հողերը մշակելու համար թողարկում է ԿՌՆ—3Կ տիպի կուլտիվատոր, որը միակցվում է ԴՏ—54 և ԴՏ—55 տրակտորների հետ։

Աշխատանքներ են տարվում արագընթաց ունիվերսալ շարքացան ստեղծելու ուղղությամբ, որը գործելու է 15—25 կիլոմետր-ժամ արագությամբ։ Այդ շարքացանն իր քաշով երկու անգամ ավելի թեթև է, քան սովորականը։ Այն կարող է ցանել տարբեր մեծության և տարբեր բացարձակ կշիռ ունեցող սերմեր։

Միության հատուկ կոնստրուկտորական բյուրոներում այժմ մշակում են շուրջ 200 անուն գյուղատնտեսական նոր մեքենաներ ու գործիքներ՝ ՍՇ—16Գ, ՍՇ—30Ա, ՍՇ—24Գ, ՍՇ—45, ՍՇ—65 և ՍՇ—70 ինքնագնաց հենասարքերի հետ միակցելու համար։ Մշակում են բարձր արտադրողականություն ունեցող կոմբայնների և այլ տիպի բերքահավաք մեքենաների նոր կոնստրուկցիաներ։ Հենասարքերի համար նախագծվող մեքենաների ու գործիքների կոմպլեկտը հնարավորություն կտա մեքենայացնելու գյուղատնտեսական աշխատանքի մոտ 43 պրոցես։

«Ռոստսելմաշի» հատուկ կոնստրուկտորական բյուրոն ՍՇ—65 ինքնագնաց հենասարքի համար նախագծել և պատրաստել է եգիպտացորենի բերքահավաքի եռաշարք կոմբայն։ Գոմելի գյուղմեքենաշինական գործարանը թողարկելու է ՆՍԿ—1,8 տիպի սիլոսահավաք կոմբայնը, որը կհարմարեցվի «ՍՇ—45» հենասարքի վրա, ինչպես նաև «ՆՍԿ—2,6» կոմբայնը ՍՇ—65 հենասարքի հետ միակցելու համար։

Մեծ հեռանկար ունեցող ԿՍ—2 տիպի շաքարի ճակնդեղի բերքահավաք կոմբայնը սարքավորվում է ՍՇ—45 ինքնագնաց հենասարքի վրա. այդ կոմբայնը երկշարքանի է և մեր պայմանների համար միանգամայն հարմար։

Այգեգործության մեքենայացումը դեռևս ետ է մնում։ Խաղողագործության մեջ աշխատատար ծանր պրոցեսները բավականին շատ են, ծախսվում է զգալի մարդկային ուժ։ Խաղողի և պտղատու այգիների կոմպլեքսային մեքենայացումը մարդկային ուժի ծախսման պակասեցման զուգընթաց հնարավորություն կտա աշխատանքները կատարելու ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում և բարձր որակով, որի շնորհիվ զգալիորեն կբարձրանա բերքատվությունը։

Հայտնի է, որ արտասահմանում, հատկապես Իտալիայում, Ֆրանսիայում և Ամերիկայում, լայնորեն կիրառվում են տարբեր տիպի գործիքներ, հարմարանքներ և հատուկ մեքենաներ՝ բերքահավաքի համար։ Հիշատակման արժանի են պտուղներ քաղող՝ «պողպատյա սկյուռ» տիպի ինքնագնաց հիդրավլիկ վերամբարձը, ծառերը խնամելու ինքնագնաց պլատֆորմները և հիդրավլիկ կտրիչները, սանդուղքները, արագ դատարկվող պայուսակները, տարբեր կոնստրուկցիաների տեսակավորող և պահեստավորող մեքենաները։ Անհրաժեշտ է այդ փորձը լայնորեն օգտագործել և մեզ մոտ։ Մեր ռեսպուբլիկայում ստեղծված գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման գիտա-հետազոտական ինստիտուտի հիմնական խնդիրներից մեկը պետք է լինի՝ այգեգործության աշխատատար ծանր պրոցեսների համար նոր մեքենաներ ստեղծելը։

Խաղողագործության և այգեգործության մեքենայացման համար յոթնամյակում նախատեսվում է մեքենաների ու գործիքների մի ամբողջ կոմպլեկտի թողարկում, այդ թվում՝ շարժական սեկցիայով գութան, ունիվերսալ ՊՈՒՆ—1,7 տիպի մեքենա և այլն։ Ռեսպուբլիկայում այ-

վոր կերպով ընդունեց կոնստիտուցիա, որով Չեխոսլովակիան հայտարարվեց Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկա, իսկ ժողովուրդը՝ «ամբողջ իշխանության միակ աղբյուրը»:

Արմատական սոցիալ-տնտեսական ու հասարակական-քաղաքական միջոցառումները ծնեցին նոր՝ սոցիալիստական արտադրական հարաբերություններ, որոնք նպաստեցին երկրի արտադրողական ուժերի արագ զարգացմանը, խթան հանդիսացան Չեխոսլովակիայի տնտեսության վերականգնման և զարգացման երկամյա պլանի (1947—1948 թթ.) հաջող (101,5 տոկոսով) կենսագործման համար:

Հենվելով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ինդուստրիալ հզորության վրա, մի բան, որից իր ժամանակին զրկված էր Սովետական Միությունը, ՉԿՊ-ն զարկ տվեց արդյունաբերության այնպիսի ճյուղերի զարգացմանը, որոնց համար երկիրն ուներ առավել նպաստավոր բնական ու տնտեսական պայմաններ, ինչպիսին են՝ մետաղամշակումը, մեքենաշինությունը և այլն:

1954, ինչպես և 1955 թվականներին Չեխոսլովակիայի ժողովրդական տնտեսությունը զարգանում էր ըստ տարեկան պլանների: 1956 թվականին ընդունվեց երկրի տնտեսության զարգացման երկրորդ հնգամյա պլանը (1956—1960 թթ.), որի գլխավոր նպատակն էր երկրում սոցիալիզմի նյութա-արտադրական բազայի ստեղծման ավարտումը և գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորի վճռական գերակշռության ապահովումը:

Առաջին հնգամյակի, 1954 և 1955 թվականների պետական պլանների և երկրորդ հնգամյակի հաջող կենսագործումը արմատապես փոխել է երկրի ամբողջ պատկերը, դարձրել այն ինդուստրիալ և հզոր սոցիալիստական երկիր:

Եթե Չեխոսլովակիայի արդյունաբերության արտադրանքի 1948 թվականի մակարդակն ընդունենք 100 տոկոս, ապա նրա աճը կունենա հետևյալ պատկերը.

| | 1948թ. | 1956թ. | 1960թ. |
|---|---|---|---|
| *Արդյունաբերական համախառն արտադրանքը* | 100 | 245 | 336 |
| *«Ա» խումբ* . . | 100 | 274 | 388 |
| *«Բ» խումբ* . . | 100 | 214 | 277 |

Երկրի սոցիալիստական արդյունաբերության առավելությունների փայլուն արտահայտությունն են նաև նրա զարգացման բարձր տեմպերը: Բավական է նշել, որ 1948 թվականից հետո Չեխոսլովակիայի արդյունաբերության արտադրանքի տարեկան միջին աճը կազմում է 11,7 տոկոս, այն դեպքում, երբ ԱՄՆ-ում այն կազմում է ընդամենը 3,4 տոկոս, Անգլիայում՝ 3,7 տոկոս:

Հատկապես արագ տեմպերով է զարգանում ծանր ինդուստրիայի սիրտը՝ մեքենաշինությունը, որը դարձել է երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության որոշիչ և առաջատար ճյուղը: Նրա ծավալը ավելացել է գրեթե 5 անգամ. գնալով մեծ նշանակություն են ստանում նաև արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ ճշգրիտ մեքենաշինությունը, քիմիականը, էլեկտրատեխնիկականը և այլն: Արդյունաբերությունը պինված է նորագույն տեխնիկայով, լայնորեն անց է կացվում արտադրական պրոցեսների ավտոմատացում: Արդեն ավտոմատացված են շոգեկաթսաների, դոմնային վառարանների գործունեության շատ պրոցեսներ. բազմաթիվ ձեռնարկություններում, ինչպես, օրինակ, Վ. Ի. Լենինի անվան աշխարհահռչակ մետալուրգիական կոմբինատում մտցված է արտադրության հոսքային սիստեմ: 1951 թվականից ի վեր շահագործման հանձնված բոլոր հիդրոէլեկտրակայանները, որպես կանոն, գործում են ավտոմատ կերպով:

Արդյունաբերության տեսակետից բարձր զարգացած չեխական մարզերը եղբայրական օգնություն են ցույց տալիս նախկինում հետամնաց, ագրարային կցորդ Սլովակիային: Դեռ առաջին հնգամյակի տարիներին այստեղ կառուցվեցին 125 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և վերակազմավորվեցին ու ընդլայնվեցին 109 խոշոր այլ գործարաններ, որի շնորհիվ Սլովակիան դարձավ ինդուստրիալ-ագրարային երկիր:

Ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանների կենսագործման արդյունքն այն եղավ, որ Չեխոսլովակիան դարձավ ինդուստրիալ երկիր և արդյունաբերության մի շարք կարևորագույն ճյուղերի արտադրանքով (ըստ բնակչության շնչին ընկնող քանակի) հասավ և անցավ այնպիսի առաջավոր կապիտալիստական երկրներից, ինչպիսիք են՝ Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան, Ֆրանսիան և երբեմնի «աշխարհի արհեստանոց» Անգլիան:

Մեծ են Չեխոսլովակիայի նվաճումները գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ասպարեզում: Ներկայումս միացյալ գյուղատնտեսական կոոպերատիվները և պետական հողագործական տնտեսությունները մշակում են երկրի ամբողջ վարելահողերի 86.2 տոկոսը:

Գյուղատնտեսության սոցիալիստական կոոպերացումը լայն հնարավորություններ ստեղծեց արտադրական պրոցեսների մեքենայացման համար. մինչդեռ 1937 թվականին երկրի վարելահողերի յուրաքանչյուր հազար հեկտարին ընկնում էր 1,5 տրակտոր, ապա այժմ ընկնում է 7,5 տրակտոր և շատ այլ գյուղատնտեսական մեքենաներ: Երկիրը ծածկված է մեքենա-տրակտորային կայանների խիտ ցանցով: Շատ կոոպերատիվներ սեփական միջոցներով ձեռք են բերում տրակտորներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ. միայն



1959 թվականին նրանք գնել են շուրջ 11 հազար տրակտոր: Կառավարությունը այդ խրախուսում է և ցույց տալիս ֆինանսական օգնություն:

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման շնորհիվ Չեխոսլովակիան գյուղատնտեսության ինտենսիվության տեսակետից (այսինքն՝ ըստ մեկ հեկտարից ստացվող արտադրանքի) առաջ է անցել Անգլիայից, Ֆրանսիայից ու մի շարք այլ երկրներից: Հատկապես մեծ է անասնապահության ինտենսիվությունը, որով նա առաջ է անցել նաև ԱՄՆ-ից: Բնակչության մեկ շնչին ընկնող ցորենի և կարտոֆիլի արտադրությամբ Չեխոսլովակիան առաջ է անցել ԳՖՌ-ից և Ֆրանսիայից, խոզի մսի և կաթի արտադրությամբ՝ Անգլիայից և ուրիշ շատ երկրներից:

Սոցիալիստական շինարարության օրինաչափ արդյունքը հանդիսացավ ժողովրդական լայն մասսաների նյութական մակարդակի անշեղ վերելքը: Ազգային եկամուտը, որի 3/4 մասը ծախսվում է բնակչության նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարման վրա, իսկ 1/4 մասը՝ սոցիալիստական արտադրության հետագա ընդլայնման ու երկրի պաշտպանության ամրապնդման վրա, աճել է ավելի քան 2 անգամ: Կրկնապատկվել է աշխատավորական լայն մասսաների նոմինալ աշխատավարձը, վերացել է կնոջ և տղամարդու աշխատավարձի տարբերությունը, որը մինչև պատերազմը հասնում էր 40 տոկոսի:

Ընդամենը 3 տարվա (1953—1956 թթ.) ընթացքում 6 անգամ իջեցվել են լայն սպառման առարկաների գները, որի շնորհիվ ռեալ աշխատավարձը ներկայումս աճել է 35,5 տոկոսով: Ռեալ աշխատավարձի բարձրացումը, որպես կանոն, զուգորդվում է աշխատանքային օրվա տևողության կրճատման հետ:

Մեծ են հաջողությունները բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում. ընթացիկ ժամանակաշրջանում շահագործման են հանձնվել 500 հազար նորակառույց բնակարաններ. նախատեսված է մինչև 1970 թվականը շահագործման հանձնել ևս 1200 հազար բնակարան, որով և արմատապես կլուծվի բնակարանային հարցը: Չեխոսլովակիայի ամբողջ բնակավայրերի 97 տոկոսը ունի էլեկտրական լուսավորություն, 100 տոկոսը՝ հեռախոսային կապ: Ընդլայնվում են ջրախողովակային սիստեմը և գազիֆիկացումը: Մեծ ուշադրություն է հատկացվում նաև ծերերի ու անաշխատունակների սոցիալական ապահովագրության, բնակչության առողջապահական պայմանների վրա:

1950 թվականի հունիսին տեղի ունեցավ Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի XI համագումարը, որը, հանրագումարի բերելով երկրի սոցիալիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած հսկայական նվաճումները, ընդգծեց, որ ընթացիկ առանցքային հարցը Չեխոսլովակիայում սոցիալիզմի կառուցման ավարտումն է: Ելնելով համագումարի որոշումներից, ՉԿՊ-ի Կենտկոմը մշակել և արդեն համաժողովրդական քննարկման է ներկայացրել երկրի զարգացման երրորդ հնգամյա պլանը (1961—1965 թթ.), որը նախատեսում է արդյունաբերության և գյուղատնտեսության նոր և շեշտակի վերելք: Հատկապես արագ են զարգանալու մեքենաշինությունը և էլեկտրաէներգիայի արտադրությունը, քիմիական արդյունաբերությունը և մի շարք այլ կարևոր ճյուղեր: Հատուկ ուշադրություն է դարձված նաև թեթև ու սննդի արդյունաբերության զարգացմանը, բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացմանը և այլն:

Չեխոսլովակիայի ժողովուրդը զգում է իր նյութական և կուլտուրական մակարդակի օրավուր վերելքը, ապրելակերպի անշեղ բարելավումը և ոչ մի ջանք չի խնայում հարազատ պարտիայի և կառավարության առաջադրած հերթական խնդիրները կենսագործելու համար: «Մենք մտնում ենք ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի հոբելյանական 15-րդ տարին՝ հասած սոցիալիստական արտադրական հարաբերությունների լրիվ հաղթանակի ամբողջ ժողովրդական տնտեսությունում,— ընդգծեց իր նոր տարվա ողջույնի ճառում ռեսպուբլիկայի պրեզիդենտ Անտոնին Նովոտնին:— Մենք ընդհուպ մոտեցել ենք մերձավորագույն նպատակի իրագործմանը՝ սոցիալիզմի կառուցման ավարտմանը... Չեխոսլովակիայի աշխատավորությունը անշեղ կերպով ավարտում է սոցիալիզմի կառուցումը, որպեսզի այնուհետև անցնի կոմունիստական հասարակարգի աստիճանական կառուցմանը»:

Հանդիսանալով սոցիալիզմի հզոր լագերի անբաժանելի մասը, Չեխոսլովակիան ուժի անսպառ աղբյուր է գտնում այդ լագերի հզորության մեջ: Սոցիալիստական շինարարության ասպարեզում նրա ձեռք բերած հաջողություններն իրենց հերթին ամրապնդում են սոցիալիզմի լագերը: Բայց դրանով չի սահմանափակվում Չեխոսլովակիայում սոցիալիզմի կառուցման միջազգային նշանակությունը: Գործնականում այն ցույց է տալիս, որ կապիտալիստական տեսակետից զարգացած երկրները, ազատագրվելով կապիտալիզմի շղթաներից, մեծագույն արագությամբ կընթանան դեպի մարդկության լուսավոր ապագան՝ դեպի կոմունիզմ:

Ս. ՀՈՎՆԱՆՅԱՆ

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾ ՄՏՔԻ ՄԱՐԴԻԿ



Երեք ամիս առաջ էր։ Գոհունակության խոր զգացումով էլեկտրամեքենաշինարարներն իմացան, որ իրենց կողմից առաջադրված թեկնածուն՝ Վադիմ Վսեվոլոդովիչ Ալեքսեևսկին ընտրվել է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ։ Դրանով իսկ պաշտոնական ճանաչում գտավ ու գնահատվեց այդ խոշոր մասնագետի, ժրաջան գիտնական-հետազոտողի անցած քսան տարիների արգասավոր ծառայությունը։

Վադիմ Ալեքսեևսկին էլեկտրամեխանիկայի Համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի կազմակերպիչներից է, նրա գիտական ղեկավարը։ Ստեղծագործական ավյունով լի ու մեծ էրուդիցիայի տեր այդ մարդուն շատ-շատերը գիտեն ոչ միայն որպես հմուտ ինժեների ու արտադրության լավ հրամանատարի, այլ նաև որպես գիտնականի, ցածրավոլտ կոմուտացիոն ապարատուրայի և, հատկապես, ջերմային պաշտպանական սարքերի բարձրորակ մասնագետի։ Նա բեղմնավոր գործ է կատարում էլեկտրական ժամանակակից մեքենաների ու ապարատների ստեղծման ասպարեզում, նրա գրչին են պատկանում էլեկտրամեխանիկայի տեսական ու գործնական ակտուալ հարցերին նվիրված շուրջ երեք տասնյակ հոդվածներ, աշխատություններ։ Առանձնապես գիտնականների կողմից մեծ գնահատության է արժանացել «Երկմետաղների կիրառումը էլեկտրաապարատաշինության մեջ» տեսական-պրակտիկ նշանակություն ունեցող աշխատությունը։

Վադիմ Վսեվոլոդովիչի մոտ լավ են զուգորդվում գիտությունն ու արտադրությունը։ Երբ մոտիկից ծանոթանում ես աշխատանքային նրա անցած ուղուն ու առօրյա գործունեությանը, շատ ցցուն կերպով աչքի է զարնում նրա անձնական բնորոշ գիծը՝ գիտությունն ի սպաս դնել արտադրության զարգացման գործին։

Քսան տարի առաջ ավարտելով Մոսկվայի էներգետիկ ինստիտուտը՝ ինժեներ-էլեկտրիկ Ալեքսեևսկին աշխատանքի մտավ գործարանում, ուր ուսումնառության տարիներին ձեռք բերած գիտելիքները հարստացրեց պրակտիկայով։ Գործարանում աստիճանաբար դրսևորվեցին հետազոտողի նրա հակումները, ռեալ կերպարանք ստացան ստեղծագործական մտահղացումները։ Աշխատելով՝ նա 1949 թվականին ավարտեց ասպիրանտուրան։

Եվ ահա տեխնիկական գիտությունների թեկնածուի դիպլոմով, Վ. Ալեքսեևսկին այդ նույն թվականին գալիս է Երևան և աշխատանքի անցնում Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում՝ սկզբում որպես կոնստրուկտորական բյուրոյի ղեկավար և ապա գործարանի գլխավոր ինժեներ։ Այստեղ արտադրության մեջ անցկացրած ութ տարիներին նա խոշոր գործ կատարեց ձեռնարկության տեխնիկական վերազինման, էլեկտրական նոր մեքենաների ստեղծման ու թողարկման բնագավառում։

Հետագայում, երբ էլեկտրամեքենաշինական գործարանի բազայի վրա ու նրան առընթեր



կազմակերպվեց գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալ, Ալեքսեևսկին նրա գիտական ղեկավարը դարձավ։ Դա հենց այն էր, ինչին ամբողջ էությամբ ձգտում էր նա՝ ստեղծագործել, գիտությամբ զբաղվել բուն արտադրության մեջ և նյութական բարիքներ ստեղծող մարդկանց հետ համագործակցած, օգնել լուծելու արտադրության տեխնիկական զարգացման կարևորագույն խնդիրները։



Սիրելի ընթերցող։ Այս տարի լրանում է Հայաստանում Սովետական իշխանության հաստատման քառասնամյակը՝ նոր կյանքի կառուցման, ստեղծագործական աշխատանքի քառասուն հերոսական տարեկիցը։ Մեր ռեսպուբլիկան դարձել է ինդուստրիալ, առաջավոր գիտության ու տեխնիկայի երկիր։ Եկեք ձեզ հետ միասին այսօր մոտիկից ծանոթանանք մեր բազմաթիվ գիտա-հետազոտական ինստիտուտներից մեկի գործունեությանը, այն ինստիտուտի, ուր աշխատում է կոմունիստ Վադիմ Ալեքսեևսկին։

Դիմում ենք ինստիտուտի գիտական քարտուղար Արտյոմ Խաչատուրովին, որը մեծ սիրով պատասխանում է մեր հարցերին, բացատրություններ տալիս։

— Չորս տարի առաջ, 1956 թվականին, կազմակերպվեց էլեկտրամեխանիկայի Համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալը,— պատմում է նա,— որի ծնունդը հրամայաբար թելադրել էր ռեսպուբլիկայում էլեկտրամեքենաշինության բուռն զարգացումը։ Նրա հիմնադիրները եղան գլխավորապես արտադրության բովով անցած մի քանի տասնյակ երիտասարդ ինժեներներ ու տեխնիկներ, որոնցից շատերն այժմ դարձել են առաջատար մասնագետներ։ Տարեցտարի ընդլայնվում է ֆիլիալը, մեծանում գիտա-հետազոտական աշխատանքի ծավալը։ Ներկայումս մեզ մոտ աշխատում են ավելի քան 550 մարդ, այդ թվում տեխնիկական գիտությունների 12 թեկնածու։ Գոյություն ունի ասպիրանտուրա, ուր առանց արտադրությունից կտրվելու սովորում են առավել աչքի ընկնող շնորհալի ինը երիտասարդներ։

— Իսկ շա՞տ են երիտասարդները գիտական աշխատողների կազմում։

— Ջահել է մեր ինստիտուտը, երիտասարդ է նրա կոլեկտիվը,— պատասխանում է ընկ. Խաչատուրովը,— նրա անդամների կեսից ավելին կոմերիտական տարիքի տղաներ ու աղջիկներ են։ Մեզ մոտ աշխատելու են գալիս բազմաթիվ երիտասարդներ՝ իրենց խոհերով ու մտորումներով։ Ի դեպ, ասենք, որ աշխատակիցների ընդհանուր թվից ավելի քան երկու հարյուրը կանայք են։ Մեր գիտական կոլեկտիվի (որը երիտասարդ է ոչ միայն տարիքով, այլև փորձառությամբ) ստեղծագործական արագ աճի, նրա հասունացման մասին են վկայում հետազոտական աշխատանքի ընդարձակումը, գիտա-տեխնիկական բարդ խնդիրների հաջող լուծումը։ Այսպես, եթե 1956 թվականին մշակվել ու ավարտվել է յոթ թեմա, ապա անցյալ տարի՝ 90 թեմա, որոնց մեծ մասն արմատավորվել է արտադրության մեջ։ Այդ թեմաները պրակտիկայում իրենցից ներկայացնում են բազմաթիվ կատարելագործված նոր էլեկտրական մեքենաներ ու ապարատներ, էլեկտրատեխնիկական նոր նյութեր, ավտոմատ գծեր ու սարքավորումներ, տեխնոլոգիական սխեմաներ։

Ինստիտուտը դարձել է էլեկտրամեքենաշինական արդյունաբերության գիտա-տեխնիկական մտքի կարևոր օջախներից մեկը։ Այստեղ մենք իմացանք նաև տվյալ բնագավառի՝ Միության խոշոր գիտականներից մեկի, տեխնիկական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Ա. Մ. Բամդասի կարծիքը այդ ինստիտուտի մասին։ Նա, որ ուշի-ուշով հետևում է իր հայ երիտասարդ կոլեգաների բեղմնավոր գործունեությանը, նշելով նրանց կատարած գիտա-հետազոտական աշխատանքի բարձր մակարդակը, գրում է. «Գտնում եմ, որ այդ ինստիտուտը լրիվ կարելի է համարել ակադեմիական»։

Իրոք, այդ ջանասեր կոլեկտիվն իր հետազոտություններով, հանձնարարականներով հարստացնում է մեր գիտությունն ու տեխնիկան, առաջ մղում արդյունաբերությունը։ Թեև եղած փորձը դեռևս քիչ է, ընդհանուր գանձարանում ներդրվող նրա լուման համեստ, այնուամենայնիվ այն, ինչ այստեղ արել ու մտածում են անել, արժանի է քաջալերանքի։

Գիտության ու տեխնիկայի արդի մակարդակին համապատասխան, ինստիտուտում ընթանում է լարված, քրտնաթոր ստեղծագործական պրոցես։ Գծագրական տախտակների վրա, լաբորատորիաներում ու արտադրական ցեխերում ծնունդ են առնում վաղվա ավելի կատարյալ էլեկտրական մեքենաների ու ագրեգատների էսքիզները, տեխնոլոգիական նոր սխեմաները, որոնք մեծ մասամբ տեխնիկական-տնտեսական և շահագործման ցուցանիշներով չեն զիջում հայրենական ու արտասահմանյան նմուշներին։

Մեր կարծիքով ինստիտուտի հաջող գործունեության երաշխիքը նրա՝ արտադրության հետ անմիջականորեն կապված լինելն է։ Տերիտորիալ առումով այն գործում է մի միջավայրում, ուր նյութական տեսք են ստանում, մարմնավորվում ստեղծագործ մտքի արդյունքները։ Բացի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանից, որը ինստիտուտի բազան է, ներկայումս այն արդեն իր բաժիններն ու սեկտոր-

Կենտկոմների պատվոգրերին և 1000 ռ. դրամական պարգևի։ Կոմբինատի 11 լավագույն ռացիոնալիզատորներ պարգևատրվեցին ՀԼԿԵՄ Կենտկոմի, իսկ 8-ը՝ ՀԼԿԵՄ Կիրովականի քաղաքային կոմիտեի պատվոգրերով, 18-ը ստացան թանկարժեք նվերներ։

Կոմբինատի պարտիական կոմիտեն և դիրեկցիան ամեն ինչ անում են ռացիոնալիզացիայի գործը ավելի բարելավելու և նորարարների շահագրգռվածությունը բարձրացնելու համար։ Գործն այնպես է կազմակերպված, որ յուրաքանչյուր առաջարկության հեղինակ իր առաջարկության պատասխանը ստանում է 15 օրից ոչ ուշ։ Այդ արդյունք է այն բանի, որ սիստեմատիկաբար (ամիսը 2 անգամ) հրավիրվում է տեխնիկական խորհրդի նիստ, որտեղ քննարկվում են արված առաջարկությունները։ Անցյալ տարի առաջարկությունների հեղինակները և առաջարկությունները արտադրության մեջ ներդնողները արժանացան խրախուսանքի ու դրամական պարգևների (122 հազ. ռ. 1959 թ. ընթացքում)։

Կոմբինատի «Կիրովականի քիմիագործ» բազմատիրաժ թերթը սիստեմատիկաբար լուսաբանում է ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման արդյունքները, լավագույն նորարարների մասին միշտ տրվում է ինֆորմացիա և, որ գլխավորն է, ամիսը մեկ անգամ տրվում է տեխնիկական էջ, որտեղ մանրամասն նկարագրվում են ամսվա ընթացքում կատարված աշխատանքները։

Այս տարի 40 ընկերներ փորձի փոխանակման նպատակով եղել են Միության մյուս ձեռնարկություններում և շատ արժեքավոր նորություններ են ընդօրինակել ու ներդրել արտադրության մեջ։

Պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ կոմբինատում կազմակերպված է տեխնիկական գրականության հարուստ գրադարան։ Հաճախակի կազմակերպվում են զեկուցումներ (Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի կարող ուժերի միջոցով) տեխնիկական գիտությունների նորույթների մասին։

Մեր կոմբինատի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել լավագույն ցուցանիշներով դիմավորելու Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-րդ տարեդարձը։ Կոլեկտիվը խոստացել է մինչև 1960 թվականի նոյեմբերի 29-ը արտադրության մեջ ներդնել 500 առաջարկություն, 2 միլիոն 200 հազար ռուբլու պայմանական տնտեսական օգուտով և ռացիոնալիզատորների թիվը անցյալ տարվա 270-ից հասցնել 370-ի։ Կոմբինատի կոլեկտիվը ջանք չի խնայում վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար։

Խ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ
Կիրովականի քիմկոմբինատի
պարտկոմիտեի քարտուղար

## ԱՐԺԵՔԱՎՈՐ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ

Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի ԼԿԵՄ կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովն էր։ Շատ հարցերի հետ կոմերիտականներին հուզում էր ամենից առաջ թողարկվող արտադրանքի որակը։

— Մի՞թե մեզ, կոմերիտականներիս, պատիվ է բերում,— հուզված ասաց Մ. Ղազարյանը,— թողարկվող դետալների ցածր որակը։ Դա հետևանք է այն բանի, որ գործարանի ԼԿԵՄ կոմիտեն անբավարար է զբաղվում երիտասարդ պրիբորաշինարարների տեխնիկական գիտելիքների բարձրացման հարցերով։

— Ճիշտ է,— համաձայնեցին ժողովականները։

Քննադատությունն, իրոք, տեղին էր։ Բայց ոչ մի առաջարկություն չարվեց այդ վիճակից դուրս գալու համար։ Միայն ժողովից հետո հավաքման ցեխի հավաքող, կարգավորիչ բանվոր, ԼԿԵՄ կոմիտեի անդամ Մելսիկ Մելիքյանը հայտնեց գործարանի պարտիական կազմակերպության բյուրոյին և ԼԿԵՄ կոմիտեին, որ անհրաժեշտ է համարում տեխնիկական գիտելիքների միամսյակ անցկացնել։ Պաշտպանելով ու հավանություն տալով այդ առաջարկությանը, պարտբյուրոն և ԼԿԵՄ կոմիտեն գործարանի ադմինիստրացիայի հետ միասին ստեղծեցին միամսյակն անցկացնող հանձնաժողով, որը մշակեց միամսյակի անցկացման ծրագիրը։

Որոշվեց բանվոր-երիտասարդությանը ծանոթացնել հարազատ ձեռնարկության արտադրած պրիբորների, նրանց թողարկման տեխնոլոգիայի հետ, բացատրել դրանց դերն ու նշանակությունը ժողովրդական տնտեսության մեջ, ինչպես նաև անցկացնել գործնական պարապմունքներ, պրիբորաշինարարներին ծանոթացնել գործարանի տեխնիկայի հետ։

Արտադրելով պրիբորների առանձին մասեր, բանվորները, բացի հավաքողներից, չգիտեին, թե որտե՛ղ, ո՛ր հանգույցում են օգտագործվում դրանք, ի՛նչ սկզբունքներով են աշխատում իրենց իսկ ձեռքով պատրաստած առանձին դետալները։ Ավելին, շատերը դժվարությամբ էին համոզվում, որ պատրաստված առանձին դետալներ լավ չեն մշակված, անորակ են։ Իսկ տեսնելը նրանց համոզում էր այդ բանում։

Ահա այս նպատակով 1959 թվականի նոյեմբերը գործարանում հայտարարվեց տեխնիկական գիտելիքների բարձրացման ամիս։ Նախօրոք կազմված գրաֆիկի համաձայն սկսվեցին պարապմունքները։ Բանվորները լսում էին զեկուցումներ ու դասախոսություններ, որոնք զուգակցվում էին գործնական աշխատանքների հետ։



Միամսյակի ընթացքում կարդացվեց 17 զեկուցում-դասախոսություն՝ «Պրիբորների աշխատանքների սկզբունքները», «Մետաղների մշակման տեխնոլոգիան», «Դետալների գալվանապատումը», «Գործիքների դրոշմների պատրաստման տեխնոլոգիան» և այլ թեմաներով։

Տեխնիկական միամսյակի ընթացքում գործարանի բոլոր բանվորները ծանոթացան պրիբորների աշխատանքի, գործարանի ամբողջ տեխնիկայի, տարբեր ցեխերում արտադրվող դետալների հետ, իմացան, թե ո՛ր ցեխում պրիբորների ո՛ր մասն է պատրաստվում և ինչպես։ Միաժամանակ նրանք իմացան, թե իրենց պատրաստած մասերը ինչ դեր են կատարում պրիբորների մեջ։ Մի քանի օրինակներով կարելի է ցույց տալ, թե որքան մեծ նշանակություն ունեցավ այդ միամսյակը։

ՊՊՐ—4 պրիբորի կրանշտեյնը մեխանիկական մշակման էր ենթարկվում ձուլման տեղամասում։ Նախքան միամսյակը այդ տեղամասի արտադրանքի զգալի քանակը խոտանվում էր։ Գրեթե բոլոր անցքերը չէին համապատասխանում գծագրին և չէին բացվում։ Ձուլողները եղան հավաքման ցեխում և տեսան իրենց արտադրանքի թերությունները։ Տեղում բացատրվեց ցածրորակ արտադրանքի թողարկման պատճառները։ Հաշվի առնելով ընկերների դիտողությունները և վերացնելով թերությունները, այժմ ձուլողները թողարկում են միայն բարձրորակ արտադրանք, դրանով իսկ կանխելով խոտանը։ Մեխանիկական ցեխում ծայրապանակ կոչվող դետալը նույնպես որակով չէր պատրաստվում, իսկ տեխնիկական վերահսկողության բաժնի աշխատողները լուրջ ուշադրություն չէին հատկացնում խոտանը տեղում կանխելու հարցերին։ Այժմ ցեխի բանվորները թողարկում են միայն գերազանց որակի արտադրանք։

Տեխնիկական միամսյակի անցկացմանը ակտիվ կերպով մասնակցեցին կոմունիստ-ինժեներներ՝ Ա. Սաֆարյանը, Ա. Հովսեփյանը, կոմերիտականներ՝ Վ. Մելիքսեթյանը, Է. Գրիգորյանը և շատ ուրիշներ։ Նրանք ո՛չ միայն զեկուցումներ ու դասախոսություններ էին կարդում, այլև տեղերում կատարում էին գործնական աշխատանքները։

Այժմ գործարանի բոլոր աշխատողները գիտակցորեն պայքարում են խոտանի դեմ և, պետք է ասել, որ միամսյակից հետո ձեռնարկությունում թողարկվող արտադրանքի խոտանման ոչ մի փաստ չի արձանագրվել։

Մեր գործարանի բանվորները և ինժեներատեխնիկական աշխատողները գիտակցում են, որ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է հետևողականորեն բարձրացնել իրենց տեխնիկական գիտելիքների մակարդակը, ավելի լավ տիրապետել նորագույն տեխնիկային։

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ
Գործարանի պարտիական
կազմակերպության քարտուղար

## ՀԱՐՈՒՍՏ ՀԵԿՏԱՐԻ ՀԱՄԱՐ

Յոթնամյա պլանով գյուղատնտեսության առջև դրված խնդիրների լուծումը սովետական մարդկանցից պահանջում է նոր նախաձեռնություններ, որոնք կնպաստեն գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելուն։

Այդպիսի նախաձեռնություններից է Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի Կիրովի անվան կոլտնտեսության երիտասարդական բրիգադայի բրիգադավար, կոմունիստ Գրիգոր Բարսեղյանի ղեկավարած «Հարուստ հեկտարի համար» շարժումը։ Նրա նպատակն է յուրաքանչյուր հեկտարի վրա ճիշտ կիրառել ագրոմիջոցառումների ամբողջ կոմպլեքսը, պահպանել բույսերի լրիվ քանակը, իջեցնել արտադրվող մթերքների ինքնարժեքը։ «Հարուստ հեկտարի համար» շարժումը կարճ ժամանակամիջոցում իր ջերմ հետևորդները գտավ ռեսպուբլիկայի տարբեր շրջանների կոլտնտեսություններում, պաշտպանվեց ու հավանության արժանացավ ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի կողմից. մեր երկրի շատ շրջաններ արձագանքեցին այդ շարժմանը։

Այժմ մեր ռեսպուբլիկայում շատերն են խոսում Գրիգոր Բարսեղյանի և նրա հայրենասիրական նախաձեռնության մասին։

Գրիգոր Բարսեղյանն արդեն տարեց մարդ է, ալեհեր, բայց նրա բրիգադայում կան շատ երիտասարդներ, որոնք իրենց լավագույն աշխատանքով վայելում են կոլտնտեսականների սերն ու հարգանքը։

Մեծ չէ նրա բրիգադայի հողատարածությունը, ընդամենը 45 հեկտար, որը հավասարաչափ բաժանված է երկու օղակների միջև։ Օղակներում ընդգրկված են 65 կոլտնտեսական, որոնք հիանալի մարդիկ են, սոցիալիստական դաշտերի իսկական հերոսներ։ Ժրաջան մեղվի

մի ընտանիք է Գրիգորի բրիգադան, ուր շատերն են ուզում աշխատել։ Նույնիսկ ծույլ համարվող առանձին մարդիկ աշխատելով Գրիգոր Բարսեղյանի բրիգադայում, դառնում են աշխատասեր։ Բրիգադայի այնպիսի երիտասարդ առաջավորներ, ինչպիսիք են՝ Թորգոմ Սայադյանը, Վաղարշակ Ստեփանյանը, Օֆելյա Զաքարյանը, Մարջիկ Բաբայանը, շնորհալի մեխանիզատորներ Գառնիկ Մարգարյանը, Մարտին Վարդանյանը և շատ ուրիշներ օրվա առաջադրանքները կատարում են 180—200 տոկոսով և հայտնի են ո՛չ միայն կոլտնտեսությունում, այլև ամբողջ շրջանում։

Ոչ վաղ անցյալում Շահումյանի անվան կոլտնտեսությունն ուներ անբերրի մի հողամաս, որի 20 հեկտարի վրա փռված էին ոչ լիարժեք այգիներ։ Այդ տարածությունը մշակելուց խուսափում էին բոլորը, որովհետև դրանից շատ քիչ բամբակ, խաղող, բանջարեղեն էր ստացվում։ Կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը որոշեցին այդ հողամասը հանձնել Բարսեղյանին. նա սիրով համաձայնեց։

— Միևնույն է, ոչինչ դուրս չի գա, զուր տեղը միայն ավելորդ աշխատանք պետք է թափվի դրա վրա,— այս ու այն կողմից լսվեցին կասկածամիտների ու թերահավատների ձայներ։

Եվ իրոք, բրիգադայի առաջին տարվա աշխատանքի արդյունքները գոհացուցիչ չէին. ստացվեց ավելի ցածր բերք, քան նախատեսված էր։ Բայց Գրիգոր Բարսեղյանին և բրիգադայի անդամներին այդ չհուսահատեցրեց։ Պետք էր բարձրացնել հողի բերրիությունը, առանց լրացուցիչ կապիտալ ծախսեր կատարելու, իջեցնել արտադրվող մթերքների ինքնարժեքը, հասնել կոլտնտեսության առաջավոր բրիգադաներին, այդ անբերրի հողատարածության յուրաքանչյուր հեկտարը դարձնել լիարժեք և ստանալ առատ բերք։

Գրիգոր Բարսեղյանի բրիգադայի 45 հեկտար հողատարածությունը բաշխվեց հետևյալ կերպ. խաղողի այգի՝ 20, բամբակենու ցանք՝ 15, բանջարա-բոստանային կուլտուրաներ՝ 5, պտղատու այգի՝ 5 հեկտար։

Բրիգադայի ջանասեր աշխատանքի շնորհիվ 1957 թվականին հեկտարից ստացվեց 40 ցենտներ բամբակ, իսկ 1958 թվականին՝ 43, այսինքն՝ բամբակի բերքատվությունը, 1953 թվականի համեմատությամբ, բարձրացավ երկու ու կես անգամ, մինչդեռ մյուս բրիգադաներում բամբակի բերքատվությունը հասնում էր հեկտարից 25—28 և լավագույն դեպքում՝ 30 ցենտների։

Բամբակի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից Բարսեղյանի բրիգադան ստացավ 43 ցենտներ բերք, յուրաքանչյուր ցենտների վրա ծախսելով 2,1 աշխօր, իսկ նույն կոլտնտեսության № 6 բրիգադան (բրիգադավար Հայկ Սահակյան) ամեն մի հեկտարից հավաքեց 29,5 ցենտներ՝ յուրաքանչյուր ցենտների վրա ծախսելով մոտ 6 աշխօր։ Թեև 1959 թվականի անբարենպաստ պայմանները հնարավորություն չտվեցին անկորուստ հավաքելու բամբակի բերքը, բայց Բարսեղյանի բրիգադան կոլտնտեսությունում առաջիններից մեկն էր, որ հաջողությամբ կատարեց բամբակի հանձնման պետական առաջադրանքը։

Այդ բրիգադան լավ է մշակում բամբակենու պլանտացիաները, յուրաքանչյուր հողակտոր սիստեմատիկաբար պարարտացնում։

Գարնանը, բրիգադայի բամբակագործները խնամքով կատարեցին առաջին փխրեցումը և միջշարային տարածությունների հավասարեցումը։ Օրինակ, անցյալ տարի 3 անգամ կատարվեց քաղհան, 3 անգամ՝ բույսերի սնուցում՝ մեքենաների միջոցով, մինչդեռ մյուս բրիգադաներում հազիվ հասցնում են մեկ անգամ սնուցում կատարել։ Պետք է նշել, որ բամբակի մշակության մեջ մեքենաները լիովին օգտագործելու շնորհիվ պակասում է ծախսվող աշխօրերի քանակը, բարձրանում բերքատվությունը, իջնում արտադրանքի ինքնարժեքը։ Հատկանշական է, որ Բարսեղյանի բրիգադայում բամբակի մեկ կիլոգրամի ինքնարժեքն է մեկ ռուբլի, իսկ № 6 բրիգադայում՝ 2 ռ. 50 կոպեկ։

Ախատանքի ճիշտ կազմակերպման և ագրոտեխնիկական կանոնների լրիվ կիրառման շնորհիվ բրիգադան 20 հեկտար անբերրի տարածության յուրաքանչյուր հեկտարից 1958 թվականին ստացավ 84,5 ցենտներ խաղող, ամեն մի ցենտների վրա ծախսելով 3,86 աշխօր։ Մեկ կիլոգրամ խաղողի ինքնարժեքը կազմեց մեկ ռուբլի 15 կոպեկ։ Անցյալ տարի նույն տարածության յուրաքանչյուր հեկտարից բրիգադան ստացել է 137 ցենտներ խաղողի բերք, յուրաքանչյուր ցենտների վրա ծախսելով 2,4 աշխօր։ Այստեղ խաղողի մեկ կիլոգրամի ինքնարժեքը կազմում է՝ 96 կոպեկ։

Խաղողի բարձր բերքի ապահովման համար բրիգադայի անդամների ուժերով այգեփորից բացի տարեկան մեկ-երկու անգամ կատարվում է քաղհան, 20 հեկտար այգիներից յուրաքանչյուր 5 հեկտարը չորս տարին մեկ անգամ պարարտացվում է 30—40 տոննա տեղական, 300—350 կգ ազոտային և 500—600 կգ ֆոսֆորային պարարտանյութերով։

Բարձր բերքատվությունն ապահովելու պայմաններից մեկն էլ այն է, որ բրիգադայի այգիները լիարժեք են։ Շատ կոլտնտեսություններում 2600—2700 վազի փոխարեն մեկ հեկտարի վրա կա 1200—1300 վազ։ Մինչդեռ Բարսեղյանի բրիգադայի կոլտնտեսականներն անդալիզի և արմատակալների միջոցով սիստեմատիկաբար նորոգում են իրենց այգիները, պահպանում վազերի քանակն ու ապահովում հեկտարների լիարժեքությունը։ Բրիգադան պլանավորել է այգիները մշակել լարային-կորդոնային եղանակով, որը հեկտարի միջին բերքատվությունը կբարձրացնի 50—60 տոկոսով, հնարավորություն կտա այգիները մշակել մեքենաներով։

Մեծ են այդ բրիգադայի ձեռք բերած հաջողությունները բանջարա-բոստանային կուլտուրաների բերքատվության բարձրացման ասպարեզում։

Բարսեղյանը խախտեց տարիներ ի վեր ընդունված սոխի մարգային մշակման եղանակը և անցավ ակոսային մշակման։ Այդ եղանակի արդյունավետությունը փորձելու համար 9 հազար քառակուսի մետր հողատարածության վրա սոխ մշակեց ակոսային եղանակով։ Արդյունքը մեծ էր. մեկ հեկտարից պակաս տարածությունից ստացվեց 540 ցենտներ սոխ, պլանով նախատեսված 160-ի փոխարեն, իսկ 1959 թվականին ստացվեց 590,2 ցենտներ։ Կոլտնտեսությունն այդքան բերք երբեք չէր ստացել։

Ակոսային եղանակով ցանված 2 հեկտար պոմիդորի ցանքատարածությունից պլանով նախատեսված 350 ցենտների դիմաց ստացվել է 481 ցենտներ բերք, յուրաքանչյուր ցենտների վրա ծախսելով 0, 75 աշխօր, իսկ № 4 բրիգադան (բրիգադավար Հարեթ Մկրտչյան) 3 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 278,9 ցենտներ, յուրաքանչյուր ցենտների վրա ծախսելով 0,85 աշխօր։ Պոմիդորի մեկ կիլոգրամի ինքնարժեքը Բարսեղյանի բրիգադայում կազմում է 30 կոպեկ, իսկ № 4 բրիգադայում՝ 58 կոպեկ։ Անցյալ տարի բրիգադան հեկտարից ստացավ 700 ցենտներ վարունգ։ Մեկ կիլոգրամ վարունգի ինքնարժեքը կազմեց ընդամենը 20 կոպեկ։

Ո՞րն է ակոսային եղանակի առավելությունը. հողը մարգային սիստեմով մշակելու դեպքում մշակվող հողի 25 տոկոսը չի օգտագործվում, մարգերի միջտարածությունները, թմբերը մնում են անօգտագործելի. ջրելիս հողի վերին շերտը խիստ կեղևակալում է և օդը դժվար է թափանցում, թուլանում է միկրոօրգանիզմների գործունեությունը, արագանում ջրի գոլորշիացումը։ Իսկ ակոսային մշակման դեպքում բույսը ցանվում է միջակոսային տարածությունների վրա, ջրվում երկու կողմից, որը հնարավորություն է տալիս լիարժեք օգտագործելու հողը. օդը առատորեն թափանցում է հողի մեջ, միկրոօրգանիզմների մուտքը կատարվում է նորմալ, դանդաղում է ջրի գոլորշիացումը։ Այս եղանակով հողի մշակումը բարձր բերքի ռեալ երաշխիք է ստեղծում։

Հաշվումները ցույց են տալիս, որ եթե կոլտնտեսության ետ մնացող բրիգադաները աշխատեն Գրիգոր Բարսեղյանի մեթոդով, լրիվ կիրառեն ագրոտեխնիկական ամբողջ կոմպլեքսը, ապա կոլտնտեսությունը կստանա տարեկան մոտ 3 միլիոն ռուբլու լրացուցիչ եկամուտ։

Ո՞րն է Գ. Բարսեղյանի բրիգադայի հաջողության «գաղտնիքը»։ Այն աշխատանքի կազմակերպման և մարդկանց մեջ է, որոնք շարունակ նորանոր ուղիներ են որոնում բերքատվության բարձրացման համար։ Բարսեղյանի բրիգադայի անդամների մոտ մեծ է պատասխանատվությունը գործի նկատմամբ։ Նրանք պայքարում են ավելի քիչ աշխատանք ծախսելով շատ արտադրանք ստանալու համար։ Այդ իսկ նպատակով լավ է օգտագործվում կոլտնտեսության տեխնիկան՝ ավտոմեքենաները, տրակտորները, կոմբայնները և այլ մեքենաներ ու գործիքներ։ Բրիգադան նպատակ է դրել հասնել այն բանին, որ իր մշակած յուրաքանչյուր հեկտարը դառնա կոլտնտեսության, շրջանի ամենահարուստ հեկտարը։

Բարսեղյանի մոտ են գալիս ո՛չ միայն արտաշատցիները, այլև ռեսպուբլիկայի տարբեր շրջաններից, մոտիկից ծանոթանում աշխատանքի կազմակերպման նրա մեթոդներին ու ձևերին։ Սոցիալիստական դաշտերի այդ անխոնջ մարտիկի խրախուսելի և ուսանելի նախաձեռնությունը՝ «Հարուստ հեկտարի համար» շարժումը, լայն տարածում է գտել ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում և կարճ ժամանակամիջոցում դարձել է շատերի սեփականությունը։

Վ. ՍԵՎՅԱՆ
Ս. ՄԻՐԶՈՅԱՆ

# ՄԻՇՏ ՄԱՐՏԱԿԱՆ ՊՈՍՏՈՒՄ

Մեր երկրում չափազանց կարևոր և պատասխանատու գործ են կատարում հրշեջ պահպանության օրգանները։ Միշտ լինելով մարտական պոստում, նրանք հրդեհներից պաշտպանում են համաժողովրդական սեփականությունը և քաղաքացիների անձնական ունեցվածքը։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի բոլոր շրջաններում ու քաղաքներում ստեղծվել են պրոֆեսիոնալ հրշեջ խմբեր, ո-

րոնց մեծամասնության համար կառուցված են նոր տիպի հրշեջ դեպոներ՝ իրենց բոլոր հարմարություններով։ Միայն վերջին վեց տարիների ընթացքում, Հայաստանի կառավարության որոշմամբ, պետապի 15-տոկոսային մասհանումների գումարների հաշվին ռեսպուբլիկայի հրշեջ գործի բարելավման ու ամրապնդման համար բաց է թողնված 15 400 հազ. ռ.։

Զգալի չափով լավացել են արդյունաբերական, մանկական, առողջապահական, ինչպես նաև գյուղատնտեսական օբյեկտների հրշեջ, տեխնիկական հետազոտությունները։ Պետական հրշեջ հսկողության ներկայացուցիչները լինելով տեղերում, ստուգելով օբյեկտների հակահրդեհային դրությունը, կոնկրետ միջոցներ են ձեռնարկում և պրակտիկ օգնություն ցույց տալիս նրանց ղեկավարներին՝ կարճ ժամանակում վերացնելու գոյություն ունեցող թերությունները։

Ժողովրդական տնտեսության օբյեկտների հակահրդեհային անվտանգության գործը բարելավելու ուղղությամբ մեծ աշխատանք են կատարում նաև ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում և գյուղատնտեսական օբյեկտներում կազմակերպված կամավոր հրշեջ խմբակները, որոնք ակտիվ կերպով մասնակցում են հրդեհների կանխմանը։ Խմբակների շատ անդամներ բռնկված հրդեհները մարելիս ցուցաբերում են խիզախություն։

Կամավոր հրշեջ միավորումների մարտունակության բարձրացման և նրանց կողմից ժողովրդական տնտեսության օբյեկտներում տարվող հակահրդեհային պրոֆիլակտիկ աշխատանքների բարելավման նպատակով ՀԿՊ Կենտկոմի և Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշման համաձայն, 1956 թ. ռեսպուբլիկայում կազմակերպվեց կամավոր հրշեջ ընկերություն։ Այժմ գործում են հրշեջ կամավոր ընկերության ավելի քան 2000 սկզբնական կազմակերպություններ, որոնց մեջ ընդգրկված են 100 հազար անդամ, բանվորներ, ծառայողներ և կոլտնտեսականներ։

Չափազանց կարևոր է հրշեջ պահպանության օրգանների աշխատանքը անձնակազմի գերազանցիկների հետ։ 1959 թվականին մարտական և քաղաքական ուսման գերազանցիկության համար ծավալված սոցիալիստական մրցության արդյունքները ցույց տվին, որ հրշեջ օրգանները հասել են զգալի հաջողությունների։ Մի շարք հրշեջ մասերի և խմբերի պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ու հրամանատարական կազմի ջանասեր աշխատանքի շնորհիվ այժմ մասերում և խմբերում կան ոչ միայն առանձին գերազանցիկներ, այլև պահակախմբեր ու ջոկեր։

Այդ բնագավառներում հատկապես աչքի է ընկնում Երևանի հրշեջ կայազորի մասերի, Լենինականի, Կիրովականի, Սևանի, Շամշադինի, Մարտունու, Ղափանի և այլ քաղաքային հրշեջ խմբերի աշխատանքը, որի շնորհիվ անձնակազմի մարտական և քաղաքական ծառայության գերազանցիկների տոկոսը 1958 թվականի 40-ի փոխարեն 1959 թվականին հասավ 54-ի։ Ներկայումս ռեսպուբլիկայի հրշեջ օրգաններում կան մարտական և քաղաքական ծառայության գերազանց 43 ջոկ և 14 պահակախումբ։

Մեծ է ֆիզիկական կուլտուրայի նշանակությունը հրշեջ մասերի և խմբերի մարտունակության բարձրացման բնագավառում։ Ֆիզկուլտուրայի և սպորտի ձևերից հրշեջ աշխատանքներում հատկապես մեծ նշանակություն ունի սպորտի հրշեջ կիրառական ձևը, որի շնորհիվ մարտիկները դառնում են համարձակ, արագաշարժ, ճկուն, ֆիզիկապես կոփված։

Օրինակելի է գործում Երևան քաղաքի առաջին հրշեջ մասի այն ջոկը, որի հրամանատարն է Վիրաբ Ղարիբյանը։ Վեց տարի է, ինչ այն վաստակել է մարտական և քաղաքական ուսուցման գերազանց ջոկի կոչում և շատ հրդեհների մարման ժամանակ մեծ հաջողությամբ կատարել առաջադրված մարտական խնդիրները։

Իր անձնվեր աշխատանքով աչքի է ընկել նաև նույն հրշեջ մասի ջոկի հրամանատար, պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղար Պարգև Գևորգյանը։ Հաջող հրդեհաշիջումների և տարիներ շարունակ ջոկի անձնակազմի մարտունակությունը բարձր պահելու համար նա բազմիցս խրախուսանքի է արժանացել։ Հրդեհների մարման գործում իրենց անձնազոհությամբ ու հայրենասիրությամբ աչքի են ընկել ուրիշ շատ հրշեջներ, զինվորական ծառայողներ, միլիցիայի աշխատողներ և քաղաքացիներ։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում հրդեհների առաջացման և դրանց դեմ մղվող պայքարի գործում աշխատավորության լայն մասսաներին ներգրավելու նպատակով, 1957 թվականից սկսած, ռեսպուբլիկայում անցկացվում է հակահրդեհային միամսյակ։ Այն զգալի չափով նպաստում է օբյեկտների կամավոր հրշեջ միավորումների ամրապնդմանը և հակահրդեհային միջոցառումների կատարելագործմանը։ Այժմ մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության օբյեկտներում ըստ տարիների պակասում է ինչպես հրդեհների քանակը, այնպես էլ նրանցից առաջացած վնասների գումարը։ Այսպես. 1955 թվականին ռեսպուբլիկայում առաջացած հրդեհները ժողովրդական տնտեսությանը և քաղաքացիների ունեցվածքին պատճառել են 2.666 հազար ռուբլու վնաս, իսկ հետագա տարիներին այդ վնասն աստիճանաբար նվազել է և 1959 թվականին հասել մոտ 550 հազար ռուբլու, այսինքն՝ հինգ անգամ ավելի քիչ, քան 1955 թվականին։

Չնայած դրան, որոշ տեղերում, հատկապես Հայկոոպի, Հայարդխորհրդի, Շինարարության, Գյուղատնտեսության, Կուլտուրայի, Սոցապահովագրության, Առևտրի մինիստրությունների օբյեկտներում և ռեսպուբլիկայի ինչպես պետական, այնպես էլ մասնավոր բնակելի սեկտորներում հրդեհների քանակը և նրանցից առաջացած վնասը դեռ զգալի է։ Վերը նշված գերատեսչությունների օբյեկտների ղեկավարների մի մասը շատ անգամ թերանում է կատարել պետական հրշեջ հսկողության օրգանների պահանջները։ Դրանով պետք է բացատրել, որ 1959 թ. միայն սեպտեմբեր ամսին, Հայկ. ՍՍՌ Շինարարության մինիստրության ատաղձագործական իրերի կոմբինատի № 2 ցեխում առաջացան երեք հրդեհ, որոնք ավելի քան 60 հազար ռուբլու վնաս պատճառեցին։ Հակահրդեհային աշխատանքները վատ վիճակում են նաև առևտրի սիստեմի պահեստներում, բազաներում, խանութներում և առանձին շենքերում։ Այդ օբյեկտներում հրդեհների հասցրած վնասը կազմում է ռեսպուբլիկայում առաջացած հրդեհների պատճառած վնասի 22 տոկոսը։

Ինչպես նշեցինք, ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում վերջին տարիներս անհամեմատ պակասել են հրդեհները. այնուամենայնիվ դեռ բավականին բարձր է այդ սիստեմի օբյեկտներում առաջացած հրդեհների վնասը։ 1959 թվականին Ժողտնտխորհի օբյեկտներում այն կազմում էր ռեսպուբլիկայում հրդեհներից առաջացած վնասի 24 տոկոսը։ Այդ տեսակետից ոչ բարվոք վիճակ գոյություն ունի նաև մի շարք շրջանների կոլտնտեսություններում (Ղափան, Վեդի, Սիսիան, Աշտարակ և այլն)։

Նշված մինիստրությունների, գերատեսչությունների և առանձին կոլտնտեսությունների օբյեկտների հակահրդեհային վատ վիճակը բացատրվում է նրանով, որ սկզբնական պարտիական կազմակերպությունները այս կարևոր հարցին քիչ ուշադրություն են հատկացնում, չեն բարձրացնում կամավոր հրշեջ դրուժինաների, մշտական գործող հանձնաժողովների դերը հակահրդեհային նախազգուշական աշխատանքներում։ Աշխատավորության շրջանում դեռևս թույլ է ծավալվում հակահրդեհային ագիտացիան և պրոպագանդան։

Թերություններ կան ոչ միայն հրշեջ պրոֆիլակտիկայի գործում, այլ նաև ռեսպուբլիկայի հրշեջ ստորաբաժանումների անձնակազմի մարտական ու քաղաքական ուսուցման, հրշեջ տեխնիկայի խնամքի և օգտագործման, ինչպես նաև ծառայական պարտականությունների կատարման բնագավառում։

Այժմ, ավելի քան երբեք բարձրանում է ռեսպուբլիկայի հրշեջների պատասխանատվությունը, քանի որ ռեսպուբլիկան ստացավ եղբայրական Ադրբեջանի Ղարադաղի բնական գազը։ Կասկածից վեր է, որ գազն ունի մի շարք առավելություններ, բայց և ունի այնպիսի հատկություններ, որ կարող է պայթել և հրդեհի առաջացման աղբյուր հանդիսանալ, եթե նրա օգտագործման ժամանակ չպահպանվեն անվտանգության սահմանված պահանջները և հակահրդեհային կանոնները։

Ժողովրդական տնտեսության բուռն զարգացումը ռեսպուբլիկայի հրշեջ աշխատողներին թելադրում է՝ մշտապես կատարելագործել իրենց մասնագիտությունը, ուսումնասիրել արտադրության տեխնիկական պրոցեսները, մշակել և իրագործել հրշեջ պրոֆիլակտիկայի անհրաժեշտ միջոցառումներ, որոնք աստիճանաբար կնպաստեն հրդեհների հետագա նվազեցմանը և մինիմումի կհասցնեն դրանցից առաջացած վնասները։

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԿԱՐԴԱՑԵՔ ԱՅՍ ԳԻՐՔԸ

Հայերեն թարգմանությամբ լույս է տեսել սովարածավալ մի ժողովածու*, ուր ամփոփված են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի հիմնական մտքերը, դրույթները պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին։ Ժողովածուում զետեղված երկերի, ճառերի, նամակների ուսումնասիրությունը ցույց է տալիս, թե ինչպես մարքսիզմի գրանիտյա հիմքի վրա ծնունդ առան ու զարգացան բանվորների միջազգային եղբայրության և համագործակցության գաղափարները, որոնք դարձան պրոլետարիատի դասակարգային ազատագրական պայքարի հիմնական ուղեցույցը, միջազգային բանվորական շարժման կարևորագույն հիմունքներից մեկը։



Մարքսի և Էնգելսի համաշխարհային պատմական մեծ ծառայությունն այն է, ասում է Լենինը, որ նրանք համայն աշխարհի պրոլետարներին ցույց տվին իրենց պատմական կոչումը՝ կապիտալիստական կարգերի տապալումը և կոմունիզմի հաստատումը։ Մարքսը և Էնգելսը սովորեցրին, որ այդ պատմական միսիան իրականացնելու համար պրոլետարիատը պետք է դառնա միջազգային կազմակերպված ուժ, հիմնված բանվորների միջազգային միության և միջազգային եղբայրության վրա։

Ընդունված է կարծել, որ Մարքսն ու Էնգելսը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներն առաջին անգամ հռչակել են «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ գաղափարները նրանք ազդարարել են ավելի վաղ։ Դեռևս 1845 թվականին, «Ազգերի տոնախմբությունը Լոնդոնում» հոդվածում մերկացնելով առևտրի ընդհանուր ազատության դրոշի տակ ազգերին միավորելու բուրժուական ֆրազները, Ֆ. Էնգելսը ցույց է տվել, որ «ազգերի եղբայրացումը մեր օրերում, ավելի քան երբևէ, ունի զուտ սոցիալական իմաստ»։ Ի տարբերություն բուրժուազիայի, որն ամեն մի երկրում ունի իր ազգային, էգոիստական, մյուս ազգերի բուրժուազիայի շահերին հակասող շահեր, «...Պրոլետարները բոլոր երկրներում ունեն միևնույն շահերը, միևնույն թշնամին, նրանց առջև ծառացած է միևնույն պայքարը. պրոլետարական մասսաներն իրենց բնությամբ ազատ են ազգային նախապաշարումներից, և նրանց ամբողջ հոգեկան զարգացումը և շարժումը ըստ էության հումանիստական ու հականացիոնալիստական է։ Միայն պրոլետարներն են ընդունակ ոչնչացնելու ազգային առանձնացվածությունը, միայն արթնացող պրոլետարիատը կարող է եղբայրություն հաստատել տարբեր ազգերի միջև» (էջ 33)։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները Մարքսը և Էնգելսը հետագայում ավելի ու ավելի լայնացրին ու հարստացրին նոր կողմերով «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում։ Նրանք ցույց տվին, որ «Եթե ոչ ըստ բովանդակության, ապա ըստ ձևի պրոլետարիատի պայքարն ընդդեմ բուրժուազիայի՝ սկզբից ազգային պայքար է հանդիսանում։ Յուրաքանչյուր երկրի պրոլետարիատ պետք է, իհարկե, նախ և առաջ հաշիվ մաքրի իր սեփական բուրժուազիայի հետ...»։ Սակայն հարցը դրանով չի սպառվում, այլ միայն սկսվում է։ «Կոմունիստները մնացած պրոլետարական պարտիաներից տարբերվում են լոկ նրանով, որ, մի կողմից՝ տարբեր ազգերի պրոլետարների պայքարից առանձնացնում և պաշտպանում են ամբողջ պրոլետարիատի ընդհանուր, ազգությունից անկախ շահերը, մյուս կողմից՝ նրանով, որ զարգացման տարբեր աստիճանների վրա, որոնցով անցնում է պրոլետարիատի պայքարը բուրժուազիայի դեմ, նրանք միշտ հանդիսանում են ամբողջ շարժման շահերի ներկայացուցիչներ» (էջ 42—43)։

Ելնելով այս հիմնադրույթից՝ Մարքսը և Էնգելսը «Մանիֆեստում» ձևակերպեցին պրոլետարիատի պայքարի միջազգային բնույթի գլխավոր ստրատեգիական լոզունգը՝ «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք»։ Այն դարձավ բանվոր դասակարգի ազատագրական պայքարի դրոշը, որի շուրջ սկսեցին համախմբվել բոլոր երկրների պրոլետարները՝ կապիտալի լուծը միահամուռ ուժերով թոթափելու, կոմունիստական հասարակարգ կառուցելու համար։

Մարքսը և Էնգելսը ո՛չ միայն մշակեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, այլև հանդիսացան այդ սկզբունքների պրակտիկ կենսագործողները, բանվորների Միջազգային Ընկերության հիմնադիրները, Կոմունիստական Առաջին Ինտերնացիոնալի առաջնորդները։ Առաջին Ինտերնացիոնալը հսկայական դեր կատարեց սոցիալիզմի գիտական թեորիան միջազգային բանվորական շարժման հետ միացնելու ուղղությամբ։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ Մարքսը I Ինտերնացիոնալի՝ «Բանվորների միջազգային ընկերության» հոգին էր, նրա առաջին Դիմումի և բազմաթիվ բանաձևերի, հայտարարությունների, մանիֆեստների հեղինակը։ Կ. Մարքսի կողմից գրված «Բանվորների միջազգային ընկերության ընդհանուր կանոնադրության» մեջ շարադրված սկզբունքները դարձան բանվորական պարտիաների կառուցման հիմնաքարերը։ Այդ Կանոնադրության մեջ պարզ ասված է, որ «աշխատանքի ազատագրումը ո՛չ տեղական և ո՛չ էլ ազգային, այլ սոցիալական պրոբլեմ է, որ ընդգրկում է այն բոլոր երկրները, որոնցում գոյություն ունի արդի հասարակությունը, և որ դրա լուծումը կախված է ամենաառաջադեմ երկրների պրակտիկ ու թեորետիկ գործակցությունից» (էջ 77)։

Պրոլետարիատի դասակարգային գիտակցությունը բարձրացնելու, բանվորական մասսաներին համախմբելու և նրանց դասակարգային համընդհանուր պայքարի մեջ ներգրավելու տեսակետից մեծ հետաքրքրություն է ներկայացնում Կ. Մարքսի՝ ժամանակավոր կենտրոնական խորհրդի պատգամավորներին ուղղված հրահանգը, որտեղ ասված է. «Միջազգային Ընկերության ամբողջ գործունեությունը, որի նպատակն է միավորել տարբեր երկրների բանվոր դասակարգի մինչև այժմ եղած ցիրուցան գործողությունները, որոնք ուղղված են նրա ազատագրմանը, և դրանք ընդհանուր դարձնել... Ընկերության մեծ նպատակներից մեկն է — հասնել այն բանին, որ տարբեր երկրների բանվորները ոչ միայն զգան, այլև գործեն, որպես եղբայրներ ու ընկերներ՝ ազատագրության համար մղվող պայքարում» (էջ 92)։

Ժողովածուում զգալի տեղ են գրավում Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի նամակները՝ ուղղված տարբեր երկրների բանվորական շարժման ականավոր գործիչներին՝ կապված Առաջին Ինտերնացիոնալի գործունեության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների տեսական հիմնավորման հետ։ Այդ սկզբունքները ազգային հարցի ճիշտ ըմբռնման և լուծման նոր ելակետ հանդիսացան։ Մարքսը և Էնգելսը ցույց տվին, որ ազգային հարցի ճիշտ լուծման, այսինքն՝ մեծ և փոքր ժողովուրդների և ազգերի միջև եղած դարավոր կոնֆլիկտները լուծելու և հակասությունները վերացնելու միակ ճշմարիտ ուղին նրանց ինտերնացիոնալ բարեկամության և համերաշխության ուղին է։

Խոսելով իրենց դարաշրջանի Լեհաստանի, Հունգարիայի, Իռլանդիայի, Հնդկաստանի, Բալկանյան ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների պատմական նշանակության մասին՝ Մարքսը և Էնգելսը միաժամանակ շարադրեցին ազգային հարցի լուծման հիմնական սկզբունքները։

1847 թվականի նոյեմբերի 29-ին, լեհական ապստամբության 17-րդ տարեդարձին նվիրված Լոնդոնի միջազգային միտինգում արտասանած իր ճառում Կ. Մարքսը ասում է. «Որպեսզի ժողովուրդները կարողանան իսկապես միավորվել, նրանք պետք է ընդհանուր շահեր ունենան։ Որպեսզի նրանց շահերը ընդհանուր լինեն, պետք է ոչնչացնել գոյություն ունեցող սեփականության հարաբերությունները, որովհետև սեփականության գոյություն ունեցող հարաբերությունները պայմանավորում են որոշ ժողովուրդների շահագործումը մյուսների կողմից. սեփականության գոյություն ունեցող հարաբերությունների ոչնչացման գործում շահագրգռված է միայն բանվոր դասակարգը։ Հենց միայն նա էլ ընդունակ է այդ բանն անելու։ Պրոլետարիատի հաղթանակը բուրժուազիայի նկատմամբ դրա հետ միասին նշանակում է հաղթահարել ազգային ու արդյունաբերական բոլոր կոնֆլիկտները, որոնք ներկայումս թշնամանք են առաջացնում ժողովուրդների միջև։ Ահա թե ինչու պրոլետարիատի տարած հաղթանակը բուրժուազիայի նկատմամբ միաժամանակ հանդիսանում է բոլոր ճնշված ազգերի ազատագրման ազդանշանը» (էջ 38—39)։

«Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում ասված է, որ բուրժուազիայի զարգացման, առևտրի ազատության, համաշխարհային շուկայի, արդյունաբերական արտադրության միակերպության և դրան համապատասխանող կյանքի պայմանների զարգացման շնորհիվ ատի-

* Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին — «ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՄԱՍԻՆ», Հայպետհրատ, 1960 թ., 705 էջ։

ճանաբար վերանում են ազգային կղզիացումները ու հակադրությունները։ Պրոլետարիատի տիրապետությունն է՛լ ավելի կարագացնի պատմական այդ պրոցեսը և կավարտի այն։

«Ինչ չափով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից, այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից։

Ազգերի ներսում եղած դասակարգերի անտագոնիզմի հետ միասին կվերանան նաև թշնամական հարաբերությունները ազգերի միջև...» (էջ 44)։

Մարքսը և Էնգելսը վճռականորեն հանդես եկան ինչպես նացիոնալիզմի ու շովինիզմի, այնպես էլ կոսմոպոլիտիզմի և ազգային նիհիլիզմի արտահայտությունների դեմ, որոնք հակասում էին ազգային հարցի ինտերնացիոնալիստական ըմբռնումներին։ Դեռևս 1864 թվականին, Ինտերնացիոնալի ուղերձը կազմելիս, Մարքսը գրում էր Էնգելսին, թե հարկավոր է պայքարել Մածինիի նացիոնալիզմի դեմ։ Մարքսը ցույց է տալիս, որ պրուդոնիզմի ազդեցության տակ ընկած ֆրանսիացի գործիչները (Պ. Լաֆարգը և մյուսները) ազգությունների բացասման տակ հասկանում էին նրանց ձուլումը ֆրանսիական «օրինակելի» ազգի մեջ։

Ազգային հարցում ուշագրավ է նաև Մարքսի և Էնգելսի պայքարը լասսալականության դեմ։ Հայտնի է, որ Ֆ. Լասսալը նացիոնալ-շովինիզմի դիրքերի վրա էր կանգնած. իր «Ֆրանց ֆոն Զիկկինգեն» պատմական դրամայի առաջաբանում, առանց քաշվելու, գերմանական ազգը նա հայտարարում էր «բոլոր ազգերի թագուհին»։ Նա աշխատում էր գերմանական բանվոր դասակարգին մեկուսացնել, կտրել ընդհանուր պրոլետարական միջազգային շարժումից, քարոզում էր ազգային աղանդավորություն և նացիոնալիզմ։ Մարքսը և Էնգելսը լասսալականությունը համարեցին սարկամտություն պրուսական կայսերականության առջև, դաշինք բիսմարկյան ռեակցիայի հետ։

Ժողովածուում զետեղված բազմաթիվ նյութեր ցույց են տալիս Մարքսի և Էնգելսի դիրքը գաղութային հարցում։ Նրանք խստորեն դատապարտում էին Անգլիային այն բանի համար, որ գաղութացրել էր Իռլանդիան, զրկում էր նրան ազգային անկախությունից, ճնշում նրա ազատագրական շարժումը։ «Այն ժողովուրդը, որը հարստահարում է մի ուրիշ ժողովրդի, կռում է իր սեփական շղթաները», «Ոչ մի ազգ չի կարող ազատ լինել, շարունակելով միևնույն ժամանակ ճնշել ուրիշ ազգերի», «...չի կարող ազատ լինել մի ժողովուրդ, որը ճնշում է ուրիշ ժողովուրդների» — Մարքսի և Էնգելսի այս հանճարեղ մտքերը հիմնադրույթ հանդիսացան ազգային-գաղութային հարցի լուծման համար, որին ավելի հանգամանորեն անդրադարձավ Վլադիմիր Իլյիչ Լենինը, մշակելով ազգային ու գաղութային հարցի վերաբերյալ ամբողջական ուսմունք։

Այս ժողովածուում զգալի տեղ են գրավում Վ. Ի. Լենինի այն աշխատությունները, հոդվածները, նրա երկերից բերված հատվածները, որոնք վերաբերում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի հարցերին։

Վ. Ի. Լենինը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները պաշտպանեց և խորացրեց հենց իր գործունեության սկզբից։ Այդ սկզբունքների ջերմ պաշտպանությունն են նրա «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Սոցիալ-դեմոկրատական պարտիայի ծրագրի նախագիծն ու բացատրությունը», «Մայիսյան օրերը Խարկովում», «Թեզիսներ ազգային հարցի մասին» և այլ աշխատությունները։

Վ. Ի. Լենինի ամենամեծ ծառայությունն այն էր, որ որպես հետևողական մարքսիստ-ռևոլյուցիոներ, ի հակադրություն Երկրորդ Ինտերնացիոնալի և եվրոպական սոցիալ-դեմոկրատական պարտիաների լիդերների նացիոնալ-շովինիզմի, Ռուսաստանում կառուցեց նոր տիպի մարքսիստական պարտիա՝ հիմնված ինտերնացիոնալիստական սկզբունքների վրա։

Ստեղծագործաբար զարգացնելով մարքսիստական ուսմունքը, Վ. Ի. Լենինը հարստացրեց նաև պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները։ Նա ընդհանրացրեց իմպերիալիզմի դարաշրջանի օրինաչափությունները և տվեց սոցիալիստական ռևոլյուցիաների, գաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների մարքսիստական նոր ուսմունքը՝ կապված պրոլետարիատի միջազգային խնդիրների հետ։

Եթե Մարքսի և Էնգելսի մոտ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները հանգում էին բոլոր երկրների բանվորների միջազգային միասնության գաղափարին, ապա Լենինի մոտ ինտերնացիոնալիզմը դառնում է պայքարի ընդհանուր սկզբունք նաև կախյալ ու գաղութային, իմպերիալիզմի կողմից ճնշված ժողովուրդների համար, որոնց ազգային-ազատագրական պայքարը սերտաճում է պրոլետարիատի միջազգային պայքարի հետ։ Ճնշված ազգերի իրավահավասարության պրոբլեմը Լենինը համարում էր իմպերիալիզմի դեմ մղվող ընդհանուր պայքարի կարևոր հարցերից մեկը, իսկ գաղութային ու կիսագաղութային ժողովուրդների ազատագրական պայքարի պրոբլեմը նա անմիջապես կապեց պրոլետարիա-



տի դասակարգային պայքարի ընդհանուր հարցի հետ։

Վ. Ի. Լենինը պարտիային բազմիցս սովորեցնում էր, որ Ասիայի ժողովուրդների հարյուրավոր միլիոններին «...վիճակված է մոտալուտ ապագայում, մեզնից հետո, հանդես գալ պատմական նախաբեմում։ Աններելի օպորտունիզմ կլիներ, եթե մենք Արևելքի այդ հանդես գալու նախօրյակին և նրա զարթոնքի սկզբին խախտեինք նրա մեջ մեր ունեցած հեղինակությունը, թեկուզ ամենափոքր կոպտությամբ ու անարդարությամբ մեր սեփական այլազգիների նկատմամբ» (էջ 627)։

Վ. Ի. Լենինը գաղութների և ճնշված ազգությունների հարցում անհրաժեշտ էր համարում հստակ և որոշակի գիծ վարել կոմունիստական այն պարտիաների կողմից, որոնց երկրների բուրժուազիան ճնշում, հարստահարում է այլ ազգերին։ «Երրորդ Ինտերնացիոնալին պատկանել ցանկացող յուրաքանչյուր պարտիա պարտավոր է անխնա մերկացնել «իր» իմպերիալիստների արարքները գաղութներում, ո՛չ թե խոսքով, այլ գործով աջակցել ամեն մի ազատագրական շարժմանը գաղութներում, պահանջել իր հայրենական իմպերիալիստների վտարումն այդ գաղութներից, դաստիարակել իր երկրի բանվորների սրտերում ճշմարիտ եղբայրական վերաբերմունք գաղութների ու ճնշված ազգությունների աշխատավոր բնակչության նկատմամբ և սիստեմատիկ ագիտացիա մղել իր զորքերում՝ գաղութային ժողովուրդների ամեն տեսակի ճնշման դեմ» (էջ 601)։

Նա ողջունում ու խրախուսում էր Ասիայի զարթոնք ապրող ամեն մի ժողովրդի ազատագրական ելույթը։ 1920 թվականի մայիսին «Հնդկական ռևոլյուցիոն ասոցիացիային» ուղղած ողջույնի մեջ Լենինը գրում էր. «Ուրախ եմ լսելու, որ ճնշված ժողովուրդների ինքնորոշման և օտարերկրյա ու սեփական կապիտալիստների շահագործումից նրանց ազատագրման սկզբունքները, որ հռչակել է բանվորա-գյուղացիական ռեսպուբլիկան, գտել են այդպիսի աշխույժ արձագանք գիտակից հնդկացիների մեջ, որոնք հերոսաբար պայքարում են իրենց ազատության համար... Միայն այն ժամանակ, երբ հնդկական, չինական, կորեական, ճապոնական, պարսկական, թուրքական բանվորն ու գյուղացին իրար ձեռք մեկնեն և միասին ընթանան դեպի ազատագրության ընդհանուր գործը, միայն այն ժամանակ կապահովվի հաղթանակը շահագործողների դեմ։ Կեցցե՛ ազատ Ասիան» (էջ 592)։

Վ. Ի. Լենինը ռուսական պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարը դիտեց ո՛չ իբրև ազգային նեղ սահմաններում կատարվող մի բան, այլ որպես իմպերիալիզմի համաշխարհային սիստեմի դեմ մղվող միջազգային պրոլետարիատի ընդհանուր կռվի մի օղակը, նրա օրգանական մասը։ Վ. Ի. Լենինը պարտիային սովորեցնում էր, որ կապիտալիզմի զարգացման իմպերիալիստական ստադիայում սոցիալիստական ամեն մի ռևոլյուցիա, ինչպես և ռուսաստանյան ռևոլյուցիան, հանդիսանալու է համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիաների շղթայի մի օղակը, նրա օրգանական մասը։ «Ահա թե ինչու ազատագրության համար բոլոր երկրների բանվորների մղած պայքարն էլ հաջողություն ունի միայն այն դեպքում, երբ բանվորները միատեղ են պայքարում միջազգային կապիտալի դեմ։ Ահա թե ինչու կապիտալիստների դասակարգի դեմ մղած պայքարում ռուս բանվորների ընկերն է թե՛ գերմանացի բանվորը, թե՛ լեհ բանվորը, թե՛ ֆրանսիացի բանվորը, ճիշտ այնպես, ինչպես նրա թշնամին են թե՛ ռուսական, թե՛ լեհական, թե՛ ֆրանսիական կապիտալիստները» (էջ 292)։

Վ. Ի. Լենինը Երկրորդ Ինտերնացիոնալում իշխող նացիոնալիզմի և ազգային նախապաշարմունքների դեմ պայքարելը համարում էր ինտերնացիոնալիստական պարտիայի գլխավոր խնդիրը։ Ազգային և գաղութային հարցերի վերաբերյալ թեզիսների սկզբնական ուրվագծում անդրադառնալով այդ հարցին, նա գրել է. «Ինտերնացիոնալիզմի ճանաչումը խոսքով, իսկ գործով ամբողջ պրոպագանդայի, ագիտացիայի և գործնական աշխատանքի մեջ նրա փոխարինումը քաղքենիական նացիոնալիզմով ու պացիֆիզմով՝ ամենասովորական երևույթ է ո՛չ միայն II Ինտերնացիոնալի պարտիաներում, այլև նրանց մեջ, որոնք դուրս են եկել այդ Ինտերնացիոնալից, և նույնիսկ հաճախ նրանց մեջ, ովքեր իրենց այժմ անվանում են կոմունիստական։ Պայքարն այս չարիքի դեմ, ամենից ավելի արմատացած մանրբուրժուական ազգային նախապաշարմունքների դեմ, առավել ևս դրվում է առաջին պլանի վրա, որքան ավելի հրատապ է դառնում պրոլետարիատի դիկտատուրան ազգայինից (այսինքն՝ մի երկրում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականությունը որոշելու անընդունակ դիկտատուրայից) միջազգայինի (այսինքն՝ առնվազն մի քանի առաջավոր երկրների պրոլետարիատի դիկտատուրա, որն ընդունակ լինի վճռական ազդեցություն ունենալու ամբողջ համաշխարհային քաղաքականության վրա) վերածելու խնդիրը» (էջ 597)։

Վ. Ի. Լենինի այս հանճարեղ խոսքերը ներկայումս առավել չափերով կենսունակ են դառնում մեզ համար, որովհետև նրանք անմիջապես ուղղված են ոչ միայն անցյալի, այլև ժամանակակից ռևիզիոնիստների դեմ, որոնք կանգնած են «ազգային կոմունիզմի» անձուկ դիրքերի վրա, դրանով իսկ պառակտում են

առաջացնում պրոլետարիատի միջազգային-ինտերնացիոնալ համերաշխության և միասնության սրբազան սկզբունքների մեջ։

Այս ժողովածուում մեծ տեղ են գրավում Վ. Ի. Լենինի այն գործերը, ուր պարզաբանվում են Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության սկզբունքները։ Այդ տեսակետից բնութագրական են Վ. Ի. Լենինի նամակը Ս. Գ. Շահումյանին, գրված 1913 թվականի դեկտեմբերի 6-ին, Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին ուղղված նամակը և, վերջապես, «Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը» նամակը՝ գրված 1922 թվականի դեկտեմբերին։ Այս և բազմաթիվ այլ նամակներում Վլադիմիր Իլյիչը կոմունիստներին սովորեցնում էր, որ «պրոլետարական դասակարգային պայքարի արմատական շահը պահանջում է, որ մենք երբեք ձևականորեն չվերաբերվենք ազգային հարցին, այլ միշտ էլ հաշվի առնենք ճնշող (կամ մեծ) ազգի նկատմամբ ճնշվող (կամ փոքր) ազգի պրոլետարիատի վերաբերմունքի անպայման տարբերությունը»։ Վլադիմիր Իլյիչը սովորեցնում էր, որ կոմունիստները պետք է պայքարեն ինչպես մեծապետական (հարձակվող) շովինիզմի, այնպես էլ տեղական (պաշտպանվող) նացիոնալիզմի ամեն տեսակի արտահայտությունների դեմ։

Ժողովածուում տպագրված են Լենինի՝ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին գրված բազմաթիվ աշխատությունները, նոթերն ու հոդվածները, որոնցում նա մերկացնում է պատերազմող երկրների տերությունների իմպերիալիստական քաղաքականությունը։ Իր «Սոցիալիզմը և պատերազմը» աշխատության մեջ Լենինը գրում է, որ «տվյալ պատերազմում ժողովրդին խաբելու ամենատարածված ձևը բուրժուազիայի կողմից պատերազմի կողոպտչական նպատակների քողարկումն է «ազգային-ազատագրական» գաղափարախոսությամբ... Իմպերիալիզմն ամբողջ աշխարհի ազգերի աճող ճնշման դարաշրջան է, ճնշում մի բուռ «մեծ» տերությունների կողմից, այդ պատճառով էլ ընդդեմ իմպերիալիզմի, ինտերնացիոնալ սոցիալիստական ռևոլյուցիայի համար պայքարն անհնարին է առանց ազգերի ինքնորոշման իրավունքը ճանաչելու»։ Վլադիմիր Իլյիչն ասում է, որ սոցիալիստները չեն կարող իրենց մեծ նպատակին հասնել առանց ազգերի ամեն տեսակ ճնշման դեմ պայքարելու։ Նա մերկացրեց Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստական բնույթը, նրա սնանկությունը և կոչ արեց ստեղծելու նոր, Երրորդ Ինտերնացիոնալ։

ՌԿ(բ)Պ Ծրագրի նախագծում, որ գրված է մեծ առաջնորդի կողմից, ասված է, որ «...անհրաժեշտ է առանձնահատուկ զգուշություն ցուցաբերել ազգային զգացմունքի նկատմամբ, հոգատարությամբ կիրառել ազգերի հավասարությունը... Հետամնաց և թույլ ազգերին ցույց տրվող օգնությունն անհրաժեշտ է ուժեղացնել՝ աջակցելով յուրաքանչյուր ազգի բանվորների և գյուղացիների ինքնուրույն կազմակերպմանն ու լուսավորմանը...»։ Ազգային հարաբերությունների բնագավառում Լենինը պահանջում էր լիակատար վստահություն մեծ և փոքր ազգերի միջև։

Վլադիմիր Իլյիչը, հատուկ ուշադրություն դարձնելով Անդրկովկասի բազմազգ ժողովուրդների պայմաններում ազգային քաղաքականությունը ճիշտ վարելու խնդրին, «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին» ուղղած նամակում ասում էր. «Ջերմորեն ողջունելով Կովկասի սովետական ռեսպուբլիկաները, ես ինձ թույլ եմ տալիս հույս հայտնել, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (էջ 612)։

Հավատարմությամբ կենսագործելով Լենինի այս պատգամը, Անդրկովկասի ռեսպուբլիկաների Կոմունիստական պարտիաներն անցած քառասուն տարիների ընթացքում ստեղծեցին ժողովուրդների բարեկամության այնպիսի հզոր դաշինք, որի նմանը չի տեսել այդ ժողովուրդների հազարամյա պատմությունը։ Ադրբեջանում Սովետական իշխանության հաստատման և Կոմունիստական պարտիայի ստեղծման 40-ամյակի առթիվ ընթացիկ տարվա ապրիլի 25-ին Բաքվում տեղի ունեցած հանդիսավոր նիստում արտասանած իր ճառում Ն. Ս. Խրուշչովն անդրադառնալով այս հարցին՝ ասաց. «Կուզենայի ընդգծել Ադրբեջանի և ամբողջ Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների հրաշալի ինտերնացիոնալիստական տրադիցիաները։ Լենինը բազմիցս ընդգծել է Անդրկովկասի բոլշևիկների ինտերնացիոնալիզմը և այն որպես օրինակ մատնացույց է արել պարտիայի մյուս կազմակերպություններին։ Այն հանգամանքը, որ Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները միշտ գործել են համախմբված, ընթացել են միասին, համաքայլ և որ նրանք մասսաներին դաստիարակել են ինտերնացիոնալիզմի ոգով, վճռական նշանակություն ունեցավ բանվոր դասակարգի բոլոր թշնամիների դեմ նրանց հաղթանակի համար։ Նայեցեք Բաքվի 26 կոմիսարների ազգային կազմին. դա ասես սիմվոլացնում է Բաքվի պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբվածությունը»։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա է խարսխված սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Քանի կա այդ բարեկամությունը՝ ո՛չ մի արտաքին ու ներքին թշնամի սարսափելի չէ մեզ համար։ Այդ բարեկամությունը հավերժացնող բազմաթիվ գործարաններ, հիդրոկայաններ, ջրանցքներ, գազամուղներ և այլ կառույցներ են ստեղծվել Սովետական Միության տարբեր անկյուններում և ռեսպուբլիկաներում, որոնք սիմվոլացնում են կոմունիզմի մեծ ուսուցիչների կերտած պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարները։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա հենվող սովետական ժողովուրդների և սոցիալիստական լագերի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը կենդանի ուժ է դարձել, որն առաջ է մղում կոմունիզմի կառուցման սրբազան մեծ գործը։ Մենք թևակոխում ենք մարդկության զարգացման այն էտապը, երբ ինտերնացիոնալիզմի հումանիստական սկզբունքները դառնում են խաղաղության ձգտող համայն մարդկության իրար զոդող կենդանի ուժ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX և XXI համագումարները ցույց տվին, որ ինչպես մեր երկրի, այնպես էլ ամբողջությամբ վերցրած սոցիալիստական լագերի բոլոր ազգերի փոխհարաբերությունները ճիշտ վարելու, աշխարհի բոլոր ազգերի միջև բարեկամական կապերի ստեղծման ու ամրապնդման համար վճռական գործոն են հանդիսանում պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։ Ինտերնացիոնալիզմը Սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության հիմնաքարն է, ժողովուրդների խաղաղ գոյակցության և զարգացման կայուն նախապայմանը։ «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու թշնամական—անհաշտ լոզունգներ, որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում»,— գրում էր Լենինը։

Ազգային քաղաքականության ինտերնացիոնալ սկզբունքը եղել է և մնում է Կոմունիստական պարտիայի ուղեցույցը, որով նա ընթացել և ընթանում է իր գոյության ողջ ժամանակաշրջանում։ Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության ինտերնացիոնալ սկզբունքների ակունքը այն մեծ ուսմունքն է, որ հիմնադրեցին և առաջ շարժեցին պրոլետարիատի մեծ ուսուցիչներ Մարքսը, Էնգելսը և Լենինը։

Պետք է նկատել, որ այս ժողովածուի նյութերի ընտրությունը ընդհանուր առմամբ կատարված է հաջող։ Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերից քաղված նյութերը չեն հեռանում բուն հարցից, ինչպես այդ երբեմն նկատելի է թեմատիկ այլ ժողովածուներում։ Դրանք բոլորն էլ վերաբերում են տվյալ հարցին և բազմակողմանիորեն պարզաբանում են նրա այս կամ այն կողմը։

Հայերեն հրատարակության նյութերը հիմնականում վերցված են Մարքսի, Էնգելսի, Լենինի արդեն թարգմանված աղբյուրներից, բացառությամբ Մարքսի և Էնգելսի մի քանի գործերի։ Ինչպես նախորդ, այնպես էլ նոր թարգմանության մեջ նկատելի են որոշ անհարթություններ, սրբագրական կարգի որոշ վրիպումներ։

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ

*վոր նյութեր կան, ստիպված ենք հուշեր գրող ընկերներին հիշեցնել, որ չափազանցություններն ու անստույգ սուբյեկտիվ հիշատակումները վնասում են պատմության ճիշտ ըմբռնմանը։*

*Վերջացնենք։ Մենք վրդովված ենք հին բոլշևիկ Արսեն Մանուկյանի վարքագծով, վճռականորեն բողոքում ենք Դարալագյազի ռևոլյուցիոն անցյալի նենգափոխման նրա փորձերի դեմ։ Պատմությունը չի կարելի կեղծել, գունազարդել։*

ԴԱՐԱԼԱԳՅԱԶԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐ

Ն. Խաչատրյան *(ՍՄԿՊ անդամ 1919 թ.)*, Գ. Սարգսյան *(ՍՄԿՊ անդամ 1920 թ.)*, Է. Ղազարյան *(ՍՄԿՊ անդամ 1920 թ.)*, Գար. Սարգըսյան *(ՍՄԿՊ անդամ 1920 թ.)*, Լ. Սիմոնյան *(ՍՄԿՊ անդամ 1925 թ.)*, Պ. Գրիգորյան *(ՍՄԿՊ անդամ 1925 թ.)*, Գ. Ասատրյան *(ՍՄԿՊ անդամ 1920 թ.)*, Ս. Մկրտչյան *(ՍՄԿՊ անդամ 1920 թ.)*, Հմ. Գրիգորյան *(ՍՄԿՊ անդամ 1932 թ.)*, Ս. Գևորգյան *(ՍՄԿՊ անդամ 1921 թ.)*, Ս. Բեկնազարյան *(ՍՄԿՊ անդամ 1923 թ.)*, Հմ. Գրիգորյան *(ՍՄԿՊ անդամ 1931 թ.)*, Հ. Գրիգորյան *(ՍՄԿՊ անդամ 1921 թ.)*, Ե. Հովհաննիսյան *(ՍՄԿՊ անդամ 1920 թ.)*։

---



Սրբագրիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ,
թողարկիչ՝ Բ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел 2—56—92

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր).
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

*ՎՖ 07267* *Պատվեր 1598 Տիրաժ 10250* ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։ Ստորագրված է տպագրության 25/VI 1960 թ.։

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

*Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։*

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՎԻԲՐԱՑԻՈՆ ԲԵՌՆԱԹԱՓԻՉ

*Թափվող բեռները՝ հանքանյութը, ածուխը, տորֆը, խիճը մեծ մասամբ տեղափոխվում են 60 տոննանոց ինքնաբեռնաթափ կիսավագոնների միջոցով, որոնք տեղավորված են կիսավագոնի երկու կողմերում, նրա ամբողջ երկարությամբ։ Բայց բեռնաթափման ժամանակ ոչ բոլոր բեռներն են կիսավագոնից դուրս թափվում։ Երբեմն նրանց մեջ մնում է 5-ից 25 տոննա բեռ։ Այդ մնացորդները շատ հաճախ հարկ է լինում մաքրել ձեռքով։ Այդ ծանր և ցածր արտադրողական աշխատանքի վրա ամբողջ երկրում ամեն օր զբաղված են հարյուր հազարավոր բեռնակիր բանվորներ։*

*Լենինգրադի ինժեներները և գիտնականները մշակել են կիսավագոնի բեռնաթափման և մաքրման մի եղանակ, որը բավականին մեծ արդյունք է տալիս։ Ժամանակի ծախսումը կիսավագոնի բեռնաթափման ամբողջ ցիկլի վրա, վիբրոբեռնաթափիչի տեղադրումից հետո կըրճատվում է 40—60 տոկոսով։*

*Լենինգրադի ԺՏԽ-ն նախատեսել է վիբրատորների սերիական թողարկում՝ 1960 թվականին։*

### ԱՌԱՆՑ ՊԱՐԱՊՈՒՐԴԻ ՇԱՐԺԻՉՆԵՐ

*Մի քանի տարի է, որ Սովետական Միության դաշտերում աշխատում են 14 ձիու ուժանոց ինքնագնաց շասիներ։ Նրանք իրենց վրա տանում են համեմատաբար փոքր մեքենաներ՝ շարքացաններ, տնկիչներ, կուլտիվատորներ և փոշոտիչ-սրսկիչներ։*

*Ռոստսելմաշը և Տագանրոգի կոմբայնի գործարանն արտադրում են 60—75 ձիու ուժանոց շասիներ, որոնք ընդունակ են իրենց վրա տանելու այնպիսի մեծածավալ և բարդ մեքենա, ինչպիսին կոմբայնն է։*

*Այս հսկա շասիների վրա հացահատիկային կոմբայնից բացի հերթականությամբ կարելի է օգտագործել կախովի այլ՝ եգիպտացորեն հավաքող, սիլոսահավաք, կարտոֆիլահավաք, ճակնդեղահավաք կոմբայններ, ճանապարհներ նորոգելու համար՝ գրեյդերներ, ինքնաթափեր, ցիստերներ և ուրիշ մեքենաներ։ Այսպիսով, փոփոխելով մեքենաները, ինքնագնաց շասինները տնտեսության մեջ կարելի է օգտագործել գրեթե ամբողջ տարվա ընթացքում։*

*Կախովի կոմբայնների կիրառումը տալիս է հսկայական խնայողություն։ Մեկ հեկտար հացահատիկի բերքահավաքը կախովի կոմբայնի միջոցով 11 ռուբլով ավելի էժան է նստում, քան «ՍԿ—30» ինքնագնաց կոմբայնով, իսկ եգիպտացորենինը՝ 46 ռուբլով։ Եթե հացահատիկային բոլոր կուլտուրաները հավաքվեն միայն կախովի կոմբայններով, յուրաքանչյուր տարի մեր երկրում կտնտեսվի 1,5—2 միլիարդ ռուբլի։ Հաշված է, որ ինքնագնաց կոմբայնների փոխարեն եթե արտադրվեն կախովի կոմբայններ՝ կտնտեսվի 800 հազար տոննա մետաղ։ Խնայված մետաղից կարելի է կառուցել համարյա մեկ միլիոն «Մոսկվիչ» մարդատար ավտոմեքենա։*

### ԽՈՂՈՎԱԿՆԵՐ ԱՍԲԵՍՏԻՑ ԵՎ ՍԻԼԻԿԱԼՑԻՏԻՑ

*Հսկայական քանակությամբ անտառանյութ է ծախսվում երկաթուղիների շինարարության համար։ Միայն մաշված և փտած շպալների փոխման համար տարեկան ծախսվում է 4 միլիոն խորանարդ մետր բարձրորակ անտառանյութ։*

*Հաջողվել է գտնել նոր, էժան և երկար դիմացող նյութ, որը փոխարինում է անտառանյութին։ Այդ նյութը կոչվում է սիլիկալցիտ, որը բաղկացած է ավազի, կրի և ասբեստի արտադրանքի մնացորդների միացությունից։*

*Հոկտեմբերյան երկաթուղու Բոլոգոյե II կայարանում կառուցվում է աշխարհում առաջին սիլիկալցիտային շպալների փորձնական գործարանը։*

*Այդպիսի շպալների օգտագործման դեպքում երկրում տարեկան կտնտեսվի միլիոնավոր խորանարդ մետր բարձրորակ անտառանյութ։*

